Ի ԳԻՏՈՒԹՅՈՒՆ
ԿՈՒՍԼՈՒՍՑԱՆՑԻ
ՈՒՆԿՆԴԻՐՆԵՐԻ

Հոկտեմբեր ամսից սկսած մեր ամսագրի համարներում ներքակա- ճորեն տպագրվելու են ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԻ ՀԻՄՈՒՆՔՆԵՐԻ ԴՊՐՈՑԻ ուսումնական նյութերը:

**ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ**


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

9 ՍԵՊՏԵՄԲԵՐ · 1966
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 45-րդ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ - ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
**«Ленинян угиов»-теоретический и политический журнал ЦК КП Армении**


## Բովանդակություն

# Содержание









Վ. ԴՅՈՒԿՈՎ, Ս. ՄՈԳԻԼԱՏ


## ՍՏԵՂԾԱԳՈՐԾԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԼԱՅՆ ԱՍՊԱՐԵԶԸ


КОММУНИСТ
ТЕОРЕТИЧЕСКИЙ И ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦЕНТРАЛЬНОГО КОМИТЕТА КОММУНИСТИЧЕСКОЙ ПАРТИИ СОВЕТСКОГО СОЮЗА
№ 10, 1966


*ՍՄԿԿ XXIII համագումարի առաջ քաշած բազմաթիվ մեծ խնդիրների մեջ կարևոր տեղ է գրավում կուսակցական աշխատանքի ձևերի ու մեթոդների հետագա կատարելագործումը։ Բուն համագումարի մթնոլորտը, նրա փաստաթղթերը վառ կերպով արտացոլեցին այդ ուղղությամբ կուսակցական կազմակերպությունների ակտիվ որոնումների պրոցեսը, հաղորդեցին իսկական ստեղծագործության ոգին, որն առանձնահատուկ ուժով կուսակցության մեջ երևան եկավ Կենտրոնական կոմիտեի հոկտեմբերյան (1964 թ.) պլենումից հետո։ Թե՛ ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ և թե՛ համագումարի պատգամավորների ելույթներում մեծ ուշադրություն է նվիրվում այն նորի ընդհանրացմանը, ինչը կուսակցական աշխատանքում երևան է եկել Հոկտեմբերյան պլենումից հետո։*

*Կյանքի բազմազան երևույթների նկատմամբ իրական, գիտականորեն հիմնավորված մոտեցում, լայն նախաձեռնություն, կոնկրետություն և գործարարություն, անհաշտություն ամեն տեսակ ծրագրամոլության (պրոժեկտյորության) հանդեպ—ահա թե ինչն է գնալով ավելի բնորոշ դառնում կուսակցական կազմակերպությունների գործունեության համար։ Կուսակցական աշխատանքի պրակտիկայում հաստատ մտնում են լենինյան սկզբունքները՝ վարչարարություն չանել, չփոխարինել սովետական և տնտեսական օրգաններին, այլ ավելի մեծ վստահություն, հոգատարություն և ուշադրություն ցուցաբերել կադրերի նկատմամբ, դաստիարակել նրանց բարձր պահանջկոտության և կարգապահության ոգով։ Էկոնոմիկայի և կուլտուրայի հարցերը լուծելիս կուսակցական կազմակերպությունները գնալով ավելի մեծ ուշադրություն են նվիրում ղեկավարման ոճին ու մեթոդներին, աշխատում են բարձրացնել իրենց ջանքերի արդյունավետությունը, վճռականորեն հաղթահարում են ֆորմալիզմը և շաբլոնը։*

*Դիմենք մի քանի օրինակների։*

Կուսակցական կազմակերպությունների գործունեության գլխավոր ոլորտը ձեռնարկությունների, կոլտնտեսությունների և սովխոզների, հիմնարկությունների, ուսումնական հաստատությունների կոլեկտիվներն են: Մարդկանց դաստիարակչական և կազմակերպչական աշխատանքն ուժեղացնելու միջոցով կոմունիստները հասնում են տնտեսա-քաղաքական խնդիրների հաջող լուծմանը: Կուսակցական շատ կազմակերպություններ, ընդմին, գնալով ավելի մեծ ուշադրություն են նվիրում աշխատանքային կոլեկտիվների հասարակական կյանքի ու գործունեության հարցերին, նրանց անդամների գիտակցական ու կուլտուրական մակարդակի բարձրացմանը: Սոցիալիստական ձեռնարկությունը հասարակության ո՛չ միայն տնտեսական, այլև սոցիալական բջիջ է, և արտադրության վերելքի հարցերը կարող են ռացիոնալ լուծվել միայն դրանք զուգորդելով կոլեկտիվի սոցիալական զարգացման հարցերին: Դրանից ելնելով, Լենինգրադի ֆաբրիկաների և գործարանների կուսակցական շատ կազմակերպություններ, օրինակ, ձգտում են բազմակողմանիորեն հաշվի առնել ժամանակակից գիտա-տեխնիկական պրոգրեսի և կենսագործվող տնտեսական ռեֆորմի սոցիալական հետևանքները, այն ազդեցությունը, որ տեղի ունեցող փոփոխությունները գործում են հասարակության և կոլեկտիվի փոխհարաբերությունների, աշխատանքի նկատմամբ բարոյական և նյութական խթանների վրա: Մշակվող միջոցառումների մեջ կարևոր տեղ է տրվում արտադրության կառավարման գործում կոլեկտիվի դերի, աշխատողների որակի բարձրացմանը, կուլտուրական և կենցաղային պայմանների բարելավմանը:

ՍՄԿԿ XXIII համագումարում ընդգծվում էր, որ տնտեսական խնդիրների լուծման մեթոդները կուսակցական կազմակերպությունների մոտ այլ են, քան սովետական ու տնտեսական օրգանների մոտ: Այս բանն իր արտահայտությունը գտավ նաև ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման առթիվ համագումարի բանաձևում: Այդ բանաձևում ասված է. «Համագումարը գտնում է, որ բոլոր կուսակցական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում պետք է գտնվի ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա նոր պլանի հաջող կատարման համար պայքարը: Կուսակցական կազմակերպությունները կոչված են ապահովելու ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան և սեպտեմբերյան պլենումների մշակած սոցիալիստական տնտեսավարության սկզբունքների, արտադրության պլանավորման ու տնտեսական խթանման նոր սկզբունքների հետևողական իրագործումը: Ընդմին, կուսակցական կազմակերպությունները պետք է գործեն կազմակերպչական ու դաստիարակչական աշխատանքի իրենց հատուկ մեթոդներով, թույլ չտալով սովետական ու տնտեսական օրգանների փոխարինում և մանրախնդիր խնամակալում»:

Տնտեսության նկատմամբ կուսակցական ղեկավարության մեջ մանրախնդիր խնամակալության և վարչարարության հակումն ամենուրեք հաղթահարելու համար միանգամայն ակներևորեն պահանջվում է մտածված, հաստատակամ աշխատանք, հարկավոր է ավելի մեծ վստահություն ցուցաբերել կադրերի նկատմամբ, բարձրացնել սովետական և տնտեսական աշխատողների պատասխանատվության զգացումը, հանդես գալ տեղ-տեղ արմատացած անշարժության և երկչոտության դեմ, ամեն ինչ «վերև» քարշ տալու, «հարթելու», «համաձայնեցնելու», անտեղի նիստեր գումարելու սովորությունների դեմ:



Իհարկե, լինում են բացառիկ հանգամանքներ, երբ պահանջվում է կուսակցական օրգանի անմիջական միջամտությունը «զուտ տնտեսական» գործունեությանը, երբ շրջկոմը, քաղկոմը, մարզկոմն իրենց ապարատի միջոցով ուղղակի են ազդում ձեռնարկությունների, հիմնարկությունների, գերատեսչությունների ղեկավարների վրա: Կրկնում ենք, բացառության կարգով այդ լինում է և որոշ չափով դրանից չի կարելի խուսափել: Բայց մի բան պարզ է. եթե կուսակցական կոմիտեն իր վրա է վերցնում արտադրական ընթացիկ գործերը, զբաղվում է մատակարարման հարցերով, եթե կուսակցական աշխատողները տնտեսական զանազան ինստանցիաների են դիմում «խնդիրքներով», ապա այդ նշանակում է, որ տնտեսավարներին չեն ստիպել զբաղվելու իրենց գործով այնպես, ինչպես այդ վայել է պաշտոնատար անձանց, այդտեղ բավականաչափ պահանջկոտություն չեն ցուցաբերում նրանց նկատմամբ, ով աշխատում է անփութորեն, իսկ հենց որ մի բան լինի, թաքնվում է ուրիշների կռնակին: Նշանակում է, որ կուսակցական կոմիտեն քիչ է մտածում ուրիշների փոխարեն աշխատելու արմատացած սովորությունից հեռանալու, այնպիսի մեթոդներով աշխատելու համար, որոնք կարող են որոշ ժամանակ շոշափելի արդյունք տալ, բայց էկոնոմիկայի նկատմամբ կուսակցական ղեկավարությունը ճիշտ կազմակերպելու և հեռանկարների տեսակետից ոչ մի քննադատության չեն դիմանում:

Էկոնոմիկայի, տնտեսության, արտադրության բնագավառում կուսակցական կոմիտեի գործունեությունը նույնական չէ պետական և տնտեսական օրգանների աշխատանքին: Այդ գործունեությունը պետք է ներգործի մարդկանց մտքի ու սրտի վրա, կոլեկտիվի մեջ ստեղծի համերաշխ-ներդաշնակ աշխատանքի, գործարարության, նորարարության մթնոլորտ: Կոմունիստները կոչված են պահանջկոտության, թերությունների սուր քննադատության և թափթփվածության, անտնտեսավարության, աշխատանքային կարգապահության խախտողների նկատմամբ անհաշտության օրինակ ցույց տալ:

ՍՄԿԿ XXIII համագումարում ընդգծվում էր, որ կուսակցական կազմակերպությունները պարտավոր են ավելի վեր բարձրացնել մասսաների մեջ կատարվող կազմակերպչական և քաղաքական աշխատանքի մակարդակը, ամեն մի կոմունիստի, ամեն մի աշխատողի մեջ զարգացնել նախաձեռնությունը և նորի ձգտումը, բարձրացնել նրանց պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ: Այդ նշանակում է ուշադրությունը կենտրոնացնել հիմնական, գլխավոր հարցերի՝ կադրերի ընտրության, առաջքաշման և դաստիարակության, ինչպես նաև կուսակցության և կառավարության դիրեկտիվների կատարումն ստուգելու վրա: «Կադրերի ընտրության և դաստիարակության գործը,— ասված է ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— պետք է բարձրացվի համակուսակցական, համապետական մակարդակի»:

Կարելի է առանց չափազանցության ասել, որ կուսակցական կազմակերպության հասունությունը, տնտեսա-քաղաքական խնդիրները ստեղծագործորեն լուծելու նրա հմտությունը որոշվում են ամենից առաջ այն բանով, թե նա ինչպես է աճեցնում ու առաջ քաշում գիտակ, եռանդուն, բարեխիղճ աշխատողներ և դրա հետ միասին ինչպես է վերահսկում նրանց գործունեությունը: Այժմ, ավելի քան երբևիցե անցյալում, անհրաժեշտ է, որ տնտեսական ղեկի մոտ կանգնի միայն նա, ով խորապես գիտե էկոնոմիկան, կարողանում է հաշվել, համադրել, վերլուծել, ինքնուրույնաբար լուծել բարդ հարցերը,

գտնել ձեռնարկության շահութաբերությունը բարձրացնելու ուղիները։

Ամեն մի աշխատողի ճիշտ օգտագործելը, նրան այնպիսի տեղամասում նշանակելը, որտեղ ամենից ավելի լավ կծավալվեն նրա ընդունակությունները, առավել մեծ օգուտով կգործադրվեն նրա գիտելիքները, անշուշտ, հեշտ գործ չէ։ Կոմունիստների, կուսակցական աշխատողների հետաքրքրվող և անհանգիստ միտքը ձգտում է գտնել այն լծակները, որոնք օգնում են ճիշտ ուսումնասիրելու և ընտրելու կադրերը։ Եվ գնալով շատանում են նման օրինակները, որոնք ապահովում են ընտրության շրջահայեցությունը և օբյեկտիվությունը։

Ամեն մի աշխատողի ամենից առաջ գնահատում են նրա օբյեկտիվ տվյալներով, նրա գործունեության արդյունքներով։ Եվ նրա մասին որքան ավելի ուշադիր է հաշվի առնվում կոմունիստների ու անկուսակցականների, ամբողջ կոլեկտիվի կարծիքը, այնքան ավելի անսխալ կարող է որոշվել նրա նշանակման կամ առաջքաշման հարցը։

Ալթայի երկրամասի կուսակցական շատ կազմակերպություններ, վերլուծելով աշխատողների ընտրության և տեղափոխման գործում եղած թերությունները, եկան այն եզրակացության, որ սխալները հաճախ հետևանք են այն բանի, որ առաջքաշման նկատմամբ ցուցաբերվում է ձևական մոտեցում, թեկնածությունը հաստատելիս հաշվի են առել մեկ-երկու ընկերոջ կարծիքը, ծանոթացել են բնութագրության, հաշվառման թերթիկի հետ և դրանով էլ սահմանափակվել։ Բայց կարելի՞ է արդյոք այդպիսի եղանակով լրիվ պատկերացում կազմել աշխատողի մասին։ Իհարկե, ոչ։ Հայտնի է, որ ոչ մի «ամենալրիվ» անձնական գործ չի պարունակում և չի կարող պարունակել սպառիչ տեղեկություններ աշխատողի մասին, որոնք իմանալը շատ կարևոր է նրան տեղափոխելու կամ առաջ քաշելու ժամանակ։ Եվ այդպիսի փաստաթղթի վրա կառուցված եզրակացությունը հաճախ լինում է մակերեսային, իսկ երբեմն էլ՝ սխալ։ Միշտ չէ, որ պարզվում է, թե առաջքաշվող ընկերն օժտվա՞ծ է արդյոք ղեկավարի համար անհրաժեշտ այնպիսի հատկություններով, ինչպես եռանդուն լինելը, հաստատուն բնավորությունը, լայն մտահղացությունը, փաստերն ընդհանրացնելու և վերլուծելու, բարդ հարցերն օպերատիվորեն և ինքնուրույնաբար լուծելու հմտությունը, կոլեկտիվի մեջ նորմալ, գործարար հարաբերություններ հաստատելու կարողությունը։ Անձնական գործից առավել ևս չի կարելի իմանալ, թե լա՞վ է արդյոք դաստիարակված և թե տակտ ունի՞ արդյոք այն մարդը, որին ուզում են առաջ քաշել հրամանատարական պաշտոնի, հետևողակա՞ն է արդյոք նա իր գործողությունների մեջ։

Ահա թե ինչու կադրերի ընտրության գործը բարելավելու այլ միջոցառումների թվում երկրամասում հավանություն տվին սովխոզների դիրեկտորների, բաժանմունքների կառավարիչների, բրիգադավարների պոստի թեկնածությունների նախնական քննարկմանը կուսակցական և աշխատավորների կոլեկտիվների ժողովներում։ Այդտեղ ոչ առանց հիմքի կարծում են, որ նման միջոցը կուսակցական կոմիտեին, տնտեսական կազմակերպությունների ղեկավարներին հնարավորություն կտա ավելի լավ հայտաբերելու աշխատողի ուժեղ և թույլ կողմերը, խուսափել սխալներից նրանց գնահատելու գործում։ Նման եղանակով են վարվում Մինսկի շրջանում (Բելոռուսական ՍՍՀ)։ «Պրավդա» սովխոզում համապատասխան թեկնածու չկար դիրեկտորի պաշտոնի համար, իսկ Լենինի անվան հարևան սովխոզում աշխատում էին լավ շատ մասնագետներ, հմուտ կազմակերպիչներ։ Որի՞ վրա կանգ առնել ընտրությունը կատարելիս։ Կուսակցության շրջկոմը որոշեց խորհրդակցել Լենինի անվան սովխոզի կոմունիստների հետ։ Նրանք ըմբռնեցին շրջկոմի խնդիրքը և հարևան տնտեսության ղեկավարի պոստի համար երաշխավորեցին արժանավոր ընկերոջ։

Կյանքը համոզիչ կերպով վկայում է, որ կադրերի ընտրությամբ զբաղվող մարդկանց անհատական պատասխանատվության բարձրացման հետ դեմոկրատական ձևերի հաջող զուգորդումը տալիս է իր արդյունքները, նվազագույնի է հանգեցնում սխալներն աշխատողներին առաջ քաշելու ժամանակ։ Դա հասկանալի է, քանի որ աշխատող նշանակելու ժամանակ դեն է նետվում այն ամենը, ինչ դուրս է նրա օբյեկտիվ գնահատականի սահմաններից և ղեկավարվում են բացառապես նրա քաղաքական և գործարարական հատկություններով։



ՍՄԿԿ XXIII համագումարում կրկին անգամ ընդգծվեց երիտասարդ եռանդուն աշխատողներին համարձակորեն առաջ քաշելու, նրանց եռանդը հին կադրերի փորձի հետ ճիշտ զուգորդելու կարևորությունը։ Իրավացիորեն քննադատության են ենթարկվում նրանք, որոնք խոսքով դեմ չեն երիտասարդ կադրերին առաջ քաշելուն, իսկ գործով ցուցաբերում են երկչոտություն կամ թե այդ կոչն իրագործելու չկամություն։ Ուշադրությունը կենտրոնացնելով իրենց ծանոթ մարդկանց համեմատաբար փոքրիկ շրջանի վրա, ղեկավարներից ոմանք չեն տեսնում ընդունակ, աճող երիտասարդ աշխատողներին, վախենում են լուրջ տեղամասեր վստահել նրանց։ Նման երկյուղը կասեցնում է կադրերի բնական թարմացումը, դժվարացնում հին և երիտասարդ կադրերի զուգորդման սկզբունքի կենսագործումը։

Նոր կադրեր առաջ քաշելու, այս կամ այն պոստում գտնվող մարդկանց ուղածդ րոպեին փոխարինելու կարող աշխատողների ռեզերվ ստեղծելու համար շատ կարևոր նշանակություն ունի աշխատողների պատրաստման ու վերապատրաստման ճիշտ կազմակերպումը, նրանց գործարարական որակի բարձրացման ամենատարբեր եղանակների օգտագործումը։ Կուսակցական պրակտիկան ծնում է կադրերի ուսուցման՝ ժամանակի պահանջմունքներին համապատասխանող, հետաքրքիր մեթոդներ։ Մասնավորապես, Մոսկվայի մարզում սկսել են դարձրել աշխատողների, այսպես կոչված, ստաժավորումները։ Դրանք կազմակերպված են այսպես. կուսակցության մարզային կոմիտեի հանձնարարությամբ առաջավոր ձեռնարկությունների ղեկավարների մոտ, որոնցից կարելի է բան սովորել, ուղարկվում են մյուս ձեռնարկությունների նրանց կոլեգաները։ Մեկ դիրեկտորի կամ կուսակցական կազմակերպության քարտուղարի մոտ, որպես կանոն, ուղարկվում են մեկ կամ երկու ղեկավար։ Այդպիսի գործուղման հինգ-յոթ օրերում տեղի է ունենում անտեսավարության հմուտ ղեկավարման գործնական ուսուցում։

Տվյալ հոդվածի շրջանակները թույլ են տալիս միայն ընդհանուր գծերով անդրադառնալու կադրերի ընտրության և դաստիարակության պրոբլեմին։ Մնում է միայն նշել, որ այդ պրոբլեմի լուծմանն ստեղծագործորեն մոտենալը նշանակում է այդ աշխատանքը կատարել իսկական գիտական խելամտությամբ ու խորությամբ՝ ամենափոքր զիջում չանելով ձևականությանն ու շաբլոնին։

## 2

Կուսակցական աշխատանքում ստեղծագործական հիմունքների մասին խոսելիս բոլորն էլ համաձայնում են, որ կուսակցական աշխատանքն ինքնին վերցրած, որպես մարդկանց դաստիարակության և կազմակերպման բնագավառ, պահանջում է մեծ արվեստ, մշտական որոնում, նպատակասլացություն, հոգեկան մեծ այրում։ Բայց կոնկրետ ինչո՞ւմ է արտահայտվում կուսակցական կազմակերպության աշխատանքի ստեղծագործական բնույթը։

Ոմանք տրամադիր են ստեղծագործություն համարելու ամեն մի նորամուծությունը, աշխատանքի ամենաաննշան աշխուժացումը կամ թե հաջող

անցկացված մեկ-երկու միջոցառումը։ Կուսակցության քաղկոմներից մեկը շտապեց գործարանային կուսակցական կազմակերպության գործունեությունը բնութագրել որպես ստեղծագործական միայն այն բանի հիման վրա, որ այդ կազմակերպությունը սիստեմատիկաբար վերահսկում էր սեփական որոշումների կատարումը, հետաքրքրվում էր, թե կոմունիստներն ինչպես են բարձրացնում գաղափարական-տեսական մակարդակը։ Անշուշտ, չի կարելի անտեսել թե՛ աշխատանքի աշխուժացումը և թե՛ լավ միջոցառումները։ Կարևոր է նաև ընդունված որոշման կատարման ստուգումը։ Բայց չէ որ դա, խստիվ ասած, ամեն մի կուսակցական կազմակերպության, ամեն մի կուսակցական օրգանի տարրական պարտականությունն է։ Այդ պարտականության կատարումը լավագույն դեպքում վկայում է հստակության և գործարարության առկայությունը աշխատանքում։

Ստեղծագործական մոտեցումն օրգանապես յուրահատուկ է կուսակցական աշխատանքի բուն բնույթին։ Բայց, այսպես ասած, ապացույց չպահանջող այս ճշմարտությունից ավտոմատիկորեն չի բխում, որ ամեն մի կուսակցական կազմակերպություն, ամբողջությամբ վերցրած, նրա ղեկավարները միշտ էլ հենց այդպես են մոտենում իրենց առաջ կանգնած խնդիրների լուծմանը։ «Աշխատանքի նկատմամբ ստեղծագործական վերաբերմունք» հասկացությունն իր ամբողջ ծավալով հանդերձ անսահման չէ և, ինչպես ցույց է տալիս պրակտիկան, ունի իր միանգամայն որոշակի սահմանագծերը, իր «ցուցանիշները»։ Եվ, ըստ երևույթին, կուսակցական ակտիվի նախաձեռնությունն առավելագույն չափով զարգացնելու և դաստիարակելու շահերի տեսակետից օրինաչափ է ուշադրություն դարձնել ոչ-ստեղծագործական աշխատանքից ստեղծագործական աշխատանքի ունեցած տարբերության, տեղում դոփելուց՝ թափով ու «աշխուժորեն-կենդանի» աշխատանքի տարբերության վրա։ Դա կադրերին կօգնի ավելի խոր իմաստավորելու իրենց գործողությունները, պետքականը ջոկել անպետքից, պիտանին՝ ոչ պիտանիից, որոշումները, դիրեկտիվները դիտել թե՛ որպես գործողության պարտադիր ուղեցույց և թե՛ որպես փաստաթղթեր, որոնք լայն ասպարեզ են բաց անում ստեղծագործական գործունեության համար։

Լիակատար իրավունքով ստեղծագործական են համարում այն կուսակցական կազմակերպության աշխատանքը, որտեղ ձգտում են լայնորեն ընդգրկել կենսական երևույթները, մտածում են ոչ թե շաբլոն ձևով, այլ ռեալ են գնահատում կոլեկտիվում ստեղծված իրադրությունը, և դրա հիման վրա գտնում են, ինչպես կասեին տնտեսագետները, օպտիմալ միջոցառումներ և լուծումներ, այսինքն՝ հենց այն, որոնք տալիս են առավել շոշափելի արդյունքներ։ Կարճ ասած, կուսակցական կազմակերպության ուշադրությունն ու ջանքերն ի սպաս են դրվում ոչ միայն այն բանին, թե ԻՆՉ անել, այլև այն բանին, թե ԻՆՉՊԵՍ անել, ըստ որում, հաշվի է առնվում ամենից առաջ ո՛չ թե միջոցառումների քանակը, այլ դրանց որակը, նրանց օգտակարության աստիճանը։

ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումների լույսի տակ առանձնապես ակներև է դառնում ընդհանուր, դեկլարատիվ հայտարարությունների և կոչերի անհիմն լինելը, ինչպես օրինակ, «անհրաժեշտ է լարվածություն ստեղծել աշխատանքի մեջ», «նշել միջոցառումներ», «մոբիլիզացնել կատարման համար» և այլն։ Իհարկե, բուն այդ պահանջները ճիշտ են։ Սակայն բանն այն է, թե



ինչպե՞ս «մոբիլիզացնել», ինչ միջոցներ օգտագործել։ Այս հարցերը առավել ևս օրինաչափ են, որ դեռևս կան աշխատողներ, որոնց ուշադրությունը կենտրոնացված է միայն արտաքին կողմի, միջոցառումների քանակի վրա։ Հավատարիմ մնալով արմատացած հայացքներին, նրանք երբեմն քիչ են մտածում հերթական միջոցառման օգտակարության վրա.— անցկացվեր կուսակցական ժողով, և հաշվետվության մեջ երևան գար անհրաժեշտ «թռչնանիշը»։ Արդյոք խո՞ր է քննարկվել հարցը, հուզվե՞լ են արդյոք մարդկանց հոգիները, բարելավում առաջացե՞լ է արդյոք աշխատանքում—դա նրանց միշտ չէ, որ անհանգստացնում է։ Բավականաչափ հաշվի չեն առնում նաև մարդկանց բնավորության անհատական առանձնահատկությունները, նրանց կարիքները, պահանջները, նրանց ընդունակությունները և վերաբերմունքը գործին։ Իսկ չէ՞ որ կազմակերպական աշխատանքի հենց այդ կողմի վրա առանձնահատուկ ուշադրություն էր դարձվում ՍՄԿԿ XXIII համագումարի փաստաթղթերում։ Ձեռնամուխ լինելով այս կամ այն խնդրի լուծմանը, կուսակցական աշխատողներն անխուսափելիորեն մտածում են նաև նպատակին հասնելու միջոցների մասին։ Հարուստ զինանոցից ոչ թե բնազդաբար, այլ միանգամայն իմաստավորված եղանակով են ընտրվում առավել նպատակահարմար և գործունակ միջոցները։

Շարունակելով կոնկրետացնել ստեղծագործության հասկացությունը կուսակցական աշխատանքում, կարելի է վկայակոչել նրա այնպիսի բնորոշ մոմենտը, ինչպես նորը սուր կերպով զգալու, ժամանակի հրամանին իր ժամանակին արձագանքելու, այնպիսի ձևերն ու մեթոդներն ընտրելու հմտությունը, որոնք ամենալավագույն ձևով են համապատասխանում ընթացիկ մոմենտի պահանջմունքներին։ Իհարկե, ընդսմին նկատի է առնվում ոչ թե պրակտիկայի մեջ ձևական նկատառումներով որևէ նոր բան մտցնելու ցանկությունը՝ նորությունը հանուն նորության՝ այլ այն, ինչն օրգանապես բխում է փոփոխված օբյեկտիվ պայմաններից և, կուսակցական աշխատանքն օժտելով նոր բովանդակությամբ, բարձրացնում է այն էլ ավելի բարձր մակարդակի։

Օրինակ, կուսակցական որոշ կազմակերպություններում վերջին ժամանակներս կուսակցության շրջկոմների և քաղկոմների պլենումներ են անցկացվում առանց բանավոր զեկուցման։ Կոմիտեի անդամները, կուսակցական ակտիվը, կոմունիստների լայն մասսաները զեկուցման թեզերի, ինչպես նաև որոշման նախագծի հետ ծանոթանում են նախօրոք, հնարավորություն ստանալով ավելի խոր կերպով մտածելու առաջ քաշվող հարցերի վրա, կոլեկտիվ քննարկման դնելով իր սեփական փորձը, իր սեփական կարծիքը։ Այսպես, Լենինգրադի Կույբիշևյան շրջկոմը ռեպերտուար կազմելու գործում թատրոնների կուսակցական կազմակերպությունների դերը բարձրացնելու հարցը քննարկելուց շատ առաջ զեկուցման տեքստը և որոշման նախագիծը ուղարկել է ոչ միայն շրջկոմի անդամներին, այլև ստեղծագործական կոլեկտիվների կուսակցական կազմակերպություններին։ Եվ պլենումի աշխատանքն սկսեցին անմիջապես վիճաբանություններից։ Մտքերի աշխույժ, հանգամանալից փոխանակությունը, լավ մտածված կոնկրետ որոշումը նպաստեցին դրամատուրգների, ռեժիսյորների, դերասանների, թատերական բոլոր կոլեկտիվների աշխատանքի բարելավմանը։

Ամեն մի նորության արժեքի գլխավոր չափանիշը պրակտիկան է, կուսակցական ազդեցության ուժեղացումը մարդկանց վրա, կոնկրետ արդյունք-

# 3

Կուսակցական աշխատանքը բազմակողմանի է: Եվ ամենուրեք պահանջ-
վում է քննադատաբար իմաստավորել պրակտիկան, բարձրացնել անցկաց-
վող միջոցառումների ներգործությունը: Հարկ չկա ապացուցելու, թե կուսակ-
ցական կազմակերպությունների կյանքում որքան մեծ է կուսակցական ժո-
ղովների դերը: Վերջին ժամանակներս սեմինարներում, խորհրդակցություն-
ներում, մամուլում ավելի ու ավելի հաճախակի են քննարկվում այն հարցերը,
թե ինչպես բարձրացնել ժողովների մակարդակը, դրանք ինչպես հարկն է
դարձնել կոլեկտիվ մտքի, կոլեկտիվ փորձի, կոլեկտիվ կամքի արտահայտիչ-
ները: Բոլորն էլ գալիս են այն եզրակացության, որ ժողովներն ստեղծագոր-
ծական ֆորումներ են այն ժամանակ, երբ ժողովների կազմակերպիչները
քննարկման են դնում լավ մտածված հարցերը, որոնք խորապես շոշափում են
կոլեկտիվի շահերը:

Օրինաչափ է, որ կուսբյուրոները, նրանց քարտուղարները հոգատարու-
թյուն են ցույց տալիս, որ ամեն մի կուսակցական ժողովի ժամանակ բարձր
լինի նրա մասնակիցների ակտիվությունը: Բայց ակտիվություն կա, ակտիվու-
թյուն էլ: Ուրիշ բան է, երբ հմտորեն և բազմակողմանիորեն պատրաստված
հարցը խորապես հուզում է մարդկանց, երբ հռետորները տեղերից վեր են
կենում, որպեսզի անկեղծորեն խոսեն իրենց ցավոտ կողմերի մասին: Եվ
միանգամայն այլ բան է, երբ կազմակերպիչները մտահոգված են միայն ժո-
ղովի արտաքին ատրիբուտների պահպանմամբ, հոգ են տանում ոչ միայն
նրա համար, որ հռետորների ցուցակն ավելի երկար լինի, այլև նրանց ելույթ-
ների թեզերի մասին, բաժանում են դերերը, նախապես որոշելով, թե ով ինչ
պիտի ասի: Պարզ չէ մի՞թե, որ այսպիսի թատերական ժողովի ակտիվու-
թյունը ցուցադրական, ավելորդ է: Իրավացի է ՍՄԿԿ XXIII համագումարի
անվան Բաքվի նավթավերամշակման գործարանի ավագ օպերատոր Մահմեդ
Սուլթանովը, երբ ասում է, որ կուսակցական ժողովում խոսակցություն լինի
կենդանի և մինչև վերջ անկեղծ, որ «ձևականությունը չչորացնի» այն: «Թող
այդ խոսակցությունն այնպես ընթանա, ինչպես իրար հետ խոսում են մեծ
գործի զինակից երկու մտերիմ ընկերները: Ի՞նչ ես մտածում, երազում: Ի՞նչ
նոր բան ես մտցրել քո աշխատանքում: Ո՞ւմ ես օգնել, որի՞ լավ նախաձեռ-
նությունը պաշտպանել: Սովորեցնո՞ւմ ես արդյոք ուրիշներին՝ ընկերներին,
երիտասարդներին, որոնք գալիս են մեզ փոխարինելու»:

Կուսակցական աշխատանքի ոճի կատարելագործումը բարդ պրոցես է:
Ճնշում գործադրելով, ընդհանուր կոչերով շատ բանի չես հասնի: Կարևոր է
պայմաններ ստեղծել ձեռներեց, ինքնուրույն աշխատանքի համար, համա-
ռորեն պատվաստել անընդհատ համարձակ լուծումներ որոնելու ճաշակը:

Նոր ձևերն ու մեթոդները մոգական գավազանի մեկ շարժումով չեն տա-
րածվում միանգամից և ամենուրեք: Բոլոր աշխատողների մեջ միանգամից չի
մշակվում քաղաքական աչալրջություն, նորի սուր զգացում: Ոմանք համար-
ձակորեն են դիմում ստեղծագործական որոնման, մյուսների համար դժվար է
հրաժարվել տորոված ճանապարհներից: Ինչպե՞ս վարվել. սպասե՞լ արդյոք
մինչև որ ստեղծագործական մոտեցումն ամենուրեք և ամեն բանում հաղ-
թանակ տանի: Ո՛չ, ստեղծագործությունը կուսակցական աշխատանքում
ակտիվ, ներգործուն պրոցես է: Համառությունը, պահանջկոտությունը,



ամեն մի գործ մինչև վերջը հասցնելու ձգտումը նրա անդավաճան ուղեկից-
ներն են: Բավական չէ «լավն ու վատն» իմանալը: Կարևոր է գործել, հասնել
արդյունքների:

Կուսակցական աշխատանքի ոճի կատարելագործումը շատ բանով կախ-
ված է այն բանից, թե որքան հմտորեն է կազմակերպված կուսակցական ակ-
տիվի ուսուցումը: Ի՞նչ է նշանակում ստեղծագործորեն աշխատելը,— ահա
դրա վերլուծությանը պետք է մեծ ուշադրություն նվիրել կուսակցական շինա-
րարության հարցերի վերաբերյալ խորհրդակցություններում, սեմինարներում
և կուսակցական ակտիվի ժողովներում: Ուսուցման բուն բնույթն էլ կդառնա
ավելի կենդանի ու բովանդակալից: Ընդհանուր և ինչ-որ չափով ստանդար-
տացված խրատներին ու քարոզներին հաջորդում են առարկայական ցուցա-
դրումները, ընդհանրացված ձևով կոնկրետ փորձ պարունակող դասախոսու-
թյուններն ու զրույցները:

Կուսակցական ակտիվի ուսուցման կազմակերպմանը ստեղծագործորեն
են մոտեցել Կեմերովոյի մարզի ՍՄԿԿ Կիսելովյան քաղկոմում: Այստեղ գոր-
ծում է կուսկազմակերպությունների քարտուղարների դպրոց: Հատկապես
մշակված ծրագրով ձեռնարկություններում անց են կացվում պարապմունք-
ներ, նպատակային սեմինարներ: Քարտուղարները մասնակցում են տեխնի-
կական և տեսական կոնֆերանսներին, ներկա են լինում մյուս կուսկազմակեր-
պությունների կուսակցական ժողովներին և այլն: Պարապմունքները բազմա-
զանվում են: Այսօր այդ պարապմունքներն անց են կացնում լավագույն պրո-
պագանդիստը, կուսխմբակային կազմակերպիչը կամ կուսկազմակերպության
քարտուղարը, վաղը՝ կուսակցության քաղկոմի աշխատողը կամ գործարանի
դիրեկտորը, հանքահորի պետը: Պարապմունքները կազմակերպվում են ոչ
միայն քաղկոմում, այլև գործարանում, հանքահորում, նորակառույցում,
այնտեղ, որտեղ կուսկազմակերպության քարտուղարը սովորելու բան ունի:
Ուսուցման նպատակասլացությունը, կյանքի հետ նրա կապը լավ երևում են
հետևյալ օրինակից: Պարապմունքներից մեկի ժամանակ ծնվեց արտադրա-
կան ընդհանուր շահերով իրար հետ կապված կոլեկտիվների սկզբնական
կազմակերպությունների համատեղ գործողությունների իդեան: Մեքենաշի-
նական գործարանին ձուլվածք մատակարարելու գործում եղած խափանում-
ները կարելի էր վերացնել միայն «Ձերկասով կամեն» շինարարական կառա-
վարչության կոլեկտիվի օգնությամբ: «Կլոր սեղանի» շուրջը նստեցին գոր-
ծարանի կուսկոմիտեի և նորակառույցի կուսբյուրոյի ներկայացուցիչները:
Տնտեսավարների մասնակցությամբ նրանք նշեցին այն միջոցառումները,
որոնք հնարավորություն տվեցին կարճ ժամկետում ավարտելու ձուլման շըր-
ջանային բազայի շինարարությունը:

Այսպես է առարկայական ուսուցման շոշափելի և զգալի օգուտը: Բայց
արդյոք բոլոր սեմինարներն ու խորհրդակցություններն այսքան նպատակա-
սլաց և ուսանելի են: Ո՛չ: Սեմինարներն ու խորհրդակցությունները երբեմն
պատրաստում են հապճեպորեն, սոսկ միայն անցկացրած լինելու համար: Եվ
հաճախ կենդանի փորձը մնում է այդպիսի խորհրդակցությունների դռան
հետև, իսկ նրանց մասնակիցներին մատուցում են տարրական ճշմարտու-
թյուններ: Այդ բոլորի հետևանքով մարդիկ ոչինչ չեն ստանում պարապմունք-
ներից: Նրանք չեն քաղել նոր, հետաքրքիր մտքեր, չեն տոգորվել որոնելու և
փորձելու ցանկությամբ:

խորհրդակցության, սեմինարի կամ թե դասընթացների օրինաչափությունը և արժեքը որոշվում են, ամենից առաջ, գործի շահերով, կարևոր, ակտուալ հարցը քննարկելու, մտքերի փոխանակություն կատարելու, ամբողջ լավագույնը փոխառնելու իրական պահանջմունքով, որպեսզի աշխատանքի մեջ մեկ աստիճան վեր բարձրանան: Հակառակ դեպքում խորհրդակցությունը, անկախ այն կազմակերպողների բարի ցանկության, կվերածվի հերթական լիցքի և խոսարանի: Եթե ընդամին կորցնում են չափի զգացումը և խորհրդակցությունները ինչպես կալեյդոսկոպում հաջորդում են մեկը մյուսին, ապա դա ուղղակի տանում է նիստարարական իրարանցման, որը Վ. Ի. Լենինն անվանում էր կենդանի գործի զուտ չինովնիկական սպանություն:

Խորհրդակցությունները, սեմինարները կուսակցական ակտիվի ուսուցման և փորձի փոխադարձ փոխանակման միակ ձևերը չեն: Մեծ հնարավորություններ ունի կուսակցական մամուլը— դա ամենամասսայական համալսարանն է: Սերտորեն կապված լինելով կուսակցական կազմակերպությունների կյանքին, մամուլը հանդես է գալիս որպես նորի հետախույզ, տալիս է բազմազան ու ակտուալ մեծ ինֆորմացիա: Մամուլը վառ օրինակներով ցույց է տալիս, թե կուսակցական կազմակերպություններն ինչպես են կատարելագործում իրենց աշխատանքի ոճն ու մեթոդները: Եվ շատ կարևոր է, որ փորձը բացահայտվի առավելագույն լիակատարությամբ, այլ չփոխարինվի գոեհկացրած սխեմով՝ վատ էր, լավացավ, կլինի միանգամայն լավ:

ՍՄԿԿ XXIII համագումարի նյութերի ուսումնասիրությունը, շարունակ դրանց դիմելը մեր կադրերի, բոլոր կոմունիստների մեջ ձգտում է առաջ բերում ավելի խոր կերպով իմաստավորելու կուսակցության գերագույն օրգանի առաջ քաշած հիմնական իդեաները, կիրառել դրանք իրենց պրակտիկ գործունեության մեջ, մարմնավորել կյանքում: Եվ, ինչպես երբեք, կարևոր է նոր ձևերի և մեթոդների ստեղծագործական որոնումը, որոնք թույլ տան մեր աշխատանքի ամեն մի տեղամասում ավելի լավ իրագործելու այն, ինչ որ որոշել է կուսակցության XXIII համագումարը: Ինքնին հասկանալի է, որ նման որոնումն այնքան ավելի արդյունավետ կլինի, որքան ավելի մեծ ուշադրություն նվիրվի ներկուսակցական աշխատանքը լավագույն ձևով կազմակերպելուն:

Կոմունիստների ստեղծագործական ակտիվությունը հորդում է այնտեղ, որտեղ հետևողականորեն իրագործվում են կուսակցության դեմոկրատական սկզբունքները, խստիվ պահպանվում են կանոնադրային պարտականությունները և ՍՄԿԿ անդամի իրավունքները, որտեղ ընկերական իսկական կուսակցական մթնոլորտում տեղի է ունենում մտքերի գործարար փոխանակություն, ծավալվում է ազատ դիսկուսիա, պաշտպանվում է համարձակ, նոր միտքը: Իսկ այնտեղ, որտեղ խախտվում է կոլեկտիվությունը, որտեղ քննադատությունն ու ինքնաքննադատությունը խլացված են, որտեղ վախենում են վիճաբանությունից, մտքերի ընդհարումից, կենդանի մտքի ոչ մի բաբախման մասին խոսք լինել չի կարող: Կուսակցական կազմակերպությունը միայն այն ժամանակ է իր պարտքը կատարում, երբ նա դաստիարակում է գիտակից, ակտիվ մարտիկներ, որոնք ընդունակ են կուսակցության գործերի և ճակատագրի մասին մտածել որպես իրենց ամենահարազատ ու թանկ բանի մասին, հաստատակամորեն կենսագործել կուսակցության իդեաներն ու պլանները:

Ռ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

# ՍՄԿԿ-Ը ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՐՏԱԴՐԱՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՄԱՆ ՄԱՍԻՆ[1]

Սովետական Միությունը կենսագործում է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման վիթխարի ծրագիրը: Ելնելով մարքսիզմ-լենինիզմի ուսմունքի այն դրույթից, որ նյութական բարիքների արտադրությունը որոշիչ դեր է խաղում հասարակության զարգացման, հասարակական բոլոր հարաբերությունների և հասարակական գիտակցության վերափոխությունների գործում, կուսակցությունը ընդունեց արտադրության հետագա առաջադիմության և դրան համապատասխան՝ կոմունիզմի ճանապարհին սոցիալական առաջադիմության հնգամյա պլան: Դրա հետ միասին կուսակցությունը ղեկավարվում է արտադրողական ուժերի զարգացման վրա հասարակական և, առաջին հերթին, տնտեսական, արտադրական հարաբերությունների ակտիվ ներգործության կարևորագույն սոցիոլոգիական օրենքով:

ՍՄԿԿ XXIII համագումարի և կուսակցության Կենտկոմի՝ դրան նախորդած պլենումների անգնահատելի նշանակությունն առաջին հերթին այն է, որ կուսակցությունը ձեռնամուխ է եղել կատարելագործելու սոցիալիստական հասարակության տնտեսական հարաբերությունները, այսինքն՝ ստեղծելու այնպիսի նոր տնտեսական սիստեմ, որն ավելի ակտիվորեն է խթանում արտադրությունը, միլիոնավոր աշխատավորների ստեղծագործական գործունեությունը: Կուսակցությունը ցույց տվեց վերնախավային վերափոխությունների, կառավարման վարչական ձևերի վերակազմությունների անզորությունը և ամբողջ ուշադրությունը կենտրոնացրեց արտադրության կառավարման ու զարգացման տնտեսական մեթոդների ու ձևերի վրա: Կենտկոմի մարտյան (1965 թ.) և սեպտեմբերյան (1965 թ.) պլենումները և ՍՄԿԿ XXIII համագումարը մշակեցին միջոցառումների այնպիսի մի հետևողական սիստեմ, որը կոչված է արմատապես փոխելու տնտեսական արտադրական հարաբերությունների սիստեմը, սոցիալիստական արտադրության պլանավորման ու կառավարման սկզբունքները, ստեղծելու տնտեսական լծակներ նրա է՛լ ավելի զարգացման համար:

[1] Տպագրվում է հարցադրման կարգով: Խմբ.





Հանդես գալով կուսակցության XXIII համագումարում, Լ. Ի. Բրեժնևը համոզիչ կերպով պատճառաբանեց տնտեսական ռեֆորմի անհետաձգելիությունն ու կենսական անհրաժեշտությունը։ Հոկտեմբերյան պլենումից հետո Կենտրոնական կոմիտեն ջանքերը կենտրոնացրեց մեր հասարակության տնտեսական հարաբերությունները կատարելագործելու, ժողովրդական տնտեսության կառավարման սիստեմը բարելավելու, արտադրությունը պլանավորելու և խթանելու արմատական հարցերի վրա[1]։ Կուսակցությունը մշակեց տնտեսական քաղաքականության սկզբունքները, որոնք ուղղված են պետական պլանավորումը բարելավելու, ձեռնարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների տնտեսական ինքնուրույնությունն ու նախաձեռնությունը լայնացնելու, իրենց գործունեության արդյունքների հարցում արտադրական կոլեկտիվների պատասխանատվությունն ու նյութական շահագրգռվածությունը բարձրացնելուն։

Կուսակցության Կենտկոմի սեպտեմբերյան պլենումից հետո ընկած ժամանակամիջոցում նոր տնտեսական սիստեմի հիման վրա արդեն գործում են արդյունաբերության տարբեր ճյուղերի ավելի քան վեց հարյուր ձեռնարկություններ։ Այժմ արդեն սկսվել է տնտեսական ռեֆորմի կենսագործման նոր ժամանակաշրջան. գործունեության նոր սիստեմի են փոխադրվում ոչ թե առանձին ձեռնարկություններ, այլ արդյունաբերության ամբողջ ճյուղեր։ Երկու տարվա ընթացքում երկրի ամբողջ արդյունաբերությունն աստիճանաբար կանցնի տնտեսական հարաբերությունների նոր ձևին։

Ներկա հոդվածում մենք կկամենայինք ցույց տալ մեր հասարակության արտադրական հարաբերությունների կատարելագործման ընդհանուր տեսական հիմունքները։

## ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆ ՈՒԺԵՐԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՁԵՎՆ ԵՆ

Արտադրական եղանակի դիալեկտիկայի կարևորագույն օրինաչափությունը, որ բացահայտեց Մարքսը, արտադրական հարաբերությունների՝ որպես արտադրողական ուժերի զարգացման ձևի կամ շղթաների, ֆունկցիան է։ Այդ ֆունկցիան օրինաչափ է, անհրաժեշտաբար հատուկ նաև սոցիալիստական արտադրական հարաբերություններին։ Եվ որպեսզի իր ամբողջ լրիվությամբ ու խորությամբ պատկերացնենք սոցիալիստական արտադրական հարաբերությունների այդ ֆունկցիայի նշանակությունը, անհրաժեշտ է նախապես պարզել արտադրական հարաբերությունների սոցիալական ֆունկցիայի պրոբլեմն ընդհանրապես։

Արտադրական, տնտեսական հարաբերությունները հանդիսանում են արտադրության անհրաժեշտ, էական գործոնը։ Դրանք արտադրողական ուժերի գործողության տնտեսական ձևն են։ Այդ ձևի մեջ առավել էականը արտադրողական ուժերի անհատական տարրի (մարդու) և իրային տարրի (արտադրության միջոցների) միացման եղանակն է։ Այդ միացման հատուկ եղանակը, որ իրավաբանորեն արտահայտվում է սեփականության ձևերում, նյութական բարիքների արտադրության ու բաշխման պրոցեսում օբյեկտիվորեն առաջացնում է համապատասխան նյութական հարաբերություններ մարդկանց առանձին սոցիալական խմբերի (դասակարգերի, խավերի) միջև։ Այդ հարաբերությունների յուրաքանչյուր տվյալ տիպը օբյեկտիվորեն ստեղծում է սոցիալական խմբերի արտադրական գործունեության տարբեր, դրան համապատասխան շարժառիթներ։ Գործունեության այդ շարժառիթները գործում են որպես մարդկանց տվյալ սոցիալական խմբի օբյեկտիվ շահեր։ Գիտակցված, դասակարգային և անհատական իմացության պրիզմայում բեկված այդ օբյեկտիվ շահերը առաջացնում են մարդկանց նպատակասլաց գործողություններ։

Արտադրական հարաբերությունները հանդիսանում են այն օբյեկտիվ հիմքը, որի վրա արտադրության պրոցեսում ծագում են մարդկանց շարժառիթները, օբյեկտիվ շահերը, նպատակները, գործողության զարկերակները։ Նրանք կարող են առաջացնել մարդկանց այդ գործողությունների ինչպես դրական, այնպես էլ բացասական շարժառիթներ, շահեր և այլն։ Բայց իրենք՝ արտադրական հարաբերությունները, որոնք, ի դեպ, գոյություն չունեն մարդկանցից անկախ, չեն կարող ամեն դեպքում լինել, ինչպես երկար տարիներ մեզ մոտ համարվում էր, արտադրողական ուժերի շարժիչ։ Արտադրական հարաբերություններն ինքնին նույնպես քիչ չափով են հանդիսանում արտադրողական ուժերի շարժիչ, ինչպես, օրինակ, ջրվեժը առանց տուրբինի, գեներատորների՝ էլեկտրաէներգիայի աղբյուր։ Միայն մարդն է հանդիսանում արտադրողական ուժերի շարժիչն իր այս կամ այն նպատակներով, ձգտումներով, շահերով, խթաններով։ Մարդիկ են հանդիսանում ինչպես գլխավոր արտադրողական ուժը, արտադրողական ուժերի անհատական տարրը, այնպես էլ միակ սկիզբը, արտադրության միջոցների, գիտության, տեխնոլոգիայի, արտադրության կազմակերպման ձևերի, այսինքն՝ արտադրողական ուժերի բոլոր բաղադրիչների զարգացման միակ սկզբնավորողը։

Կյանքը, պրակտիկան համոզում են, թե որքան անիմաստ է վերացականորեն խոսել արտադրական հարաբերությունների որպես արտադրողական ուժերի շարժիչի մասին։ Սակայն բանը չի սահմանափակվում միայն տեսական անիմաստությամբ։ Բանն այն է, որ արտադրական հարաբերությունների այդպիսի ըմբռնումը տրամաբանորեն հասցնում է մարդկանց, աշխատավորների վճռական դերի անտեսմանն արտադրողական ուժերի զարգացման գործում։ Եթե արտադրական հարաբերություններն ինքնին հանդիսանում են արտադրողական ուժերի շարժիչ, ապա ինչ էլ ասելու լինենք կադրերի, մարդկանց դերի մասին, մարդը և նրա գործունեությունը այդ հետևության նախադրյալով մղվում են երկրորդական պլան։ Այդպիսի դատողության բնական արդյունք է հանդիսանում այն դոգմատիկ պնդումը, թե քանի որ կան սոցիալիստական արտադրական հարաբերություններ, ապա ինքնաբերաբար կա նաև արտադրողական ուժերի մշտական հզոր շարժիչ, ուստի և դրանք ցանկացած պարագաներում բուռն կերպով, արագորեն զարգանում են։

Սակայն կյանքը շատ ավելի բարդ ստացվեց, քան դոգմատիկ սխեմաներն են։ Ստացվեց այնպես, որ սոցիալիստական արտադրական հարաբերությունների շրջանակներում արտադրողական ուժերը կարող են զարգանալ ինչպես բուռն կերպով, այնպես էլ դանդաղ՝ ամենևին էլ չբավարարելով հասարակության պահանջմունքները և չհամապատասխանելով նրա իրական հնարավորություններին, առաջացնել անհամամասնություն հասարակական ար-

1 Տես՝ «Правда», 30 մարտի, 1966 թ.։

տադրությունում և այլն։ Եվ այդ ամենը մարդու թույլ, պասսիվ գործողության
հետևանքով։
Քանի որ մենք պարզեցինք արտադրական հարաբերությունների (օբյեկ-
տիվ տնտեսական ձև) և մարդու (շարժիչ) սոցիալական ֆունկցիան արտա-
դրողական ուժերի զարգացման գործում, ապա արդեն դժվար չի գտնել նաև
դրանց զարգացման բոլոր հիմնական պայմանները ընդհանրապես և պատմա-
կան յուրաքանչյուր կոնկրետ պահին։
Քննարկենք այդ պայմանները։
Արտադրողական ուժերի շարժիչի իր ֆունկցիան մարդը կենսագործում է
հետևյալ եղանակներով՝ ա) առավել լրիվությամբ օգտագործում, ծավալում է
այն բոլոր արտադրական կարողությունները, որ պարունակում են սեփական
աշխատուժն ու արտադրության միջոցները. բ) կատարելագործում է ունեցած
արտադրության միջոցները և ստեղծում նոր միջոցներ. գ) կատարելագործում
է իր աշխատանքային հմտություններն ու բարձրացնում կուլտուր-տեխնիկա-
կան մակարդակը. դ) զարգացնում է գիտությունը, արտադրության տեխնո-
լոգիան, կառավարման ձևերը. ե) ամենալավագույն կերպով օգտագործում է
արտադրական հարաբերությունների առաջացրած օբյեկտիվ պայմանները,
այսինքն՝ զարգացնում է արտադրության տեխնոլոգիան, արտադրության ու
սպառման կազմակերպման ձևերը, պլանավորումը, գիտության ու տեխնիկայի
նվաճումների արմատավորումը արտադրության մեջ։
Այդ ամենը ամբողջությամբ իրականացվում է մարդու սուբյեկտիվ կամ-
քով և գիտակցված ցանկությամբ։ Բայց մարդու թե՛ կամքը, թե՛ գիտակցված
ցանկությունն առաջանում են արտադրական հարաբերություններից։ Եվ եթե
օբյեկտիվ տնտեսական պայմանները մարդու մոտ անհրաժեշտաբար չեն առա-
ջացնում վերոհիշյալ միջոցառումներն իրականացնելու այդ գիտակցված ցան-
կությունը և նա իր գործունեությունը չի ծավալում վերը նշված ուղղություննե-
րով, ապա, առաջին հայացքից, ամենաբարենպաստ արտադրական հարաբե-
րությունների պայմաններում արտադրողական ուժերի՝ տեսականորեն ենթա-
դրվող և երբեմն տրամաբանորեն անխուսափելի, զարգացումը տեղի չի ունենա։
Եթե մենք կոնկրետ կերպով վերցնենք սոցիալիստական արտադրահարա-
բերությունները, ապա դրանք, որպես արտադրողական ուժերի զարգացման
ձև, իրենց առավել լավագույն կերպով դրսևորում են այն դեպքում, երբ՝
ա) առավելագույն կերպով և բազմակողմանիորեն առաջացնում են մարդկա-
յին ակտիվ գործունեության նյութական և բարոյական խթաններ՝ կատարե-
լագործելու ունեցած արտադրության միջոցները և ստեղծելու նոր միջոցներ.
բ) ստեղծում են օբյեկտիվ հնարավորություն ու անհրաժեշտություն, մարդ-
կանց նյութական ու բարոյական շահագրգռվածություն արտադրության միջոց-
ներն ու գիտությունը առավել լրիվությամբ օգտագործելու և արտադրության
մեջ արմատավորելու, իրենց կուլտուր-տեխնիկական մակարդակը բարձրացնե-
լու ասպարեզում. գ) կազմում են արտադրությունը գիտականորեն պլանավո-
րելու և կառավարելու օբյեկտիվ հիմքը. դ) դառնում են հենց իրենց՝ աշխա-
տավորների կողմից արտադրությունը կառավարելու և սպառումը կազմակեր-
պելու դեմոկրատական ձևերի, սոցիալիստական դեմոկրատիզմի սկզբունքների
հիման վրա ամբողջ հասարակական արտադրությունը կազմակերպելու հիմք։
Եթե այդ բոլոր պայմանները առավել լրիվությամբ կյանքի են կոչվում
սոցիալիստական արտադրական հարաբերությունների կողմից, ապա վերջին-



ներս հնարավոր լավագույն ձևից վեր են ածվում արտադրողական ուժերի
իրական, հիրավի գոյություն ունեցող լավագույն ձևի։

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԷՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԿՈՆԿՐԵՏ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԸ

Արտադրության սոցիալիստական եղանակի զարգացման տարբեր պա-
րագաներում նրա արտադրական հարաբերությունները կարող են ծառայել
որպես արտադրողական ուժերի առավել արագացված զարգացման ձև կամ,
եթե նրանք անհամապատասխան են դարձել, կարող են ինչ-որ չափով վերած-
վել մի գործոնի, որը խոչընդոտում է արտադրողական ուժերի զարգացմանը։
Դա կախված է տվյալ սոցիալիստական երկրի արտադրական հարաբերություն-
ների սիստեմի, կառուցվածքի կոնկրետ կազմակերպումից՝ նրա զարգացման
տվյալ փուլում։
Ուստի և, պարզելու համար սոցիալիզմի արտադրողական ուժերի և ար-
տադրական հարաբերությունների դիալեկտիկան, անհրաժեշտ է նրա զար-
գացման յուրաքանչյուր կոնկրետ ժամանակաշրջանում վերլուծել սոցիալիստա-
կան արտադրահարաբերությունների էության և կոնկրետ կառուցվածքի դիա-
լեկտիկան։
Սոցիալիստական արտադրահարաբերությունների էությունը արտադրու-
թյան միջոցների հանրայնացումն է, շահագործողական դասակարգերի վերա-
ցումը, հանրային յուրացումը, բաշխումը ըստ աշխատանքի, բոլոր աշխատա-
վորների փոխադարձ օգնությունն ու համագործակցությունը, արտադրության
պլանային ու համամասնական զարգացումը և այլն։ Եվ որպես այդպիսիք,
իրենց վերացական էությամբ, կամ, ինչը որ նույնն է, վերացական կառուց-
վածքով սոցիալիստական արտադրահարաբերությունները հանդիսանում են
արտադրողական ուժերի զարգացման բարձրագույն ձևը։
Սակայն սոցիալիստական արտադրահարաբերություններն իրենց այդ
էությունը կարող են դրսևորել, իրականացնել սոսկ մի որոշակի արտահայտու-
թյան մեջ, այսինքն՝ այնպիսի մի որոշակի կոնկրետ կառուցվածքում, որի մեջ
նրանք իրականապես մարմնավորված են, որի մեջ գտնում են իրենց տնտե-
սական և սոցիալական դեմքը։
Դիալեկտիկական մատերիալիզմը վաղուց է սահմանել այն ճշմարտու-
թյունը, որ էությունը և դրա դրսևորման ձևը երբեք նույնական չեն։ Դրսևոր-
ման ձևը լավագույն դեպքում մոտենում է էության ադեկվատային արտահայ-
տությանն ու կենսագործմանը։ Եթե այդ ընդհանուր ճշմարտությունը կիրա-
ռենք մեր հետազոտության առարկայի նկատմամբ, ապա կստացվի առաջնա-
կարգ տեսական և գործնական կարևորության եզրահանգում։ Սոցիալիստա-
կան արտադրահարաբերությունների՝ որպես արտադրողական ուժերի զարգաց-
ման բարձրագույն տնտեսական ձևի, էության դրսևորման ձևը միշտ սոսկ
միայն կմոտենա այդ էությանը։ Հետևաբար այն հանգամանքը, թե սոցիա-
լիստական արտադրահարաբերություններն ինչ չափով են հանդիսանում ար-
տադրողական ուժերի զարգացման ձև, կախված է ոչ թե նրանց աբստրակտ
սոցիալիստական էությունից, այլ սոցիալիզմի արտադրական հարաբերու-
թյունների կոնկրետ կառուցվածքի ադեկվատության աստիճանից նրանց այդ

աբստրակտ սոցիալիստական էության։ Ուստի արտադրողական ուժերի զար-
գացման այն բոլոր հնարավորությունների իրականություն դարձնելու հա-
մար, որոնք դրված են սոցիալիզմի արտադրական հարաբերությունների
էության մեջ, անհրաժեշտ է արտադրական հարաբերությունների այնպիսի մի
կոնկրետ կառուցվածք, որն առավել լրիվությամբ և բազմակողմանիորեն
դրսևորի սոցիալիստական արտադրահարաբերությունների այդ էությունը։
Հիրավի, արտադրական հարաբերությունները սոցիալիստական են թե՛
ՍՍՀՄ-ում, թե՛ Ռումինիայում, թե՛ Հարավսլավիայում, թե՛ Լեհաստանում,
թե՛ ԳԴՀ-ում և այլն։ Բայց այդ երկրների արտադրական հարաբերությունների
կոնկրետ կառուցվածքում որքա՜ն տարբերություններ կան։ Ուստի, զանազան
է նրանց, որպես արտադրողական ուժերի զարգացման ձևի, էության դրսևոր-
ման և կենսագործման աստիճանը։ Ճիշտ այդպես էլ մեր երկրում սոցիալիզ-
մի զարգացման տարբեր փուլերում արտադրական հարաբերություններն ունե-
ցել են տարբեր կոնկրետ կառուցվածք, որը որոշվել է արտադրողական ուժե-
րի զարգացման մակարդակով և տարբեր ներգործություն է ունեցել վերջին-
ներիս զարգացման վրա։

Սոցիալիստական արտադրահարաբերությունների կոնկրետ կառուցվածքը,
որպես իր էության դրսևորման առավել ոչ ադեկվատային ձև, պատնեշված չէ
այդպիսի հավանականությունից։ Այդպիսի պարագայում առաջանում է արտա-
դրական հարաբերությունների էության իրական կառուցվածքի բարձր աստի-
ճանի անհամապատասխանություն։ Այդ դեպքում սոցիալիզմի արտադրական
հարաբերությունների տվյալ կոնկրետ կառուցվածքը արտադրողական ուժերի
զարգացման ձևից դառնում է նրանց արգելակիչը։

Ահա թե ինչու սոցիալիստական արտադրահարաբերությունները, մնալով
սոցիալիստական, այնուամենայնիվ կարող են դառնալ արտադրողական ուժե-
րի թույլ զարգացման ձև կամ նույնիսկ նրանց զարգացումը խափանող գործոն։
Կուսակցության Կենտկոմի մարտյան և սեպտեմբերյան պլենումները մեր հա-
սարակության արտադրահարաբերությունների կոնկրետ կազմակերպման մեջ
բացահայտեցին էական թերություններ, որոնք խանգարում են սոցիալիզմի,
որպես արտադրողական ուժերի առավելագույն չափով բարձր զարգացման
ձևի, տնտեսական հարաբերությունների էությունը ծավալելուն։ Այդ թերու-
թյունները կայանում են նրանում, որ արտադրության զարգացման նյութա-
կան խթանը թույլ է հարուցվում, բաշխման համամասնությունն ու ձևերը չեն
արտացոլում աշխատավորների որոշ հիմնական շահերը, տնտհաշվարկի սկզ-
բունքները, շահութաբերությունը, ապրանքադրամական հարաբերությունները
իրականացվում են էական սահմանափակումներով, թույլ է աշխատավորների
ինքնագործունեությունը, անտեսվում են տնտեսական հարաբերությունների
զարգացման որոշ օբյեկտիվ օրենքներ և այլն։ Այդ մի շարք թերությունների
մեջ առավել էականները եղել են, թերևս, աշխատավորների արտադրական կո-
լեկտիվների անբավարար նյութական շահագրգռվածությունը, ինչպես նաև
ձեռնարկությունների կառավարման գործում աշխատավորների կոլեկտիվների
իրավունքների սահմանափակվածությունը։ Արտադրողական ուժերի զարգաց-
ման, արտադրության աճման համար անհրաժեշտ էր հաղթահարել մեր հա-
սարակության արտադրահարաբերությունների կոնկրետ կազմակերպման գոր-
ծում եղած վերոհիշյալ թերությունները։ Անհրաժեշտ էր արտադրահարաբերու-
թյունները կազմակերպել այնպիսի կոնկրետությամբ, որպեսզի օբյեկտիվ ան-



խուսափելիությամբ, այլ ոչ թե այս կամ այն անձի բարի ցանկությամբ, կյան-
քի կոչվեն նյութական ու բարոյական խթանները՝ հասարակական արտադրու-
թյան ասպարեզում մարդկանց ակտիվ գործունեության հիմքերն ու ձևերը։

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿՈՆԿՐԵՏ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԻ ԲԱՐԵՓՈԽՄԱՆ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐԸ

Արտադրական հարաբերությունների բարեփոխումը պահանջում է պրոբ-
լեմների ամբողջ կոմպլեքսից անջատել գլխավորը՝ արտադրողական ուժերի
առաջադիմության մյուս բոլոր պրոբլեմների լուծման հիմքը։ Կուսակցությունը,
հատկապես XXIII համագումարում, մատնանշել է այդ պրոբլեմը։ Դա առկա
արտադրողական ուժերի շահավետ օգտագործման պրոբլեմն է։ «Կոմունիս-
տական շինարարության շահերը, առաջացած դժվարությունների հաղթահար-
ման անհրաժեշտությունը,— նշվում էր ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար
ընկ. Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ,— պահանջում էին ոչ թե առանձին մաս-
նակի ուղղումներ, այլ միջոցների մի ամբողջ սիստեմ, որոնք ապահովեին
երկրում ստեղծված վիթխարի արտադրողական ուժերի առավել ռացիոնալ
օգտագործում, ժողովրդական բարեկեցության ավելի արագ աճ, մեր հասա-
րակարգի առավելությունների լիակատար բացահայտում»[1]։

Հետևաբար, ոչ միայն նոր արտադրողական ուժերի ստեղծումը, այլև ար-
դեն իսկ ունեցած արտադրողական ուժերի ավելի շահավետ օգտագործումը
դրանց զարգացման, սոցիալիզմի առաջադիմության կարևորագույն պայ-
մանն է։

Կյանքը ցույց է տվել, որ արտադրողական ուժերի իսկական մակարդակը
որոշվում է ոչ թե արտադրության միջոցների ու կադրերի քանակով և որակով,
այլ դրանց օգտագործման գործակցով։ Այդ պատճառով էլ ամբողջ հասարա-
կական տնտեսության հաճախ անխուսափելի թվացող արտադրական կարո-
ղությունը հանդիսանում է սոսկ պոտենցիալ հնարավորություն, այլ ոչ թե
նյութական բարիքների համապատասխան քանակական և որակական համար-
ժեքով արտահայտված ռեալ իրականություն։ Այլ կերպ ասած, օրինակ, մեր
գյուղատնտեսության զարգացման մակարդակը, նրա արտադրողական ուժերի
կարողությունն արտահայտվում է ոչ թե գյուղատնտեսական միլիոնավոր
մեքենաներով ու գործիքներով, երկու հարյուր միլիոնից ավելի հեկտար ցան-
քադաշտերով, տասնյակ միլիոնավոր մթերատու անասունների գլխաքանա-
կով, այլ իրական արտադրանքի ծավալով, արտադրության այդ միջոցների
արտադրողականության աստիճանով։ Եվ եթե մենք արտադրողական ուժերի
օգտագործման գործակցի չափանիշը համադրենք նրանց կոմպլեքսին գյու-
ղատնտեսությունում, ապա նրանց զարգացման իրական մակարդակը շատ
ավելի ցածր կստացվի իրենց հնարավոր և անխուսափելի թվացող մակարդա-
կից։ Ուստի սոցիալիստական արտադրահարաբերությունների կոնկրետ կազ-
մակերպման կատարելագործումը մեր երկրում ընթանում է այնպիսի հունով,
որն առաջին հերթին կհասցնի նրան, որ յուրաքանչյուր աշխատողի և արտա-
դրական կոլեկտիվի համար կստեղծվի ակտիվ նյութական շահագրգռվածու-

---

[1] «Правда», 30 մարտի, 1966 թ.։

թյուն արտադրության բոլոր միջոցներն առավել շահավետությամբ օգտագործելու բնագավառում: Միայն այն դեպքում, երբ ապահովվի յուրաքանչյուրի և բոլորի նյութական շահագրգռվածությունն արտադրության աճման գործում, կարելի է ապահովել դրա անշեղ վերելքը, արտադրողական ուժերի պրոգրեսը: Միայն այդ պայմանի առկայության դեպքում կարող են արդյունքի հասնել պլանավորման ու կառավարման սիստեմում տեղի ունեցող մյուս բոլոր փոփոխությունները:

Բոլոր փոփոխությունների շարքում կարևորագույնը ձեռնարկությունների օպերատիվ-տնտեսական ինքնուրույնության ընդարձակումն է: Պետական սոցիալիստական ձեռնարկությունների կոլեկտիվները լայն իրավունքներ են ստանում արտադրության միջոցների տնօրինման գործում: Դա տեղի է ունենում վերադաս մարմինների կողմից հաստատվող պլանային ցուցանիշները շեշտակիորեն կրճատելու միջոցով: Ձեռնարկությունների համար վերադասը միայն պետք է հաստատի՝ արտադրանքի իրացման ծավալը, նրա հիմնական նոմենկլատուրան, աշխատավարձի ֆոնդը, շահույթի և եկամտաբերության գումարը, վճարումները բյուջեին և հատկացումները բյուջեից: Ընդհանուր պետական պլանով նաև սահմանվում են՝ կենտրոնացված կապիտալ ներդրումների ծավալը և արտադրական կարողությունների ու հիմնական ֆոնդերի գործադրումը. նոր տեխնիկայի ներդրման գծով հիմնական առաջադրանքները. նյութա-տեխնիկական մատակարարման ցուցանիշները: Ձեռնարկությունը ինքնուրույնաբար պլանավորում է արտադրության ծավալը, սպառողների կամ վաճառահանող ու առևտրական կազմակերպությունների հետ ուղղակի կապերի մանրամասն նոմենկլատուրան և ասորտիմենտը: Ձեռնարկության ինքնուրույն կարևորագույն ֆունկցիան կդառնան արտադրության կատարելագործման միջոցառումները, հնացած սարքավորման փոխարինումը, նոր տեխնոլոգիական պրոցեսների արմատավորումը և այլն:

Բոլոր ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, սովխոզների լիակատար տնտեսական հաշվարկը դարձել է տնտեսական հարաբերությունների կարևորագույն սկզբունքը:

Կոոպերատիվ տնտեսություններում այդ բոլոր տնտեսական իրավունքները արդեն գոյություն ունեին՝ որպես նրանց կազմակերպման բուն իսկ կոոպերատիվ ձևին հատուկ երևույթներ: Սակայն այդ իրավունքները, մի կողմից, հաճախ կոպիտ կերպով խախտվում էին, մյուս կողմից՝ դրանց սահմանները մեծ չափով լայնացել են:

Տնտեսական հարաբերությունների ամբողջ բարեփոխման առանցքը, թերևս, ապրանքա-դրամական հարաբերությունների ընդլայնումն է փոխանակության ու բաշխման ոլորտում: Ձեռնարկության գործունեության պլանավորումը արտադրանքի իրացման համար, նրա գործունեության գնահատականը ելնելով եկամտաբերությունից և շահութաբերությունից, այն բանի անտարակույս վկայությունն են, որ համապարփակ կերպով ընդլայնվում են ամբողջ երկրի հասարակական տնտեսական օրգանիզմի բոլոր տնտեսական բջիջների ապրանքա-դրամական հարաբերությունները: Եվ բանն այստեղ ամենևին էլ այն չէ, որ գոյություն ունեն սոցիալիստական սեփականության երկու ձևեր, այլ այն, որ միայն ապրանքա-դրամական հարաբերություններն են հնարավորություն տալիս համարժեքայնության սկզբունքով կարգավորելու արտադրողների արտադրանքի փոխանակությունը՝ արժեքի օրենքի հիման վրա: Այժմ



ապրանքներ են դառնում բոլոր տեսակի տնտեսությունների արտադրած արտադրանքների բոլոր տեսակները: Առավել կարևոր է, որ պետական ձեռնարկությունների արտադրության միջոցները՝ հաստոցները, մեքենաները, սարքավորումը ևս դառնում են ապրանքներ: Հիմա դրանք վաճառվում և գնվում են այնպես, ինչպես և մյուս բոլոր ապրանքները: Հիմնական ֆոնդերի և շրջանառու միջոցների համար վճարումը հսկայական խթանիչ դեր կկատարի արտադրության միջոցներն ավելի լավ օգտագործելու, նորագույն տեխնիկա արմատավորելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու և այլնի ուղղությամբ ձեռնարկությունների շահագրգռվածությունը բարձրացնելու գործում:

Ապրանքա-դրամական հարաբերություններն ու ձևերը նույնպես դառնում են միակը բաշխման ոլորտում: Բոլորովին վերջերս բոլոր կոլտնտեսություններում աշխատանքի վարձատրությունը բնամթերային ձևից փոխադրված է դրամական ձևի:

Աշխատանքի վարձատրությունը հասարակական արտադրության ամենավճռական լծակներից մեկն է: Նրա ձևը, համամասնությունը, բաժինը վերջին հաշվով որոշում են արտադրանքի թե՛ քանակի, թե՛ որակի բախտը: Բայց աշխատանքի վարձատրության ձևը միևնույն ժամանակ հանդիսանում է հասարակության տնտեսական հարաբերությունների, տվյալ դեպքում սոցիալիստական տնտեսական հարաբերությունների այս կամ այն չափի հասունության բնութագրությունը: Աշխատավորն արդյոք միայն աշխատավարձ և որոշակի պարգևնե՞ր է ստանում, թե՞, դրանից բացի, նաև այս կամ այն ձևով «մասնակցում է» ձեռնարկության շահույթներին. սրանք երկու տարբեր ուղենիշեր են սոցիալիզմի բաշխման հարաբերությունների զարգացման գործում: Դրանք աշխատավորների ակտիվ, ստեղծագործական արտադրական գործունեությունը ծավալելու՝ միանգամայն տարբեր կերպ իրականացված, նյութական խթաններ են: Եթե աշխատանքի վարձատրությունը դառնա ձեռնարկության լավագույն գործունեության ֆունկցիա, ապա այդ ուղենիշերը օբյեկտիվ անհրաժեշտությամբ կդառնան յուրաքանչյուր աշխատավորի նյութական բարեկեցության կորագծի օրդինատն ու աբսցիսը: Եթե շահույթի մի մասը հատկացվի աշխատողների խրախուսման, բնակարանային շինարարության, կուլտկենցաղային հիմնարկների, հանգստի կազմակերպման, ուսուցման, բուժման և նման այլ ֆոնդերին, ապա դժվար է պատկերացնել մի կոլեկտիվ, որը չձգտի իր ձեռնարկության շահութաբերության աճմանը: Ճիշտ այդպես էլ արտադրանքի որակի, նրա նոր տեսակների յուրացման, նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի արմատավորման հաշվին նյութական խրախուսանքի մեծացումը չի կարող նույն արդյունքին չհասցնել: Բաշխման հարաբերություններում էական առաջադիմություն է նաև անհատական աշխատանքի ըստ քանակի և որակի վարձատրությունն աշխատավարձի ֆոնդի շրջանակներում փոփոխելու ձեռնարկությունների իրավունքը:

Արտադրության կոլտնտեսային-կոոպերատիվ սեկտորում գնալով ավելի է ուժեղանում արտադրության արտադրանքը լիովին ինքնուրույնաբար բաշխելու սկզբունքը: Հայտնի է, որ արդեն շատ տարիներ կոլտնտեսությունները միայն վաճառում են պետությանը, այլ ոչ թե անհատույց են տալիս, որ պետությանը վաճառվող մթերքների համեմատ կոլտնտեսականների միջև բաշխվող մթերքների առավելության տենդենցը աստիճանաբար դառնում է նրանց գործունեու-

թյունը պլանավորելու հիմքը։ Կենսաթոշակներ, պահանջմունքների բավարարման հասարակական ֆոնդեր մտցնելը կատարելագործում են բաշխումը կոլտնտեսություններում։



Այդ բոլոր վերափոխությունները օբյեկտիվ անհրաժեշտությամբ աշխատավորների և արտադրական կոլեկտիվների նյութական բարեկեցությունը կախման մեջ են դնում նրանց աշխատանքային ակտիվության աստիճանից։ Որքան բարձր են պլանային պարտավորությունները, որքան բարձր է աշխատանքի արտադրողականությունը, որքան բարձր է արտադրանքի որակը, հաջող է նրա իրացումը, այնքան ավելի բարձր է ձեռնարկության շահույթը, այնքան ավելի են աշխատավորների եկամուտները ինչպես անհատական աշխատավարձի, պարգևատրումների ձևով, այնպես էլ հասարակական ֆոնդերի միջոցով։

Բայց բոլոր դեպքերում արտադրության աճին հասնել կարելի է միայն արտադրության միջոցների շահավետ օգտագործումով, տեխնիկայի և տեխնոլոգիայի առաջադիմությամբ աշխատանքն ինտենսիվացնելով։ Հետևաբար, տնտեսական հարաբերությունների նոր սիստեմը օբյեկտիվ անխուսափելիությամբ առաջացնում է աշխատավորների և ձեռնարկությունների կոլեկտիվների նյութական շահագրգռվածությունը արտադրության մատնանշված գործոնները զարգացնելու ասպարեզում։ Ձեռնարկությունների անցած տարվա գործունեությունը նոր սիստեմով արդեն ապացուցում է դրա կենսականությունն ու առաջադիմականությունը։ Այն 43 ձեռնարկությունները, որոնք արդեն տարվա սկզբից աշխատել են նոր սիստեմով, զգալիորեն ավելացրել են իրացման և շահույթի գծով իրենց կողմից նախապես սահմանված պլանները և հաջողությամբ կենսագործում են այդպիսիք։ Այդ ձեռնարկությունները կատարել ու գերակատարել են իրենց առաջադրանքները աշխատանքի արտադրողականության աճի, արտադրանքի որակի բարձրացման գծով։ Ընդ որում կարևոր է նշել, որ հիմնական միջոցների օգտագործման շահավետությունը, աշխատանքի արտադրողականության աճի տեմպերը այստեղ ավելի բարձր են, քան ամբողջությամբ վերցրած արդյունաբերությունում։

Մեր հանրապետության ձեռնարկությունները նույնպես պատրաստվում են անցնելու տնտեսավարման նոր սկզբունքներին։ Մոտ է այն ժամանակը, երբ նոր տնտեսական սիստեմը, որն իրենով արտահայտում է սոցիալիզմի արտադրական հարաբերությունների զարգացման նոր փուլը, կդառնա համայնապարփակ։ Սոցիալիստական արտադրահարաբերությունները ամբողջ խորությամբ և հզորությամբ կդրսևորեն իրենց՝ որպես արտադրողական ուժերի բուռն զարգացման ձև, որպես նրանց էությունը, լայն ասպարեզ բացելով կոմունիզմի շինարարության բնագավառում աշխատավոր մասսաների ստեղծագործական գործունեության համար։



Մ. ՄԵԼԻՔՅԱՆ

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱԶԳԵՐԻ ԿԱԶՄԱՎՈՐՄԱՆ ԷՎՈԼՅՈՒՑԻԱՆ

ԲԱՆՎՈՐ դասակարգի և գյուղացիության՝ այդ երկու հիմնական աշխատավոր դասակարգերի դաշինքը այն հիմքն է, որը պրոլետարիատի դիկտատուրայի և սոցիալիստական արտադրական հարաբերությունների պայմաններում ապահովում է ազգերի սոցիալական կազմի արմատական վերափոխությունը, առաջին անգամ պատմության մեջ ազգերը դարձնում սոցիալ-քաղաքական ու տնտեսական միասնական շահերով զոդված աշխատավորական հանրություններ։

Նախասոցիալիստական հասարակարգերում ազգի սոցիալական միասնությունն ընդհանրապես անհնարին է, որովհետև ազգը մասնատված է շահագործող և շահագործվող դասակարգերի, որոնց սոցիալ-քաղաքական ու տնտեսական շահերը հակադիր են։ Այդպիսի ազգերի ներսում հնարավոր է իրենց սոցիալական վիճակով մոտ դասակարգերի կամ խմբերի միասնություն՝ պատմական զարգացման այս կամ այն փուլում, այս կամ այն խոշոր սոցիալական խնդիրների լուծման ժամանակ։ Այսպես, օրինակ, բուրժուական հեղափոխությունների պրոցեսում ֆեոդալիզմի, ֆեոդալական ազնվականության ու եկեղեցու դեմ միավորվում են բուրժուաները, մանր արտադրողները և բանվորները, բուրժուական կարգի պայմաններում կապիտալի դեմ մղվող պայքարում միավորվում են բանվորներն ու աշխատավոր գյուղացիները, այդ պայքարի ընթացքում որոշակի պայմաններում ստեղծվում է միասնական ազգային ճակատ, որն ընդգրկում է ազգի հետադիմական մասի (իմպերիալիստական վերնախավի, ֆաշիստական խմբերի) դեմ պայքարող բոլոր առաջադիմական ուժերին՝ բանվորներին, գիտակից գյուղացիներին, արհեստավորներին և նույնիսկ բուրժուական մտավորականության ու բուն բուրժուազիայի որոշ խավերին։

Օտարազգի ճնշման տակ գտնվող կամ նվաճողների դեմ պայքարող ազգերի մոտ որոշ պայմաններում հնարավոր է ազգի բոլոր դասակարգերի ու խավերի ժամանակավոր քաղաքական (ո՛չ տնտեսական և ո՛չ սոցիալական) համախմբում։ Սակայն այդ միասնությունն էլ լիակատար չէ, որովհետև ճնշված ազգի շահագործող դասակարգերի մի մասը միշտ էլ լեզու է գտնում տիրապետող ազգի շահագործողների հետ, համագործակցում նրանց հետ,

գործում ի վնաս սեփական ազգի։ Դասակարգային, սեփականատիրական շահերը միշտ էլ վեր են կանգնած ազգային շահերից։ Այսպես, օրինակ, պարսկական նվաճողների դեմ 5-րդ դարում հայ ժողովրդի մղած պայքարի ժամանակ ազնվականության մի մասը (այսպես կոչված վասակյանները) անցավ նվաճողների կողմը կամ 2-րդ համաշխարհային պատերազմի ժամանակ, երբ ԱՄՆ-ը պատերազմի մեջ էր գտնվում ֆաշիստական Գերմանիայի դեմ, ամերիկյան կապիտալիստների մի խումբ գաղտնի համագործակցում էր ֆաշիստների հետ, նրան մատակարարում ստրատեգիական հումք։ Վասակյաններ, կոլաբորացիոնիստներ, հինգերորդ շարասյուն և այլ նման արտահայտությունները հենց վկայում են այդպիսի ուժերի առկայության և բուրժուական ազգերի իսկական, թեկուզև քաղաքական, միասնության անհնարինության մասին։

Այսպիսով, նախասոցիալիստական ազգերը միասնական լինել չեն կարող, որովհետև ներքուստ պառակտված են, երկճեղքված են հակադիր դասակարգերի, որոնք սուր դասակարգային պայքարի մեջ են։ Այդպիսին էին ազգերը նաև ցարական Ռուսաստանի կազմում։ 1897 թ. մարդահամարի տվյալների համաձայն ցարական Ռուսաստանի դասային կազմը՝ տոկոսային հարաբերությամբ, հետևյալ պատկերն ուներ.

Ժառանգական ազնվականներ՝ 0,97, անձնական ազնվականներ և աստիճանավորներ՝ 0,50, հոգևոր կոչում ունեցողներ՝ 0,47, ժառանգական և անձնական պատվավոր քաղաքացիներ՝ 0,27, վաճառականներ՝ 0,22, մեշչաններ՝ 10,66, գյուղացիներ՝ 77,12, կազակներ՝ 2,33, այլածիններ՝ 6,61, օտարահպատակներ՝ 0,48 տոկոս (տվյալները վերցված են պաշտոնական հրատարակությունից. Общий свод по империи результатов разработки данных первой всеобщей переписки населения, произведенной 28 января 1897 года. СПБ, 1905, т. 1, стр XIII)։

Թեև այս տվյալները ճիշտ չեն սահմանազատում դասակարգերը, որովհետև բանվորներին ու կապիտալիստներին հաշվառում են ընդհանուր «մեշչաններ» խմբի մեջ, գյուղական կուլակներին համարում պարզապես գյուղացիներ, իսկ բնակչության մի քանի խմբերի բնութագրում ոչ թե ըստ սոցիալական վիճակի, այլ ըստ ծագման (ազնվականներ, այլածիններ և այլն), բայց և այնպես դրանք ցույց են տալիս, որ հասարակության արտոնյալ դասերը (առաջին 5 խմբերը), որոնց ձեռքումն էր գտնվում երկրի ղեկավարությունը, կազմում էին ամբողջ բնակչության միայն 2,5 տոկոսը կամ 1/40 մասը։

Անտարակույս հաջորդ քսանամյակը՝ մինչև հեղափոխությունը (1897—1917 թթ.), արդյունաբերության զարգացման և գյուղի շերտավորման հետևանքով հանգեցրել է սոցիալական կազմի որոշակի փոփոխության, դրա համար էլ 1913 թ. տվյալներով ցարական Ռուսաստանի դասակարգային կառուցվածքը արդեն հետևյալ հարաբերությունն է ունեցել.

Բանվորներ և ծառայողներ՝ 17 տոկոս, մենատնտես գյուղացիներ և արհեստավորներ՝ 66,7 տոկոս, բուրժուազիան, կալվածատերերը, վաճառականները և գյուղական հարուստները (կուլակները)՝ 16,3 տոկոս (տե՛ս ЦСУ СССР, Народное хозяйство СССР в 1963 г., стр. 28)։

Այս տվյալները ցույց են տալիս դասակարգային խմբերի իրական հարաբերակցությունը. աշխատավոր դասակարգերն ու խավերը կազմել են ամբողջ բնակչության 5/6 մասը (83,7 տոկոս), իսկ բոլոր տեսակի մանր ու խոշոր շահագործողները՝ 1/6 մասը (16,3 տոկոս)։ Անկասկած, սա ընդհանուր պատ-



կերն է ամբողջ կայսրության համար և նրա կազմում գտնվող ազգերը, անհավասար լինելով տնտեսական ու կուլտուրական զարգացման տեսակետից, տարբեր են եղել նաև սոցիալական կառուցվածքով։

Կայսրության կենտրոնական և արևմտյան մասում ապրող ազգությունների մոտ (ռուսներ, լեհեր, ուկրաինացիներ, ֆիններ և այլն) ուժեղ էր կապիտալիստական դասակարգային շերտավորումը, կազմավորված էին ժամանակակից ազգային բուրժուազիան ու պրոլետարիատը, բայց դրա հետ միասին կային ֆեոդալիզմի լուրջ մնացուկներ։ Կովկասում նույնպես սկսվել էր կապիտալիստական շերտավորում, թեև դա տարբեր ազգերի մոտ անհավասարաչափ էր, իսկ միջինասիական ազգությունների մոտ ազգային բուրժուազիան և պրոլետարիատը դեռ նոր էին սկսում սաղմնավորվել։ Ռուսական բուրժուազիան այս կամ այն չափով տարածված էր կայսրության բոլոր մասերում։ Միաժամանակ ծայրամասերում արդյունաբերական պրոլետարիատի զգալի մասն էին կազմում ռուս բանվորները։ Միջին Ասիայի, ինչպես և մասամբ Կովկասի ու մյուս ազգային ծայրամասերի արդյունաբերական կենտրոնների հիմնական բնակչությունը ռուսներ էին, իսկ բանվորության կազմը ինտերնացիոնալ էր։

Արդյունաբերության մեջ զգալի դեր էր խաղում օտարերկրյա (ֆրանսիական, բելգիական, գերմանական) բուրժուազիան։ Զգալի չափով պահպանվել էին դասային արտոնությունները և դասային կոչումները (տարբեր տեսակի ազնվականներ, պատվավոր քաղաքացիներ, գիլդիաների վաճառականներ և այլն)։

Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությունից հետո ազգերի ներքին սոցիալական պառակտումն ավելի ակնհայտ դարձավ։ Իշխանությունից և նյութական հարստություններից զրկված շահագործող դասակարգերն ու խավերը՝ կապիտալիստները, կալվածատերերը, ազնվականները, կուլակները, խոշոր առևտրականները, զենք վերցնելով, քաղաքացիական պատերազմ սկսեցին ազգերի հաղթանակած մեծամասնության՝ բանվորների և աշխատավոր գյուղացիության դեմ։ Նրանց ռազմական օգնության եկան արտասահմանյան կապիտալիստների և կալվածատերերի զինված բանակները, որոնք ներխուժելով Ռուսաստան և նրա նախկին ծայրամասերը, փորձեցին վերականգնել տապալված կարգերը, իսկ այդ երկրների բանվորները օգնության ձեռք մեկնեցին Ռուսաստանի աշխատավոր զանգվածներին։ Այսպիսով, հեղափոխությունն ակնհայտ դարձրեց ու ավելի խորացրեց ամբողջ աշխարհի ազգերի դասակարգային պառակտումը, ցույց տվեց, որ կապիտալիզմի ժամանակ ազգային դասակարգային միասնությունը լոկ պատրանք է։

Ներքին հակահեղափոխության և օտարերկրյա ներխուժողների ռազմական ջախջախումը միաժամանակ նաև խոշոր բուրժուազիայի և կալվածատիրության՝ որպես հասարակական դասակարգերի վերացումն էր։ Սակայն դա հասարակության մեջ դեռևս բոլոր շահագործող տարրերի վերացումը չէր, որովհետև, մի կողմից, պահպանվեցին մանր շահագործողները (նէպմանները, կուլակները), մյուս կողմից դեռևս պահպանվում էր շահագործողներ ծնող բազան՝ մանր ապրանքային արտադրությունը։

Տնտեսության սոցիալիստական վերակառուցումը հանգեցրեց հասարակության դասակարգային կազմի արմատական փոփոխության և վերափոխեց հասարակական դասակարգերի ու խավերի բնույթը, նրանց փոխհարաբերու-

թյունները։ Արտադրության բոլոր հիմնական միջոցների վերածումը համա-
ժողովրդական-պետական սեփականության վերացրեց ոչ միայն խոշոր, այլև
միջին ու մանր կապիտալիստների գոյության հնարավորությունը և բանվոր
դասակարգին վարձու աշխատողներից վերածեց համաժողովրդական-պետա-
կան համակարգի աշխատողների։ Բանվոր դասակարգը, այսպիսով, դարձավ
արտադրության միջոցների տերն ու արտադրությունը կառավարող դասա-
կարգը։

Գյուղատնտեսության մեջ արտադրության համայնացման հետևանքով
հաղթահարվեց մանր ապրանքային տնտեսությունը և գյուղացիության շեր-
տավորման պրոցեսը, գյուղացիները մասնավոր տնտեսատերերից վերածվե-
ցին կոլեկտիվ տնտեսատերերի։

Դասակարգային կառուցվածքի այդ փոփոխությունները սոցիալիստական
ազգերի ներսում ընթացան դասակարգային սուր պայքարի պայմաններում,
որի ձևերը ժամանակին ի հայտ բերեց ու պարզաբանեց Վ. Ի. Լենինը։

Այդ փոփոխությունները հիմք հանդիսացան հասարակության բոլոր մնա-
ցած խավերի ու սոցիալական խմբերի փոփոխության համար։ Մասնավոր
սեփականության ու մանր ապրանքային արտադրության վերացումը անհնա-
րին դարձրեց ոչ միայն կապիտալիստների ու կալվածատերերի, դրամատե-
րերի ու վաճառականների, այլև նրանցից կախված ու նրանցից դուրս եկող
տնտեսական ու քաղաքական կառավարչական-վարչական գործունեությամբ
զբաղվող խավի ու մտավորականության գոյությունը։ Դրանց փոխարինելու
եկան նոր, աշխատավոր դասակարգերի ծոցից ելած ու իրենց բնույթով աշ-
խատավորական մտավորականությունն ու վարչական խավը[1]։

Հասարակության սոցիալական կազմի փոփոխության մեջ կարևոր տեղ է
գրավում նաև բնակչության տեղաբաշխման մեջ կատարվող փոփոխությունը,
որն արտահայտվում է քաղաքային բնակչության տեսակարար կշռի խիստ
աճով։ Դրա հետ միասին փոփոխվում է նաև բնակչության բաժանվածությունն
ըստ զբաղմունքի, այսինքն՝ կատարվում է աշխատանքի հասարակական բա-
ժանման փոփոխություն, որը դրսևորվում է, նախ, բանվորների ու ծառայող-
ների տեսակարար կշռի մեծացման, այնուհետև, արտադրության բոլոր բնա-
գավառներում զբաղմունքի (մասնագիտացումների) նոր տեսակների առա-
ջացման, բոլոր տեսակի զբաղմունքների տեխնիկական ու տեսական մակար-
դակի բարձրացման, արտադրական աշխատանքի մեջ մտավոր գործունեու-
թյան տեսակարար կշռի ավելացման, բուն մտավոր աշխատանքով զբաղ-
վողների թվի զգալի աճման և նշված պրոցեսների հիման վրա մտավոր ու
ֆիզիկական աշխատանքի անշեղ մերձեցման մեջ։

Սոցիալիզմի կառուցման ընթացքում ՍՍՀՄ բնակչության դասակարգային

---

1 Դյուլա Կալային այդ խավն անվանում է «որոշակի պաշտոններ զբաղեցնող մտավորա-
կանության ներկայացուցիչներ, որոնք վերագրվում են ծառայողների կատեգորիային» (տե՛ս
«Проблемы мира и социализма», 1965, № 10, էջ 8)։ ՍՍՀՄ-ում անցկացվող զանազան տե-
սակի հաշվառումների ժամանակ այդ վարչական աշխատողները իրենց սոցիալական վիճակով
հաճախ վերագրվում են այն դասակարգերին ու խավերին, որոնցից նրանք առաջ են քաշվում
վարչական աշխատանքի (բանվորներ, գյուղացիներ, ծառայողներ)։ Մեր կարծիքով վարչական
աշխատողներին պետք է բաժանել երկու խմբի. ընտրովի աշխատողներ, որոնք վերադառնում են
իրենց նախկին աշխատանքին և պրոֆեսիոնալ վարչական աշխատողներ, որոնք կազմում են
ծառայողների հատուկ խումբ։



կառուցվածքի փոփոխությունը բնութագրվում է, նախ, նրանով, որ լիովին
վերացել են ամեն տեսակի շահագործողները՝ կապիտալիստները, կալվածա-
տերերը, վաճառականներն ու կուլակները, որոնք դեռևս 1926 թ. կազմում էին
բնակչության 8,5 տոկոսը, խիստ մեծացել է բանվորների և ծառայողների
տեսակարար կշիռը (1926 թ. 14,8, իսկ 1965 թ. 75, 1 տոկոս). մենատնտես
գյուղացիների դասակարգը (1926 թ. 75,40 տոկոս) փոխարինվել է կոլտնտե-
սային գյուղացիությամբ (1965 թ. բնակչության 24,8 տոկոսը)։ Միաժամանակ
խիստ աճել է մտավոր աշխատողների տեսակարար կշիռը. 1965 թ. նրանց
թիվը հասել է 25 մլն. մարդու (զբաղմունք ունեցող բնակչության մեկ հինգե-
րորդ մասը։ Տես՝ Народное хозяйство СССР в 1963 г., стр. 28, և Народное
хозяйство СССР в 1964 г., стр. 33)։

Հասարակության սոցիալական փոփոխության բնորոշ կողմերից մեկն էլ
սոցիալիզմի ժամանակ լայն զանգվածների ներգրավումն է պետական և հա-
սարակական-քաղաքական գործունեության մեջ։ Սովետական Միության մեջ
այժմ մոտ երկու միլիոն մարդ պետական զանազան օրգանների՝ տեղական և
ավելի բարձր սովետների պատգամավորներ են, այսինքն՝ անվճար մասնակ-
ցում են հասարակության կառավարման գործին։ Մի քանի միլիոն մարդ մաս-
նակցում են սովետների տարբեր հանձնաժողովների աշխատանքներին։ Ավե-
լի քան 12 միլիոն մարդ կոմունիստական կուսակցության անդամներ են, մի
քանի տասնյակ միլիոն մարդ՝ կոմերիտականներ, համարյա բոլոր աշխատա-
վորները արհմիության անդամներ են, միլիոնավոր մարդիկ զանազան գիտա-
տեխնիկական և այլ կամավոր ընկերությունների աշխատանքների մասնակից-
ներ են։

Սա Սովետական Միության ամբողջ բնակչության սոցիալական կառուց-
վածքի ընդհանրական փոփոխություններն են, որոնք պայմանավորված են
սոցիալիզմի կառուցումով և բանվոր դասակարգի ու գյուղացիության դաշին-
քով։ Այդ փոփոխությունները միասնական սոցիալական հիմք են ստեղծում
սովետական ամբողջ հասարակության, Սովետական Միության կազմում միա-
վորված բոլոր ազգությունների համար։

ՍՍՀՄ-ում և սոցիալիզմի համակարգի բոլոր երկրներում կատարված այս
կարգի վերափոխությունների շնորհիվ ազգերը վերածվել են սոցիալիստական
բնույթ կրող հանրությունների և պատմության մեջ առաջին անգամ դարձել
սոցիալապես համախմբված ու միասնական։ Մեր գրականության մեջ ան-
ցյալում այդ հանգամանքը բնութագրվում էր որպես ազգերի ավելի «համա-
ժողովրդական» դառնալ[1]։

Անտարակույս է նաև, որ ամբողջ Միության մասշտաբով բնակչության
սոցիալական միասնության ստեղծումը չի նշանակում ազգային ընդհանրու-
թյունների վերացում և ոչ էլ նույնիսկ նրանց նսեմացում, այլ նշանակում է
հենց Միության մեջ մտնող ազգային բոլոր ընդհանրությունների սոցիալական

---

1 Ի. Վ. Ստալինը մասնավորապես նշում էր, որ սոցիալիստական ազգերը «անհամեմատ
ավելի համախմբված են, քան ամեն մի բուրժուական ազգ, որովհետև նրանք զերծ են բուր-
ժուական ազգերին մաշող անհաշտելի դասակարգային հակասություններից և անհամեմատ
ավելի համաժողովրդական են, քան որևէ բուրժուական ազգ» (Երկեր, հ. 11, էջ 387)։ Անկաս-
կած, ըստ իմաստի սա ճիշտ է, սակայն «համաժողովրդական» արտահայտությունը տեղին չէ,
որովհետև ազգը հենց տվյալ ժողովուրդն է և նա չի կարող լինել «ավելի» կամ «պակաս» հա-
մաժողովրդական։

բնույթի փոփոխություն և նրանց միջև գոյություն ունեցող սոցիալական ան-
հավասարության հաղթահարում:

Ազգերի սոցիալական հավասարության հաստատումն իր մեջ ներառնում
է հետևյալ կողմերը.

ա) **Ազգերի քաղաքական հավասարություն**: Դա նշանակում է, որ սոցիա-
լիստական ազգերը հավասար իրավունքներ ու մասնակցություն ունեն քաղա-
քական-պետական կյանքի բոլոր բնագավառներում, որ նրանք այլևս չեն բա-
ժանվում ճնշող ու ճնշվող, տիրող ու ենթարկվող ազգերի, ինչպես կապիտա-
լիզմի ժամանակ, որ լիովին վերանում են այս կամ այն ազգի արտոնություն-
ներն ու մյուսների սահմանափակումները, որ նրանք բոլորը, այս կամ այն
ձևով, ձեռք են բերում ազգային պետականություն: Դա նշանակում է, այնու-
հետև, որ տվյալ ազգի պետական-քաղաքական, տնտեսական և մշակութային
կյանքը ղեկավարում են տվյալ ազգի ներկայացուցիչները և որ նրանք հա-
վասարապես մասնակցում են ամբողջ Միության կառավարմանը:

Դա կարևոր հանգամանք է, որովհետև սոցիալիստական կարգերի հաս-
տատումից առաջ ՍՍՀՄ կազմի մեջ այժմ մտնող ազգությունների պետական
կյանքը կառավարում էին երկրում իշխող ազգի ներկայացուցիչները: Իսկ
այժմ հանրապետական բոլոր օրգանների ղեկավարները գերազանցապես
տվյալ հանրապետության մեջ ապրող ազգությունների ներկայացուցիչներն են:
Դրանցից բացի, նրանք հավասարապես մասնակցում են միութենական կառա-
վարման օրգանների աշխատանքին և՛ որպես բարձրագույն պետական մարմ-
նի՝ ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատներ, և՛ որպես միութենական պե-
տական ապարատի պաշտոնյաներ: Այսպես, օրինակ՝
ա) ՍՍՀՄ Գերագույն սովետի կազմում գոյություն ունի **Ազգությունների**
**սովետ, որտեղ հավասար թվով ներկայացուցիչներ են ընտրվում բոլոր միու-**
**թենական հանրապետությունների կողմից**, իսկ երկրի բարձրագույն քաղաքա-
կան օրգանի՝ Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտ-
րոնական կոմիտեի կազմում ընտրվում են համարյա բոլոր **ազգությունների**
**ներկայացուցիչները**:

բ) **Ազգերի տնտեսական զարգացման հավասարություն**: Դա նշանակում
է, որ հաղթահարվում է նրանց տնտեսական զարգացման աստիճանների
տարբերությունը, նրանք բոլոր էլ անցնում են սոցիալիստական հարաբերու-
թյունների և աստիճանաբար հաղթահարվում են նաև նրանց զարգացման մա-
կարդակների միջև եղած տարբերությունները: Այս հարցը հատուկ հետազո-
տության նյութ է:

գ) **Ազգերի ներքին սոցիալական կառուցվածքի հավասարություն**: Դա
նշանակում է, որ հաղթահարվել են ազգերի սոցիալական կազմերի նախկի-
նում եղած աղաղակող տարբերությունները: Նախկինում ծայրամասային ազ-
գությունները, մասնավորապես Միջին Ասիայում, համարյա չունեին ազգային
բանվոր դասակարգ, ազգային մտավորականություն, նրանց քաղաքները բնա-
կեցվում էին գերազանցապես տիրող ազգի ներկայացուցիչներով և չունեին
ազգային բնույթ:

Կոմունիստական կուսակցության և սովետական պետության լենինյան
ազգային քաղաքականության իրականացման շնորհիվ Սովետական Միու-
թյան բոլոր միութենական հանրապետություններում կազմավորվեցին ու աճե-
ցին ազգային բանվոր դասակարգ ու մտավորականություն: Ընդ որում անհրա-



ժեշտ է նշել, որ դա հնարավոր եղավ հիմնականում ռուս բանվոր դասակար-
գի և հեղափոխական մտավորականության **ուղղակի օգնության** շնորհիվ.
նրանք էին, որ նախկինում հետ մնացած հանրապետություններում կրթեցին
ու աճեցրին արդյունաբերության ու մտավոր գործունեության ազգային կադրեր:

1926 և 1959 թթ. մարդահամարների տվյալների համեմատությունից
ակնհայտ է, որ ինժեներա-տեխնիկական աշխատողների, որակյալ բանվոր-
ների և մտավորականության աճի տեմպերը նախկինում հետ մնացած հանրա-
պետություններում ավելի բարձր են, քան Կենտրոնական Ռուսաստանում:

Այսպես, օրինակ, 1926—1959 թթ. ընթացքում մետաղագործների թիվն աճել է ՌՍՖՍՀ-ում
9,6, Ուկրաինայում՝ 6,3, Բելոռուսիայում՝ 8,9 անգամ, իսկ Հայաստանում՝ 16, Տաջիկստանում՝
24, Ղազախստանում և Կիրգիզստանում՝ 30 անգամ: Քիմիագործների թիվն աճել է ՌՍՖՍՀ-ում
7,8, Ուկրաինայում՝ 11, Բելոռուսիայում՝ 4,2 անգամ, իսկ Ադրբեջանում՝ 12, Վրաստանում՝ 20,
Ուզբեկստանում՝ 41, Թուրքմենստանում՝ 47, Հայաստանում՝ 110, Տաջիկստանում և Կիրգիզըս-
տանում՝ մի քանի հարյուր անգամ: Ինժեներա-տեխնիկական աշխատողների, գյուղատնտեսների
և անասնաբույժների թիվը նույն ժամանակաշրջանում աճել է ՌՍՖՍՀ-ում 17, Ուկրաինայում՝ 12,
Բելոռուսիայում՝ 13 անգամ, իսկ Ադրբեջանում՝ 12, Թուրքմենստանում՝ 18, Վրաստանում՝ 19,
Ուզբեկստանում՝ 24, Հայաստանում՝ 28, Ղազախստանում՝ 53, Կիրգիզստանում՝ 64 և Տա-
ջիկստանում՝ 121 անգամ: Նույնն է պատկերը նաև ուսուցիչների, բժիշկների, գիտական աշխա-
տողների աճի բնագավառում:

Բերված տվյալներից ակներև է, որ նախկինում հետ մնացած հանրապե-
տություններում տեղական որակյալ բանվորների ու մտավորականության աճը
կատարվել է մի քանի անգամ ավելի արագ ու դրա շնորհիվ նրանք հիմնա-
կանում մոտեցել են առաջավորների մակարդակին, և որ բոլոր հանրապետու-
թյուններում ստեղծվել է ժամանակակից գիտական-տեխնիկական մտավորա-
կանության մի մեծ շերտ, որը դուրս է եկել բանվորներից ու գյուղացիներից և
իր հիմնական զանգվածով կազմված է տեղական ազգությունների ներկայա-
ցուցիչներից: Այդ տեսակետից հատկանշական է, որ եթե 1925 թ. միջինա-
սիական հանրապետություններում որակյալ բանվորների և գիտատեխնիկա-
կան մտավորականության մեջ տեղական ազգությունների տոկոսը չնչին է
եղել (4-ից 14 տոկոս, օրինակ, Ղազախստանում ղազախները կազմել են մե-
տաղագործների 4,5, մեքենաշինարարների 4,7 և ծառայողների 4,2 տոկոսը,
Ուզբեկստանում ուզբեկները համապատասխանաբար 13,1, 4,3 և 11,1 տո-
կոսը), ապա այժմ նրանք մեծամասնություն են: Այժմ Սովետական Միության
բոլոր ազգերն արդեն ունեն որակյալ բանվորների, ինժեներների, բժիշկների,
ուսուցիչների, գիտնականների ազգային կադրեր:

Ազգերի սոցիալական տարբերությունների հաղթահարումը դրսևորվում է
նաև նրանում, որ համարյա բոլոր միութենական և ինքնավար հանրապետու-
թյուններում զգալի կերպով աճում է քաղաքային բնակչության մեջ հանրա-
պետությունը ներկայացնող ազգության տոկոսը: 1926—1959 թթ. ընթացքում
միութենական հանրապետությունների մեջ տեղական ազգության տոկոսը
42,9-ից հասել է 45,9, իսկ ինքնավար հանրապետություններում՝ 13,2-ից 22,5
տոկոսի: Մի շարք հանրապետություններում այդ աճը խիստ զգալի է:

Այսպես, օրինակ, Թուրքմենստանի քաղաքային բնակչության մեջ թուրքմենները 1926 թ.
կազմել են 7,5, իսկ 1959 թ.՝ արդեն 34,6 տոկոս, Վրաստանում վրացիները համապատասխանա-
բար՝ 20,6 և 52,3 տոկոս, Բելոռուսիայում բելոռուսները՝ 39,3 և 67,9 տոկոս, Չուվաշիայում
չուվաշները՝ 1,1 և 35,8 տոկոս:

Նշված ժամանակաշրջանում 24 ազգություններից տեսակարար կշռի նվազում կա միայն հինգ ազգության մոտ (ուզբեկներ, տաջիկներ, յակուտներ, կարելներ և կոմիներ), որը բացատրվում է այդ հանրապետություններում քաղաքային բնակչության բուռն աճով և այլազգի բնակչության ներգրավումով։

Օրինակ, Կոմի ԻՍՀ-ում նշված ժամանակաշրջանում քաղաքային բնակչությունն աճել է 47,5 անգամ՝ 10 հազարից հասնելով 475 հազարի, իսկ Կարելական ԻՍՀ-ում՝ 7,6 անգամ՝ 54-ից հասնելով 409 հազարի։

Ակնհայտ է, որ նշված ազգություններին պատկանող քաղաքային բնակչությունը բացարձակ թվերով զգալիորեն աճել է, թեև տեսակարար կշիռն ընդհանուր թվի մեջ պակասել է։

Այսպես, օրինակ, 1926 թ. եղել է 5286 կոմի քաղաքային բնակիչ (52,86 տոկոս), իսկ 1954 թ. արդեն 64 հազարից ավելի, բայց տոկոսային հարաբերությամբ՝ միայն 13,5 տոկոս։

Այսպիսով, ազգերի սոցիալիստական զարգացումն այս բնագավառում ևս հանգեցնում է նրանց սոցիալական վիճակների աստիճանական հավասարեցման, որը դրսևորվում է և՛ նրանում, որ բոլոր սոցիալիստական ազգերը դառնում են ժամանակակից բարձր զարգացած տնտեսության հետ կապված ազգեր, և՛ նրանում, որ նրանց բոլորի մոտ կազմավորվում է ժամանակակից գիտա-տեխնիկական մտավորականություն և կրթված ու մասնագիտացած բանվոր դասակարգ ու կոլտնտեսային գյուղացիություն, և՛ նրանում, որ հաղթահարվում է կանանց կտրվածությունը հասարակական գործունեությունից և նրանք այդ բնագավառում հավասարվում են տղամարդկանց հետ, և՛ նրանում, որ նրանց բոլորի կենցաղը, չկորցնելով ազգային ինքնատիպությունը, զարգանում, հասնում է ժամանակակից աստիճանի։

Ինչպես ցույց է տալիս պատմությունը, տարբեր ազգեր սոցիալիստական կյանքի են անցնում ո՛չ միաժամանակ և ո՛չ միատեսակ սոցիալական աստիճանների վրա գտնվելով։ ՍՍՀՄ մեջ միավորված ազգությունները սոցիալիզմի հաստատման ու կառուցման պրոցեսն անցան համարյա միաժամանակ (սոցիալիզմի հաստատման պրոցեսում եղած որոշ տարբերությունները ունեցան որոշակի, բայց ոչ վճռական նշանակություն, ինչպես դա ցույց է տրված առանձին սոցիալիստական ազգերի զարգացմանը նվիրված հետազոտություններում)։

Այդ պայմաններում կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության իրականացումը հնարավորություն տվեց պատմական կարճ ժամանակամիջոցում հիմնականում հավասարեցնել նրանց սոցիալական զարգացման աստիճանները և հիմնովին հաղթահարել այն ուժերը, որոնք կարող էին այդ ազգերին ետ տանել դեպի նախկին, նախասոցիալիստական վիճակը։ Այդ տեսակետից բնորոշ է, որ ՍՍՀՄ կազմի մեջ ավելի ուշ մտած մերձբալթյան ու մոլդավական ազգերի մոտ այդ պրոցեսներն ավարտվեցին ավելի ուշ՝ հետպատերազմյան ժամանակաշրջանում։

Սոցիալիզմի համաշխարհային համակարգի մեջ մտած մյուս երկրների սոցիալական զարգացումն այդ տեսակետից ունի որոշ յուրահատկություններ։ Նրանք համարյա բոլորը գտնվում են դեռևս սոցիալիզմի կառուցման շրջանում և սոցիալական կազմակերպման տեսակետից ունեն մի շարք առանձ-



նահատկություններ։ Նախ, շատ երկրներում դեռևս բավականին զգալի են նախասոցիալիստական մի շարք երևույթների հետքերը՝ մանր տնտեսատիրությունը դեռ լիովին չի հաղթահարված, սոցիալիստական մտավորականությունը նոր է կազմավորվում, մի շարք երկրներում (մասնավորապես ասիական սոցիալիստական երկրներում) բանվոր դասակարգը նոր է աճում գյուղացիությունից և ունի մանրբուրժուական հոգեբանության զգալի տարրեր (Չինաստան, Ալբանիա, Կորեա, Վիետնամ, Մոնղոլիա), որոնք առանձին երկրներում ազդում են նույնիսկ կառավարող կուսակցության քաղաքականության վրա։

Այդ երկրներում մինչև այժմ էլ դեռ գնում է ներքին դասակարգային պայքար, առանց որի անհնարին է շահագործող դասակարգերի ու նրանց մնացուկների լիակատար հաղթահարումը։ Այդ պայքարի սրության մասին վկայում են 1956 թ. դեպքերը Հունգարիայում, երբ ներքին հակահեղափոխությունը, միավորվելով արտաքին իմպերիալիստական ուժերի հետ, փորձեց տապալել սոցիալիստական կարգերը։ Մի շարք սոցիալիստական երկրներում դասակարգային պայքարի սրությունը պայմանավորված է նաև նրանով, որ տվյալ երկիրն ու ազգությունը պետականորեն և քաղաքականորեն մասնատված են սոցիալիստական և բուրժուական հատվածների (Կորեա, Վիետնամ, Գերմանիա, Չինաստան)։

Սրանք սոցիալիստական ազգերի կազմավորման պրոցեսի հետ կապված երևույթներ են, որոնք աստիճանաբար հաղթահարվում են նրանց՝ դեպի կոմունիզմ շարժվելու պրոցեսում։

Սոցիալիստական ազգերը ձերբազերծված են ներքին դասակարգային հակամարտություններից։ Դա էլ հենց բնորոշում է նրանց փոխհարաբերությունն իրար հետ, նրանց միջև եղած տարբերությունները սոցիալ-դասակարգային պայքարի չեն հանգեցնում և ինտերնացիոնալ համախմբման ու միասնության հնարավորություն են տալիս։ Սոցիալիստական ազգերը ոչ միայն ներքնապես են միասնական, այլև միասնական են իրենց համախմբման մեջ, կապիտալիզմի դեմ իրենց պայքարի մեջ։

Պատմությունն այնպես է զարգանում, որ սոցիալիստական ու բուրժուական ազգերը գոյություն ունեն կողք-կողքի, որ պատմական որոշակի դարաշրջանում նրանք գոյակցում են իրար հետ։ Այդ գոյակցությունը միաժամանակ նրանց պայքարի ժամանակաշրջանն է և կապիտալիզմը այժմ ստիպված է պայքարել սոցիալիզմի դեմ երկու ճակատով՝ մի կողմից նա փորձում է զսպել ու հաղթահարել կապիտալիստական վիճակում գտնվող ժողովուրդների սոցիալիստական հեղաշրջման համար մղվող պայքարը, մյուս կողմից, նա ստիպված է մրցակցել սոցիալիզմի համակարգի հետ ու փորձում է ամեն կերպ խանգարել նրա առաջխաղացմանը։ Այդ իսկ պատճառով էլ սոցիալիստական ազգերի, նրանց կոմունիստական կուսակցությունների քաղաքականության հիմնական գիծը ոչ միայն կոմունիզմի կառուցման համար, այլև համաշխարհային իմպերիալիզմի դեմ մղվող պայքարն է, կապիտալիզմի լծից ազատագրվող բոլոր ազգերի ու կապիտալիզմի դեմ պայքարող բոլոր ուժերի հետ համերաշխվելու ձգտումն է։

Սոցիալիստական ազգերը, այսպիսով, բնութագրվում են ոչ միայն արտադրության միջոցների հասարակական սեփականությամբ, սոցիալիստական արտադրական հարաբերություններով, շահագործող դասակարգերի վերացումով, բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքով ու պրոլետարական

պետականությամբ, այլև, դրանց հիման վրա, իրենց **ներքին սոցիալական համախմբմամբ ու միասնությամբ՝** իսկապես ազգային միասնությամբ և, միաժամանակ, հավասար լինելով կյանքի բոլոր բնագավառներում ու հաղթահարելով զարգացման աստիճանների տարբերությունը, իրար հետ օրգանական **ինտերնացիոնալ միասնությամբ:**

**Սոցիալիստական ազգերը գաղափարապես իրար միավորող ուժը պրոլետարական ինտերնացիոնալիզմի,** այսինքն՝ բոլոր ազգերի ու ազգությունների լիակատար հավասարության, կապիտալիզմի դեմ և կոմունիզմի կառուցման համար մղվող պայքարում նրանց սերտ միասնության ու եղբայրական համագործակցության գաղափարախոսությունն է: Այդ գաղափարախոսությունը, որը բխում է աշխատավոր դասակարգերի, հատկապես արդյունաբերական պրոլետարիատի կյանքի պայմաններից և տեսականորեն հիմնավորվում ու պրոպագանդվում է կոմունիստական կուսակցության կողմից, սոցիալիզմի ժամանակ դառնում է, նախ, հասարակության մեծ մասի և ապա ամբողջ հասարակության գաղափարախոսություն:

Սոցիալիստական ազգերն այնպիսի ազգեր են, որոնք աստիճանաբար ձերբազերծվում են ազգայնականության այն բոլոր երևույթներից, որոնք հատուկ են հակամարտ դասակարգերի բաժանված և մեկը մյուսին ճնշող կամ ենթարկվող բուրժուական ազգերին: Ճիշտ է, այդ երևույթների մնացորդները և ապա վերապրուկները դեռ երկար ժամանակ են պահպանվում ու հաղթահարվում են միայն համառ ու տևական պայքարի միջոցով, որովհետև, մի կողմից, սոցիալիզմի համակարգի կողքին գոյություն ունի կապիտալիզմի համակարգը, որտեղից այս կամ այն ձևով թափանցում են այդ գաղափարները, մյուս կողմից, սոցիալիստական ազգերի ներսում, տնտեսական ու սոցիալական կառուցվածքի մեջ, ինչպես տեսանք, դեռ երկար ժամանակ պահպանվում են անցյալի մնացուկներ, որոնք նացիոնալիզմի որոշ վերապրուկների սնուցող հող են, և, վերջապես, սոցիալիզմի կառուցման ընթացքում առանձին երկրների սոցիալական պայմանների տարբերությունը նրանց միջև առաջացնում է քաղաքականության որոշ տարբերություններ, որոնք ինչ-որ չափով նաև ազգայնական երանգ են ստանում: Սակայն այդ հակասությունները ժամանակավոր բնույթ են կրում և այդ երկրների հետագա զարգացման ընթացքում հաղթահարվում են:

Մինչսոցիալիստական կարգերը, երբ մի քանի ազգեր իշխում են մյուսների վրա, երբ ազգային հակադրությունն ու թշնամությունը և առանձին ազգային խմբերի հալածանքը հրահրվում է տիրող դասակարգերի կողմից, շատ ու շատ ազգերի ժողովրդական զանգվածների մեջ անվստահություն են առաջացնում ոչ միայն տիրող ազգի շահագործող դասակարգերի, այլև տիրող ազգի նկատմամբ ամբողջությամբ վերցրած:

Սոցիալիստական կյանքը, արմատականորեն վերափոխելով սոցիալական կյանքն ու ազգային հարաբերությունները, քայլ առ քայլ հաղթահարում ու արմատախիլ է անում ազգային անվստահությունը և բոլոր ազգերին ներարկում փոխադարձ վստահության ու համերաշխության զգացմունք: Դրանում առանձնապես կարևոր դեր է խաղում մեծ ու փոքր ազգերի փոխհարաբերության փոփոխությունը: Միայն սոցիալիստական կարգերի հաստատումից հետո մեծաթիվ, տնտեսական ու ռազմական տեսակետից հզոր ազգը ոչ միայն հավասար է դառնում փոքր ու թույլ ազգերին, այլև նրանց ճնշելու փո-



խարեն, ինչպես դա անցյալում էր, անշահախնդիր օգնություն է ցույց տալիս փոքր ազգերի ինքնուրույնության հաստատման ու պահպանման, նրանց տնտեսական ու մշակութային կյանքը զարգացնելու ու ժամանակակից աստիճանին հասցնելու գործում:

Այդ տեսակետից բնորոշ է ռուս ազգի և ՍՍՀՄ ու սոցիալիստական համակարգի մյուս ազգերի փոխհարաբերությունը: Մյուս ազգերի հեղափոխական զանգվածների օգնությամբ տապալելով սեփական՝ ռուսական կապիտալիստների ու կալվածատերերի տիրապետությունը, ռուս բանվոր դասակարգը անմիջականորեն օգնեց ուկրաինական, բելոռուսական, ադրբեջանական, հայկական, վրացական, ուզբեկական և այլ ազգերի աշխատավորներին ազատագրվելու նաև սեփական կալվածատերերից ու կապիտալիստներից և հաստատելու սոցիալիստական կարգեր: Իսկ հետագայում ռուսական բանվորներն ու գյուղացիները, հեղափոխական մտավորականությունը վիթխարի տնտեսական ու մշակութային օգնություն ցույց տվեցին մեր երկրի մյուս ժողովուրդներին՝ նրանց տնտեսության զարգացման, արտադրության, տեխնիկայի, մշակույթի ամենատարբեր բնագավառների ազգային կադրեր ստեղծելու և զարգացման արդիական աստիճանին հասնելու համար:

Սոցիալիզմի համակարգի համաչափ զարգացման և նախկինում հետամնաց ազգությունների՝ առաջավորներին հասնելու շնորհիվ մի ազգի կողմից մյուսներին ցույց տրվող օգնությունը այժմ վերածվել է սոցիալիստական ազգերի փոխադարձ օգնության: Եվ դա միանգամայն հասկանալի է, որովհետև նրանք բոլորն էլ այժմ կանգնած են զարգացման համարյա թե միատեսակ բարձր աստիճանի վրա: Ավելին, այժմ հանդես է գալիս մի նոր երևույթ. զարգացած սոցիալիստական ազգերը տնտեսական ու մշակութային ամենալայն օգնություն են ցույց տալիս գաղութային լծից նոր ազատագրված ու ինքնուրույն կյանք կառուցող ազգերին:

Ահա այս օգնության ու համերաշխության մեջ է արտահայտվում պրոլետարական ինտերնացիոնալիզմը, որն օրգանապես զուգորդվում է ազգային արժանապատվության, ազգային հպարտության զգացմունքի հետ: Սակայն ազգային հպարտության զգացմունքն ինքը սոցիալիզմի ժամանակ նոր բովանդակություն է ստանում. դա այլևս հպարտություն չէ իր ազգի ճնշողների կողմից մյուս ժողովուրդներին նվաճելու, աշխարհակալության ու թալանի համար, այլ հպարտություն այն ավանդի համար, որ տվյալ ժողովրդի հեղափոխական զանգվածները մուծում են կապիտալիզմի տապալման, բոլոր ժողովուրդների սոցիալական ազատագրման ու անդասակարգ կոմունիստական հասարակություն կառուցելու գործում, հպարտություն այն մշակութային արժեքների համար, որ տվյալ ժողովրդի զավակները մուծում են համամարդկային առաջավոր մշակույթների գանձարանը: Դա այլևս ազգային սնապարծություն չէ, այլ օրինական հպարտություն մարդկային պատմության մեջ տվյալ ժողովրդի խաղացած պատմական դերի, անցյալում նրա զավակների առաջադիմական գործունեության ու մշակութային նվաճումների համար:

Սոցիալիզմի կառուցման պրոցեսում հնարավոր են և լինում են առանձին ազգերի ներկայացուցիչների կողմից որոշ շեղումներ դեպի ազգային սնապարծությունն ու նիհիլիզմը, ազգային հին արժեքների ու երևույթների սխալ գնահատման դեպքեր: Սակայն դրանք բնորոշ ու անխուսափելի չեն, ինչպես կապիտալիզմի ժամանակ և հաղթահարվում են մարքսիզմ-լենինիզմի ինտեր-

նացիոնալ գաղափարախոսության և կոմունիստական կուսակցությունների
ճիշտ քաղաքականության շնորհիվ։
Սոցիալիստական ազգերը, այսպիսով, հոգևոր կյանքում տարբերվում են
բուրժուական ազգերից իրենց քաղաքական ըմբռնումներով ու ձգտումներով,
լայն զանգվածների համոզմունք դարձող գիտական-մատերիալիստական
աշխարհայացքով և բարոյական նոր ըմբռնումներով ու հայացքներով, որոնք
իրենց հիմնական կողմերով արմատականորեն տարբերվում են շահագործող
դասակարգերի բարոյականությունից։ Այդ նոր բարոյականության համար
բնորոշ են հասարակական ու անձնական շահերի, ազգային ու միջազգային
շահերի օրգանական զուգորդումը, սոցիալիստական հայրենասիրությունն ու
ինտերնացիոնալիզմը։ Մարդը մարդուն ընկեր, բարեկամ ու եղբայր լինելու
սկզբունքը, կոմունիստական արդարացի կարգեր ստեղծելու ձգտումը, անհաշ-
տությունը շահագործողական գաղափարախոսության, գործելակերպի ու բա-
րոյական ըմբռնումների նկատմամբ իսկական հումանիզմն ու արդարադա-
տությունը և այլն։
Ահա այս բոլորի հիման վրա է, որ սոցիալիստական ազգերի մեջ գոյու-
թյուն ունի բարոյական-քաղաքական միասնություն, որ այդ ազգերին հատուկ
է հասարակական-քաղաքական ակտիվություն, նվիրվածություն կոմունիզմի
գործին։
Ամփոփելով սոցիալիստական ազգերի բնորոշ կողմերը, կարելի է ասել,
որ սոցիալիզմի ժամանակ ազգերը ձեռք են բերում նոր սոցիալական-հասա-
րակական բովանդակություն, չկորցնելով իրենց բնորոշ ազգային ընդհանրու-
թյունները (լեզվի, տերիտորիայի, տնտեսական կյանքի, մշակույթի և այլ
ընդհանրությունները) և, հետևաբար, ավելի բարձր զարգացած ու առաջավոր
մարդկային հանրություններ են, քան կապիտալիզմի ժամանակաշրջանում
ապրող մարդկային հանրությունները։





Գ. ՄԿՐՏՉՅԱՆ

# ՍՄԿԿ ԾՐԱԳԻՐԸ ՈՐՊԵՍ ՆՊԱՏԱԿ

ՀԱՅՏՆԻ է, որ ամեն մի կուսակցություն ունի իր նպատակները,
որոնք որոշվում են իր դասակարգի շահերով, պահանջներով և
ուրվագծվում ու ձևակերպվում են որոշակի ծրագրերում։ Առանց
նպատակի չկա ծրագիր։ Սակայն, նպատակի ու ծրագրի միջև կա
նաև տարբերություն։ Եթե նպատակը գործունեության արդյունքի իդեական
նախապատկերն է, ապա ծրագիրը, դրա հետ միասին, այդ արդյունքին հաս-
նելու (այն իրականացնելու) պրոցեսի պատկերն է, այսինքն՝ նպատակի իրա-
կանացման ամբողջ պրոցեսի, նրա զարգացման էտապների պատկերը։ Ծրա-
գրով ձևակերպվում են ոչ միայն որոշակի նպատակներ, այլև նշվում են կու-
սակցության հիմնական գործելակերպը և այդ նպատակների կենսագործման
մեթոդներն ու եղանակները։
Աշխարհի բոլոր կուսակցություններից միայն մեկն է, որ հասարակա-
կան կյանքի արմատական, հեղափոխական վերափոխման ծրագիր ունի. դա
կոմունիստների կուսակցությունն է։ Միայն նրա ծրագիրն ու նպատակներն են
գիտական հստակությամբ մշակված և պատմական փորձով հիմնավորված։
Ճշմարիտ են այն ծրագրերը, որոնք մշակվում են գիտական հիմունքնե-
րով, այսինքն՝ ճիշտ են վերարտադրում իրականությունը, ճիշտ են արտա-
հայտում պատմականորեն հասունացած խնդիրները և դրանց լուծման իրա-
կան ուղիներն ու միջոցները։
Մարդկության պատմության մեջ հասարակական կյանքի վերափոխման
առաջին գիտական ծրագիրը մշակել են Մարքսն ու Էնգելսը։ Դա Կոմունիստա-
կան կուսակցության մանիֆեստն է, որի մեջ գիտականորեն հիմնավորված է
կապիտալիզմի անխուսափելի կործանումը, ձևակերպված է միջազգային պրո-
լետարիատի վերջնական նպատակը՝ կոմունիզմը, և մշակված է այդ նպատա-
կին հասնելու ընդհանուր ստրատեգիական պլանը։ Պրոլետարիատի տնտեսա-
կան պայմաններից ու պահանջներից ծագած ծրագրային այդ առաջին փաս-
տաթղթի մեջ մենք ունենք անցյալի ու ներկայի հստակ ըմբռնումը, ինչպես և
ապագա հասարակարգի իդեական պատկերը։ Նրա մեջ կանխատեսված է ա-
պագան, որպես ներկայի դիալեկտիկայի անխուսափելի արդյունք, գիտակա-
նորեն մատնանշված են այն ուղիները, որոնցով ընթանալով, համաշխարհա-
յին պրոլետարիատը հասնելու է իր վերջնական նպատակին՝ կոմունիզմին։

«Մանիֆեստը» հասարակական կյանքի պատմության նկրտումների բյուրեղացումն է, դասակարգային հասարակության զարգացման օրինաչափությունների սևեռումը։ Նրա բովանդակությունը կոմունիզմին՝ պրոլետարիատի, աշխատավոր մասսաների երջանիկ ապագային հասնելու ռեալ հնարավորությունների հիմնավորումն է։ Իրականությունից դժգոհ պրոլետարիատը, աշխատավորական մասսաները ձգտում էին վերափոխել այդ իրականությունը՝ տապալել կապիտալի լուծը և արմատապես վերափոխել գոյություն ունեցող հասարակական-քաղաքական կարգերը։ Պատմականորեն հասունացած այդ խնդիրները լուծելու համար արդեն առկա էին համապատասխան պայմանները։ Հենց այդ էր ընդգծում Մարքսը, երբ գրում էր. «...մարդկությունը միշտ առաջադրում է իրեն լոկ այնպիսի խնդիրներ, որ ինքը կարող է լուծել, որովհետև, մոտիկից քննելով, միշտ պարզվում է, որ բուն խնդիրը ծագում է միայն այն ժամանակ, երբ նրա լուծման նյութական պայմաններն արդեն գոյություն ունեն կամ, գոնե, գտնվում են լինելության պրոցեսում» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, երկու հատորով, հ. 1, էջ 428)։ Պրոլետարիատի առաջին ծրագիրը՝ Կոմունիստական մանիֆեստը, այդ դրույթի ապացույցն է։

Կոմունիզմի գիտական գաղափարը, որպես նպատակ, ծագեց ռեալ իրականությունից, նրա իրագործման ռեալ պայմաններից։ Մարքսն ու Էնգելսը գրում էին, որ սոցիալիզմը, կոմունիզմը համաշխարհային պատմության ճանապարհից դուրս ընկած բան չեն, այլ կապիտալիստական հասարակությանը ներհատուկ օբյեկտիվ հակասությունների, կապիտալիստական արտադրության մեջ տիրող անարխիայի վերլուծության արդյունք են, «պրոլետարական շարժման թեորիական արտահայտությունը...» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 2, էջ 191)։

Մարքսի, Էնգելսի կողմից կոմունիզմի անխուսափելի հաղթանակի կանխատեսումն ու միջազգային պրոլետարիատի վերջնական նպատակի գիտական հիմնավորումը «երազողների մտահորինումը» չէր, այլ «պատմական շարժման ամբողջ ընթացքի թեորիական իմացման», հասարակական կյանքի, մասնավորապես, կապիտալիստական հասարակության զարգացման օբյեկտիվ օրինաչափությունների բացահայտման արդյունք, կապիտալիստական «հասարակության արտադրողական ուժերի զարգացման վերջնական նպատակն ու անհրաժեշտ արդյունքը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 2, էջ 6)։

Մարքսն ու Էնգելսը գրում էին, որ միայն պրոլետարիատը կարող է մարդկությանն ազատագրել ամեն տեսակ շահագործումից, որովհետև ի դեմս նրա կենսապայմանների, «արդի հասարակության բոլոր կենսապայմանները հասել են անմարդկայնության գագաթնակետին, քանի որ պրոլետարիատի մեջ մարդը կորցրել է ինքն իրեն, սակայն դրա հետ մեկտեղ նա ոչ միայն ձեռք է բերել այդ կորստի թեորիական գիտակցությունը, այլև անմիջականորեն հարկադրված է ըմբոստանալու ի վերուստ անխափանելի, արդեն ոչ մի դեղազարդման չենթարկվող բացարձակորեն տիրակալ կարիքի՝ անհրաժեշտության այդ պրակտիկ արտահայտության, այդ անմարդկայնության դեմ, հենց այդ պատճառով էլ պրոլետարիատը կարող է և պետք է ազատագրի ինքն իրեն» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 2, стр. 40)։

Մարքսիզմ-լենինիզմի թշնամիները վաղուց են հասկացել, որ մասսաների ուժն ու հզորությունը նրանց գիտակցականության ու համախմբվածության մեջ է։ Նրանք տեսնում են, որ մարքսիզմը մի հզոր զենք է պրոլետա-



րիատի ձեռքին՝ իրենց դեմ տարվող պայքարում։ Բուրժուական ռեակցիոն գաղափարախոս Նիցշեն հենց մարքսիզմի ուսմունքի այդ հզոր դերն էր ընդգծում, երբ գրում էր, «որ բանվորներին օժտեցին տրամաբանությամբ և նրանք սկսեցին ապստամբել»։ Նիցշեն նկատում էր, որ բանվորներին գիտակցությամբ, բանականությամբ զինելը բուրժուական հասարակության համար ամենամեծ չարիքն է։

Մարքսիզմը պրոլետարիատի վերջնական նպատակը՝ կոմունիզմի իդեալը, դիտում է պրակտիկ իմաստով, որպես իրականություն, ճշմարտություն, աշխարհը հեղափոխական պայքարով վերափոխելու օբյեկտիվ պրոցես։ Գիտական կոմունիզմը ոչ թե «սոսկ բանվոր դասակարգի կուսակցական ուսմունքն է,— գրել է Էնգելսը,— այլ մի թեորիա է, որի վերջնական նպատակն է ազատագրել ժամանակակից հարաբերությունների նեղ շրջանակներից ամբողջ հասարակությանը...» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հատ. 2, էջ 528)։ Բայց քանի որ հասարակությունն այդ նեղ շրջանակներից ազատագրել հնարավոր չէ առանց պայքարի, ապա կոմունիզմը նաև դասակարգային պայքարի թեորիա է, որն «իր բուն էությամբ քննադատական է և հեղափոխական»։ Մարքսը պահանջում էր գոյություն ունեցողի ոչ միայն իմացում, այլև վերափոխում։

***


ԱՊԻՏԱԼԻԶՄԻ իմպերիալիստական ստադիայի ստույգ գիտական վերլուծությունը, նոր իրադրության մեջ պրոլետարիատի նպատակների, դրանց իրականացման միջոցների և ուղիների բացահայտումն ու հիմնավորումը տվեց Վ. Ի. Լենինը։ Նախընթաց էտապի հեղափոխական պայքարի բովում պրոլետարիատի, առհասարակ աշխատավոր մասսաների ձեռք բերած փորձն ու նվաճումները գիտականորեն ընդհանրացնելու շնորհիվ նա համաշխարհային մասշտաբով ընդգրկեց ներկան և, բազմակողմանիորեն բացահայտելով մոնոպոլիստական կապիտալիզմի սոցիալ-քաղաքական հակասությունները, հակադիր սոցիալական ուժերի հարաբերությունը, կանխատեսեց միջազգային պրոլետարական շարժման հեռանկարները։ Նա ցույց տվեց, որ հասարակության զարգացման այդ աստիճանում ամբողջովին հասունանում են սոցիալիստական հեղափոխության հաղթանակի պայմանները։ Բացահայտելով հասարակության զարգացման պրոցեսում ընդհանուրի, հատկականի և եզակիի դիալեկտիկան, Վ. Ի. Լենինը կանխանշեց, որ բոլոր երկրները կգնան դեպի սոցիալիզմ, բայց դրանցից յուրաքանչյուրն այդ պրոցեսը կապրի իր առանձնահատկություններին, կոնկրետ պատմական պայմաններին համապատասխան։

Լենինը խոր վերլուծության ենթարկեց նպատակի, միջոցի ու գործողության դիալեկտիկան և այդ հիման վրա ցույց տվեց, որ միջոցների զարգացման հետևանքով համապատասխանորեն պետք է փոփոխվեն նաև նպատակին հասնելու ուղիները, գործելակերպն ու մեթոդները։

Ամբողջ էպոխայի օրինաչափ զարգացման լենինյան լուսաբանումը, ռուսական իրականության բազմակողմանի վերլուծությունն ու գնահատումը, այդ իրականության մեջ սոցիալիզմին անցնելու ռեալ հնարավորությունների և ուղիների ճշմարիտ լուսաբանումը տրվեց մեր կուսակցության առաջին ծրագրում։

Կուսակցության առաջին ծրագիրը վարպետորեն ձևակերպված մի հանճարեղ, կոնկրետ ու ամբողջական նպատակ էր, որի բովանդակությունը կազմում էր համաշխարհային զարգացման տվյալ էտապի օրինաչափությունների վերլուծությունը։ Այդ վերլուծության արդյունք հանդիսացավ սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման ռեալ հնարավորությունների գիտական հիմնավորումը։ «Այդ վերջնական նպատակը,— ասված է կուսակցության առաջին ծրագրում,— որոշվում է արդի բուրժուական հասարակության բնույթով և նրա զարգացման ընթացքով» (ՍՄԿԿ-ը համագումարների, կոնֆերենցիաների և Կենտկոմի պլենումների բանաձևերում ու որոշումներում, մաս 1, էջ 42)։

Ծրագիրը տալիս է պրոլետարիատի, մասսաների դասակարգային պայքարի ինչպես անմիջական, այնպես էլ վերջնական նպատակների գիտական վերլուծությունը, բացահայտում այդ նպատակների դիալեկտիկան, դրանց իրականացման համար պահանջվող անհրաժեշտ օբյեկտիվ ու սուբյեկտիվ պայմանները։

Կյանքը պատմական զարգացման տվյալ էտապում Ռուսաստանի առաջ դրել էր երկու հիմնական խնդիր՝ նախ միապետության, ապա և բուրժուազիայի տապալումը և պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումը։ Ծրագիրը այդ խնդիրներին համապատասխան նախատեսում էր երկու կարգի նպատակ՝ մինիմում և մաքսիմում, որոնք վերջնական նպատակի իրականացման ուղու վրա արտահայտում էին պրոլետարիատի, մասսաների գիտակցական գործունեությամբ իրականացվող հասարակական կյանքի օրինաչափ զարգացման երկու փուլերի օրգանական միասնությունը։ Այդ միասնությունն իր ցայտուն դրսևորումն է գտել բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունը սոցիալիստականի վերաճման լենինյան տեսության մեջ։

Լենինը պրոլետարիատի վերջնական նպատակը դիտում է որպես գիտական փաստերով հիմնավորված ճշմարտություն, իսկ կուսակցության ծրագրերի իրականացումը՝ այդ ճշմարտության մարմնավորումը իրականության մեջ։ Ռեալ սոցիալիստական ծրագրի առաջադրման համար նա անհրաժեշտ է համարում երեք պայման. 1) պարզ գաղափար վերջնական նպատակի մասին. 2) ճիշտ ըմբռնումն այն ուղու, որը տանում է դեպի այդ նպատակը և 3) ճիշտ պատկերացում գործերի իսկական դրության մասին տվյալ մոմենտում և այդ մոմենտի մերձավորագույն խնդիրների մասին (տե՛ս Երկեր, հ. 6, էջ 254)։

Լենինը գտնում է, որ նախքան վերափոխելը, պետք է պարզ ու հստակ պատկերացում ունենալ վերափոխման արդյունքների և դրանց հասնելու ուղիների մասին, այլ ոչ թե կուրորեն քայլել դեպքերի պոչից և արձանագրել փաստերը։ Լենինը ցույց էր տալիս, որ միապետության ու բուրժուազիայի դեմ մղվող պայքարում բանվոր դասակարգը հաջողություն կունենա միայն այն դեպքում, երբ պարզ պատկերացնի իր պայքարի նպատակը և համոզվի այդ նպատակի ճշմարտացիության մեջ։ Դրա համար էլ նա սոցիալ-դեմոկրատիայի մերձավորագույն և առաջնակարգ խնդիրն էր համարում «որոշակի սոցիալիստական իդեաներ մտցնել տարերային բանվորական շարժման մեջ, այն կապակցել սոցիալիստական համոզմունքների հետ...» (Երկեր, հ. 4, էջ 270), բանվոր դասակարգին ցույց տալ նրա պայքարի վերջնական նպատակը, նրա քաղաքական խնդիրները։ Այլ կերպ ասած՝ բանվոր դասակարգի տարերային պայքարը դարձնել գիտակցական, նպատակասլաց ու կազմակերպված, միա-



պետության ու բուրժուազիայի դեմ պայքարի համախմբել նրա բոլոր ուժերը։

Լենինն ընդգծում և մատնանշում էր, որ վերջնական նպատակի իրականացման ուղու վրա անհրաժեշտորեն ծագում են այնպիսի հանգուցային նպատակներ, որոնց իրականացմամբ է միայն հնարավոր դառնում առաջ շարժվել ու մոտենալ վերջնական նպատակին։ Այդ նպատակները նա համարում էր շղթայի այն գլխավոր օղակները, որոնց օգնությամբ կարելի է ձգելով առաջ քաշել ամբողջ շղթան։ Լենինը կուսակցության ծրագրի երկու մասերը դիտում էր որպես վերջնական նպատակի ուղու վրա եղած այն օղակները, որոնց իրականացմամբ, մի կողմից, իրականանում են բոլոր երկրորդական նպատակները, իսկ մյուս կողմից՝ նախադրյալներ են ստեղծվում վերջնական նպատակի իրականացման համար։

Միապետական կարգերի առկայությունից ելնելով, Լենինի համախոհները զարգացման տվյալ էտապի համար առաջադրել էին բուրժուա-դեմոկրատական հեղափոխության միջոցով այդ կարգերի վերացման պահանջը։ Իրականությունից ծագած այդ պահանջի բավարարումն էլ կազմեց կուսակցության մինիմում ծրագիրը, նպատակը, այն է՝ տապալել ֆեոդալական կարգերը, բուրժուական հարաբերությունների առկայության պայմաններում ստեղծել պրոլետարիատի ու գյուղացիության դեմոկրատական հեղափոխական դիկտատուրա և դրա օգնությամբ դեմոկրատացնել հասարակությունը։ «Ռուսական սոցիալ-դեմոկրատիան արդեն քանիցս հայտարարել է,— գրել է Լենինը 1900 թվականի աշնանը,— որ ռուսական բանվորական կուսակցության մերձավորագույն քաղաքական խնդիրը պետք է լինի ինքնակալության տապալումը, քաղաքական ազատության նվաճումը» (Երկեր, հ. 6, էջ 116)։

Կուսակցության մինիմում ծրագրի իրականացմամբ պրոլետարիատը դեռևս չի հասնում դասակարգային պայքարի իր վերջնական նպատակին։ Նրա դասակարգային պայքարի վերջնական նպատակը սոցիալիստական հեղափոխության հաղթանակն է՝ քաղաքական իշխանության նվաճումը, արտադրության միջոցներին կոլեկտիվորեն տիրելն ու սոցիալիստական հասարակարգի կառուցումը։ Մեր կուսակցության ծրագրի երկրորդ մասն արտահայտում էր այդ նպատակը։ Միապետական կարգերի տապալումը պրոլետարիատին ընդհուպ մոտեցնում էր այդ վերջնական նպատակին և ռեալ պայմաններ ստեղծում նրա իրագործման համար։

Նախատեսված հաջորդականությամբ իրագործելով առաջին ծրագրով ձևակերպված նպատակները, կուսակցությունը մասսաներին պրոլետարիատի ղեկավարությամբ հասցրեց սոցիալիստական հեղափոխության հաղթանակին։ Հոկտեմբերյան հեղափոխությունը, ճեղքելով կապիտալիզմի շղթան և դեն նետելով իշխողների դարավոր լուծը, նոր դարաշրջան բացեց մարդկության պատմության մեջ։ Իրագործվեց Լենինի հանճարեղ կանխատեսումը։ Համաշխարհային պատմական այդ հեղաշրջումը կուսակցության առաջ դրեց նոր վիթխարի խնդիրներ, նպատակներ։ Պատմական այդ նոր պայմաններին համապատասխան կուսակցությունը պետք է մշակեր նոր, սոցիալիստական հասարակության կերտման ծրագիր, որը բխում էր նրա վերջնական նպատակից։ Շահագործումից ազատագրված աշխատավոր մասսաները Ռուսաստանում հնարավորություն ստացան տնօրինելու իրենց կյանքն ու բախտը, կերտելու իրենց ապագան։

Կուսակցությունը Լենինի գլխավորությամբ մշակեց իր հերթական ծրա-

գիրը, որն, իր նախորդի համեմատությամբ, ուներ ավելի հարուստ բովանդակություն: Քաղաքական խնդիրների հետ միասին այն իր մեջ ներառնում էր նաև սոցիալ-տնտեսական ու կուլտուրական վեհ խնդիրներ: Ծրագրով, որպես ընդհանուր նպատակ, ձևակերպվում էր սոցիալիզմի լիակատար կառուցումը: ՍՄԿ կուսակցության երկրորդ ծրագիրն իրագործվեց մի շարք հաջորդական էտապներով: Հիմնականում դրանք միմյանց հետ սերտորեն կապված հնգամյա պլաններ էին, որոնցից յուրաքանչյուրը հանդիսանում էր ընդհանուր նպատակի իրականացման մի աստիճանը, մասսաների ամեն մի հինգ տարվա գործունեության հիմնական նպատակը: Յուրաքանչյուր հնգամյակում առաջադրված նպատակների իրականացման շնորհիվ համապատասխան միջոցներ ստեղծվեցին հաջորդ հնգամյակների նպատակներն իրագործելու համար: Կուսակցությունը, վարպետորեն կիրառելով նպատակի, միջոցի և գործողության դիալեկտիկան, նախատեսված ժամկետում անշեղորեն իրականացրեց իր առաջադրած հիմնական նպատակը, ապահովեց սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակը մեր երկրում:

Կուսակցությունը միշտ էլ մեկնել է իր մեծ նպատակի, կոմունիստական հասարակության ստեղծման անհրաժեշտությունից: Նրա նպատակների ու ծրագրերի մեջ միշտ էլ միահյուսված են եղել ներկան ու ապագան, ռեալիզմն ու հեղափոխական ռոմանտիզմը, ապագայի պարզ պատկերացումն ու նրան հասնելու ոգեշունչ ձգտումը:

Նա իր կանխատեսած լավագույն ապագայի բարձունքից է միշտ դիտում ու գնահատում ներկան: Ապրելով այդ ապագային հասնելու հավատով առլեցուն, կուսակցությունը միշտ էլ հաստատակամորեն պայքարել ու հասել է դրան: Կուսակցության ձեռք բերած հաջողությունները պայմանավորված են ոչ միայն նրա առաջադրած նպատակների ճշմարտությամբ ու վարած գիտական քաղաքականությամբ, այլև այդ նպատակներն իրականացնող մասսաների հետ նրա սերտ կապով: Կուսակցության ուժի և հզորության աղբյուրը, նրա հաղթանակների գրավականը մասսաների հետ ունեցած այդ կապն է, իր առաջադրած նպատակների ճշմարտությամբ նրանց համոզելը:

Հասնելով իր առաջնահերթ նպատակին՝ սոցիալիզմի լիակատար կառուցմանը, կուսակցությունը այդ իրողությունից իսկ ծնված նպատակը՝ կոմունիզմի ծավալուն կառուցման հարցը դրեց իր և ամբողջ ժողովրդի առջև որպես անմիջական նպատակ: ՍՄԿԿ XXII համագումարն ընդունեց նոր ծրագիր և հայտարարեց, որ սովետական երկրում սոցիալիզմի լիակատար հաղթանակն օբյեկտիվ անհրաժեշտությամբ օրակարգի հարց է դարձրել կոմունիզմի կառուցումը: Այդ դեռևս Լենինն էր կանխատեսում, երբ գրում էր, որ «մեր կուսակցությունն ավելի հեռուն է նայում, սոցիալիզմը պետք է անխուսափելիորեն աստիճանաբար վերաճի կոմունիզմի (Երկեր, հ. 24, էջ 85):

Կոմունիզմը դարձել է մեր երկրի բոլոր աշխատավորների նպատակը, անհետաձգելի պրակտիկ խնդիրը, ձեռք բերելով ավելի կոնկրետ ու հարուստ բովանդակություն: Այն՝ տիրապետելով միլիոնավոր մասսաներին, վեր է ածվում նյութական ուժի, դառնում յուրաքանչյուր անհատի կենսական պահանջը, նրա կյանքի հիմնական նպատակը: Սոցիալիստական հասարակությունը բոլոր աշխատավորների համար ծնեց նույնանման շահեր ու նպատակներ: Նոր ծրագիրն այդ շահերի ու նպատակների ընդհանրության արտահայտությունն է: «Որտեղ չկա շահերի ընդհանրություն,— գրել է Էնգելսը,— այնտեղ



չի կարող լինել և նպատակների միասնություն, չխոսելով արդեն գործողությունների միասնության մասին» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 8, стр. 14):

Ինչպես միշտ, ՍՄԿԿ-ն այս անգամ էլ ժամանակին մշակեց կոմունիզմի կառուցման ծրագիրը և դրանով ավելի զարգացրեց, կոնկրետացրեց ու հարստացրեց մարքսիզմ-լենինիզմը: Ղեկավարվելով մարքս-լենինյան ամենահաղթ ուսմունքով, «նոր ծրագիրը ստեղծագործաբար ընդհանրացնում է սոցիալիզմի կառուցման պրակտիկան, հաշվի է առնում ամբողջ աշխարհի հեղափոխական շարժման փորձը և, արտահայտելով կուսակցության կոլեկտիվ միտքը, սահմանում է կոմունիստական շինարարության գլխավոր խնդիրներն ու հիմնական էտապները» (ՍՄԿԿ ծրագիրը և կանոնադրությունը, Երևան, Հայպետհրատ, 1964 թ., էջ 8):

Ծրագրի մեջ նշված է, որ «կուսակցության բարձրագույն նպատակն է՝ կառուցել կոմունիստական հասարակարգ...»: Այդ բարձրագույն նպատակին հասնելու համար ծրագիրը նախատեսում է իրականացնել մի շարք գլխավոր նպատակներ, որոնցից ամենահիմնականը կուսակցությունը համարում է կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծումը: Սահմանելով այդ նպատակի իրականացման ռեալ միջոցներն ու նախադրյալները, ծրագիրը նախագծում է նաև դրան հասնելու ուղիները:

Էկոնոմիկայում տեղի ունեցող արմատական փոփոխություններն օբյեկտիվ պայմաններ կստեղծեն ծրագրով նախատեսված մյուս էական նպատակի, սոցիալիստական հասարակական հարաբերությունները կոմունիստականի վերածելու, իրականացման համար: Աստիճանաբար կհաղթահարվեն դասակարգային տարբերությունները, գյուղի և քաղաքի, մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունները: Կանհետանան դասակարգերը: Դասակարգային գիտակցությունը կվերաճի կոմունիստական գիտակցության: Գնալով ավելի կբարձրանա հասարակական կազմակերպությունների դերը հասարակության առաջ դրված նպատակներն իրականացնելու գործը ղեկավարելու հարցերում:

Ինքնին հասկանալի է, որ իրական կյանքում տեղի ունեցող այդ արմատական փոփոխությունները պետք է կոմունիզմ կառուցող սովետական մարդկանց մոտ ստեղծեն նոր, կոմունիստական հոգեբանություն և գիտակցություն: Ուստի կուսակցությունն իր առաջ դրեց նաև նոր մարդու ձևավորման, մասսաներին կոմունիզմի ոգով դաստիարակելու նպատակը: Սոցիալիզմից կոմունիզմին անցման էտապում կուսակցության և ժողովրդի համար ամենօրյա կարևորագույն խնդիր է դառնում անհատի բազմակողմանի ու ներդաշնակ զարգացումը, նրա կոմունիստական աշխարհայացքի ձևավորումը, բարձր բարոյական և աշխատանքային դաստիարակությունը:

Կոմունիզմի մեծ նպատակը կարող են իրականացնել միայն բազմակողմանիորեն զարգացած ու կոփված մարդիկ: Կոմունիզմը կարող է կառուցել միայն այն հասարակությունը, որի անդամներից յուրաքանչյուրն այդ վեհ գործի նկատմամբ ցուցաբերում է ամենօրյա պարտքի ու պատասխանատվության բարձր զգացում, ոգևորվում է ձեռք բերած հաջողություններով և անձնական օրինակ է տալիս առաջադրանքների, պլանների կատարման ու գերակատարման գործում: Կոմունիզմի շինարարները պետք է օժտված լինեն բարձր գիտակցականությամբ ու կարգապահությամբ, ունենան հզոր կամք,

դժվարությունները հաղթահարելու ունակություն, ստեղծագործություններ կատարելու կարողություն։ «Որքան ավելի բարձր է հասարակության անդամների գիտակցականությունը,— նշված է կուսակցության ծրագրում,— այնքան ավելի լրիվ ու լայնորեն է ծավալվում նրանց ստեղծագործական ակտիվությունը կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման, աշխատանքի կոմունիստական ձևերի և մարդկանց միջև նոր հարաբերությունների զարգացման մեջ և, հետևապես, այնքան ավելի արագորեն և հաջողությամբ են լուծվում կոմունիզմի կառուցման խնդիրները»։

Կոմունիզմ կառուցող մարդը պետք է լինի նոր տիպի մարդ։ Ծրագիրը ցույց է տալիս այդպիսի մարդու լիակատար ձևավորման հիմնական միջոցներն ու ուղիները։ Ծրագիրը դառնում է մասսաների գործունեության չափանիշը, որոշում այդ գործունեության բնույթը, իդեական դրդապատճառ և կենդանի ուղեցույց դառնում նրանց համար։

Սովետական ժողովուրդը կուսակցության ղեկավարությամբ անշեղորեն ընթանում է լենինյան ուղիով։ Նա գիտականորեն մշակված կոնկրետ պլաններին համապատասխան հաջորդական էտապներով իրականացնում է իր ծրագիրը։

Այդ էտապներից մեկը 1959—1965 թթ. յոթնամյակն էր, որի իրականացման շնորհիվ մեր երկիրը բուռն զարգացում ապրեց տնտեսական ու կուլտուրական շինարարության բոլոր բնագավառներում։ Բացահայտվեցին սոցիալիզմի անսպառ հնարավորությունները և պրակտիկայում ապացուցվեց կուսակցության առաջադրած նպատակների ու դրանց իրականացման միջոցների ճշմարտացիությունը։ Յոթնամյակում ձեռք բերված նվաճումները կուսակցությանը բերեցին նոր նպատակներ առաջադրելու լայն հնարավորություններ։ «...Սոցիալիզմի գլխավոր նպատակը մարդու բարօրությունն է, նրա համակողմանի զարգացումը,— ասված է ՍՄԿԿ XXIII համագումարին Կենտկոմի տված հաշվետու զեկուցման մեջ։—Այժմ մենք դուրս ենք եկել այն բնագծերը, երբ կարող ենք արագացնել շարժումը դեպի այդ նպատակը, առաջադրել և լուծել ավելի խոշոր խնդիրներ»։ Ելնելով դրանից, կուսակցությունը մշակեց նոր հնգամյա պլան (1966—1970 թթ.), որը մի առաջընթաց քայլ կլինի կոմունիզմի ծավալուն կառուցման գործում։

Սովետական ժողովուրդը իր հարազատ կուսակցության ղեկավարությամբ պարզ հեռանկարով և բուռն ոգևորությամբ կառուցում է իր լավագույն ապագան։ Ապագայի հանդեպ մասսաների ունեցած հավատը, նրան հասնելու համար ցուցաբերած բուռն ձգտումն ու նվիրվածությունը հանդես են գալիս կոմունիզմի կառուցման բոլոր բնագավառներում, սոցիալիստական համաժողովրդական մրցության անընդհատ ծավալման, աշխատանքի կոմունիստական բրիգադների հերոսական գործերում։





Ա. ՉԻԼԻՆԳԱՐՅԱՆ

Փիլիսոփայական գիտ. թեկնածու, դոցենտ

# ԱՆՀԱՏԻ ՀԱՄԱԿՈՂՄԱՆԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՆԱԽԱԴՐՅԱԼՆԵՐԸ*

ԱՆՀԱՏԻ համակողմանի զարգացման հարցը վաղուց է դադարել սոսկ ծրագրային հարց լինելուց։

Նյութական բարիքների ժամանակակից արտադրությունը՝ գիտատեխնիկական իր հագեցվածությամբ, հասարակական կյանքի ողջ կառուցվածքն արդեն պայմաններ են ստեղծում մարդու բազմակողմանի զարգացման համար։ Ավելին, մարդը չի կարող բազմակողմանի չզարգանալ, որովհետև արտադրության համարյա բոլոր բնագավառներում նա ստիպված է առնչվել նորանոր ու ամենաբազմազան նյութերի, պրոցեսների հետ, և առանց անհրաժեշտ գիտելիքների նա անկարող կլինի մասնակցել արտադրության պրոցեսին։ Անգամ իր կենցաղը վարելու համար ներկայումս մարդուց անհրաժեշտաբար պահանջվում են էլեկտրատեխնիկական, քիմիական և բազմաթիվ այլ գիտելիքներ, որոնք նա ձեռք է բերում նույնիսկ առանց որևէ կազմակերպված դասընթացի՝ ամեն օր շփվելով տնային-կենցաղային զանազան իրերի ու սարքավորումների։

Մարդու այժմյան կենցաղում կան նաև այլ աղբյուրներ, որոնք խսկական իմաստով և որոշակիորեն կազմակերպված մեծածավալ ինֆորմացիա են բերում։ Այդ աղբյուրներն են՝ հեռախոսը, լրագրերը, գիտա-մասսայական ու հատուկ նշանակությամբ հրատարակվող ամսագրերը, ռադիոն, հեռուստացույցը։ Կարևոր է նշել, որ մարդն ինքը զգալի ջանք չի գործադրում հիշյալ ինֆորմացիան ձեռք բերելու համար։ Նա միայն յուրացնում է այն, ինչ որ կազմակերպվում է իրենից դուրս և առանց իր միջամտության։

Չի կարելի չխոսել այս բոլորի հետ կապված մի կարևոր հանգամանքի մասին. դա հասարակական կեցության ու գիտակցության փոխհարաբերության հարցն է, որը մեր օրերում նոր երանգ է ստանում։

Մատերիալիստական ըմբռնմամբ հասարակական կեցությունը մարդկանց ապրելակերպի նյութական հիմքն է և, ամենից առաջ, նյութական բարիքների

* Տպագրվում է հարցադրման կարգով։ Խմբ.

արտադրանեղանակը, որը բնորոշում է նրանց գիտակցությունն ու հոգևոր կյանքը։ Հասարակական կեցությունը, իհարկե, միշտ էլ մնալով որպես մարդկանց գիտակցության հիմքն ու բնորոշողը, հետզհետե իր մեջ ներառնում է մարդկային ավելի ու ավելի շատ ինտելեկտուալ գործունեության արդյունքներ, որոնք դառնում են հասարակական ու անհատական կեցության բաղկացուցիչ մասը։ Փոխվում է հասարակական կեցության բովանդակությունը, մարդկանց գիտակցության նկատմամբ նրա բնորոշող դերի բնույթը։ Այսպիսով ամեն մի նոր սերնդի կյանքի ու գործունեության վրա իր դրոշմն է թողնում հասարակական այնպիսի կեցությունը, որն իր մեջ կրում է նախորդ սերունդների գիտակցական գործունեության անվիճելի ազդեցությունը։ Այլ կերպ ասած, հասարակական կեցությունը ավելի ու ավելի է դադարում կյանքի «զուտ» նյութական կողմ լինելուց, նա իր զգալի մասով դառնում է գիտակցական գործունեության արդյունք հանդիսացող կեցություն և, որպես արդյունք այդ բոլորի, նոր ձևով ու ինտենսիվությամբ է պայմանավորում մարդկանց գիտակցությունը։

Սա, ինչպես ասում են, հարցի մի կողմն է, օբյեկտիվ կողմը։ Ոչ պակաս կարևոր է հարցի մյուս կողմը, որը կայանում է նրանում, թե գիտակցական ի՞նչ հետևանքների է բերում հասարակական ու անհատական կեցության այս փոփոխություններով պայմանավորված բազմակողմանի զարգացումը, որն, ինչպես տեսանք, առայժմ ինչ որ չափով տարերային բնույթ ունի։

Առաջին, և թվում է, կարևոր հետևանքն այն է, որ աստիճանաբար փոխվում է մարդկանց գիտակցական վերաբերմունքը դեպի շրջապատող իրականությունը, ապա նաև դեպի իրենց սեփական անձը։

Այս տեսակետից ամենակարևորն, իհարկե, նյութական արտադրության նկատմամբ ունեցած վերաբերմունքի փոփոխությունն է։ Դժվար չէ նկատել, որ արտադրությունն այժմ չի դիտվում սոսկ որպես կենսամիջոցներ վաստակելու միջոց, ուր աշխատավորը հանդես է գալիս որպես մասնակիցը մի պրոցեսի, որը կազմակերպվել ու ղեկավարվում է ուրիշների (այսպես կոչված ընտրյալների) կողմից։ Մարդկանց համար կարևոր է դառնում նաև այն, թե այդ ամենը (արտադրությունն ու կենսական ամբողջ պրոցեսը) իրենց հոգևոր զարգացման ու ակտիվ դրսևորման համար ինչ նշանակություն ունի։ Մյուս կողմից մարդն ավելի հաճախ է ինքնախույզ հայացք ձգում իր ներքնաշխարհի վրա, փորձելով հմանալ սեփական կարողություններն ու այն հնարավորությունները, որոնք նրա զարգացման ու կենսագործունեության նախադրյալն են կազմում։

Անհատի համակողմանի զարգացման պրոբլեմը իր պրակտիկ լուծումը կստանա միայն կոմունիզմի պայմաններում, բայց արդեն այժմ ինչպես գործնական, այնպես էլ տեսության առումով մեծ կարևորություն է ներկայացնում այդ պրոբլեմի հետ կապված հարցերի քննարկումը։

Այս տեսակետից միանգամայն հասկանալի է այն սեռուն ուշադրությունը, որ վերջին տարիներս ուսումնական ու գիտամանկավարժական հաստատությունները և ամենատարբեր գիտահետազոտական կենտրոնները ցուցաբերում են մարդու ուղեղի, նրա ինտելեկտուալ հնարավորությունների, այդ հնարավորությունները դրսևորելու օրինաչափությունների, ինչպես նաև հաշվիչ էլեկտրոնային մեխանիզմների մեջ մարդու մտավոր գործունեությունն ընդօրինակելու և այլ պրոբլեմների նկատմամբ։



Անհատի համակողմանի զարգացման պրոբլեմն ունի նաև կարևոր տեսական նշանակություն այն պատճառով, որ նա անմիջականորեն շոշափում է անհատի ու հասարակության փոխհարաբերության հարցը։ Ինչպես հայտնի է, այդ փոխհարաբերության բովանդակությունը միշտ էլ կազմել է, մի կողմից, հասարակայնորեն կազմակերպված, հասարակայնորեն ընթացող արտադրությունն իր ծնած հարաբերություններով ու օրենքներով, մյուս կողմից, այդ հարաբերությունների ու օրենքների գործողության ոլորտը ներքաշված մարդկանց հնարավորությունները, այն, թե ինչ են տալիս նրանք հասարակությանը՝ ելնելով իրենց ֆիզիկական ու մտավոր նախադրյալներից։

Ինքնին հասկանալի է, որ անհատի ու հասարակության փոխհարաբերությունը փոխվում է ու զարգանում և ամեն մի նոր դարաշրջանում դրսևորվում նոր ձևով։ Մեր օրերում այդ փոխհարաբերությունը նոր բովանդակություն է ստանում, այն է, թե ժամանակակից ինդուստրիալ արդյունաբերությունն ու սոցիալ-քաղաքական պայմանները ի՞նչ են տալիս անհատին, նպաստու՞մ են անհատի հնարավորությունների դրսևորմանն ու զարգացմանը, և ապա ի՞նչ է սպասվում անհատից և, դրանից ելնելով, ինչպիսի՞ ուղղությամբ են փոխվում անհատի ու հասարակության փոխհարաբերությունները։

Հասկանալի է, որ սոցիալիզմի պայմաններում և նրանից դուրս այդ հարցերը և՛ պրակտիկորեն, և՛ տեսականորեն տարբեր ձևով են լուծվում։

Կապիտալիստական երկրներում այժմ հարգի է մի տեսություն, «ինդուստրիալիզմի դարաշրջան» տեսությունը, որն իր մեջ է առնում ամենատարբեր սոցիալական կառուցվածք ունեցող երկրներ՝ չափանիշ ընդունելով միայն այդ երկրների տեխնիկական զարգացածությունը։ Նպատակն այն է, որպեսզի ապացուցվի, թե քանի որ ամենուրեք դրությունը նույնն է, ապա հասարակական երևույթներն ու փաստերը գնահատելիս պետք է միայն մի հիմք ընդունել՝ «ինդուստրիալիզմը»։

Ըստ այդ տեսության, ինդուստրիալ դարաշրջանում «մասսայական մարդն» ձերբազերծվում է ստեղծագործելու անհրաժեշտությունից, մեքենայի կցորդը դառնալով, նա իր նման, իրարից չտարբերվող անհատների հետ միասին գորշ զանգված է կազմում։ Եվ քանի որ բարձր արտադրողականությունը ինդուստրիալիզմի դարաշրջանում կարող է բարձր կենսամակարդակ ապահովել, հիշյալ տեսությունը ոչ մի շարժառիթ չի տեսնում «մասսայական մարդու» և «մասսայական կուլտուրայի» զարգացման համար։

Նյու-Յորքում 1953 թ. հրատարակված Ինդուստրիալ կուլտուրայի ճգնաժամը գրքի հեղինակը գրում է. «Հոգևոր կուլտուրային անհայտացում է սպառնում զանգվածային քաղաքականության դարաշրջանում։ Մասսայական մարդը պահանջում է նախ և առաջ նյութական պահանջմունքների բավարարում ու զվարճալիքներ և, ամենից առաջ, այդ պահանջում է ինդուստրիալ ապարատից» (Б. П. Вышеславцев, Кризис индустриальной культуры, 1953, стр. 15)։

Այնուհետև, վկայակոչելով մարդկային ուղեղի և հոգեբանական ինչ որ այլ հետազոտություններ, հեղինակը, բուրժուական շատ այլ սոցիոլոգների հետ միասին, պնդում է, թե մասսայական մարդկանց մոտ նկատվող անկումային-պասսիվ հոգեվիճակը պայմանավորված է նրանց ինտելեկտուալ հնարավորությունների սահմանափակությամբ, որը բխում է, իբր, նրանց ուղեղի առանձնահատուկ կառուցվածքից։ «Չպետք է մոռանալ,—շարունակում է վե-

րը հիշված հեղինակը,— որ գիտակցության երկու ֆունկցիաները՝ մտածողությունն ու արժեքների զգացումը «արիստոկրատական» ֆունկցիաներ են, էլիտայի ֆունկցիաներ, որոնք խիստ սակավ են հասանելի մասսաներին, այդ վերջիններիս հոգեբանությանը միշտ էլ բնորոշ է եղել տրամաբանական մտքի բացակայությունը» (նույն տեղը, էջ 23)։

Այսպիսով, «ինդուստրիալիզմի» տեսությունը նախ սահմանափակում է անհատի զարգացման օբյեկտիվ անհրաժեշտությունն ու հնարավորությունը, ապա առաջ է քաշում նաև անհատի՝ իրեն («մասսայական մարդու») ինտելեկտուալ սահմանափակությունը, որը համարյա թե մարդու ուղեղի բիոլոգիական կառուցվածքի առանձնահատկությունն է կազմում։ Ահա թե ինչ պիտի հիշի, ըստ վերոհիշյալ տեսության, «մասսայական մարդը», երբ հարց է դնում իր հոգևոր զարգացման մասին։ Բայց ամենահետաքրքիրն այն է, պնդում է այդ տեսությունը, որ մարդը ամենուրեք նման սահմանափակությունների զոհ է, անկախ այն բանից՝ կապիտալիզմի՞, թե՞ սոցիալիզմի պայմաններում է ապրում։«Կապիտալիզմը,— գրում է Վիշեսլավցևը,—«մասսայական մարդու» համար «ինդուստրիալիզմի» նույնպիսի ծնունդ է, ինչպես և կոմունիզմը և նա (կապիտալիզմը—Ա. Զ.) զարգացնում է նույնպիսի վտանգավոր տենդենցներ, թեև բոլորովին ոչ նույն չափով, քանի որ կապիտալիզմի բոլոր տեսակներից ամենավատթարը պետական կապիտալիզմն է և, հատկապես, այն տոտալիտար ձևով, ինչպիսին կարելի է տեսնել Սովետական Միությունում» (նույն տեղը, էջ 7, ընդգծումը մերն է—Ա. Զ.)։

Գուցե չարժեր կանգ առնել այս հիմնազուրկ ու արտառոց պնդումների վրա, սակայն բանն այն է, որ նման մտքերը ինչ որ ձևով շարունակում են գոյություն ունենալ և նորանոր ձևերով դրսևորվել տարբեր երկրներում, կազմելով հակակոմունիզմի անհրաժեշտ մասը։ Այսպես, ֆրանսիացի հայտնի սոցիոլոգ Ռայմոն Արոնը «Պրյով» ամսագրում վերջերս հրատարակած իր հոդվածում նորից առաջ է քաշում «ինդուստրիալ հասարակության» տեսությունը։ Ըստ Արոնի սոցիալիզմն ու կապիտալիզմը իրենց տնտեսական կառուցվածքով («ինդուստրիալիզմ») իբր ավելի ու ավելի են նմանվում իրար և քանի որ, ինչպես պնդում է Արոնը, կապիտալիստական հասարակարգն այժմ գաղափարազրկման պրոցես է ապրում, ապա նույնպիսի վիճակ է սպասվում նաև սոցիալիստական հասարակարգին։

Այս բոլորի հետ կապված ավելի ևս ակտուալ է դառնում «ինդուստրիալիզմի» ու հասարակական այլ երևույթների հետազոտումը սոցիալիզմի պայմաններում։ Ակներև է, որ դրա հետ սերտորեն առնչվում է անհատների համակողմանի զարգացման նախադրյալների քննարկման հարցը։

Մարդու բազմակողմանի զարգացումը ընձեռում է մեծաքանակ ու բազմազան գիտելիքներ և սեփական կարողությունների ու հնարավորությունների իմացում, որոնք հավասարապես կարևոր են մարդու հետագա համակողմանի զարգացման համար։

Երբ խոսք է լինում մարդու համակողմանի զարգացման մասին, պետք է նկատի ունենալ մարդու բնատուր հնարավորությունների չափի ու սահմանների հարցը, այն, թե ինչպես է կառուցված նրա օրգանիզմը՝ հատկապես նրա ուղեղը, և թե ինչպես են դրսևորվում ու կիրառվում այնտեղ պարփակված հնարավորությունները։ Դա էլ հենց կլինի համակողմանի զարգացման բնատուր անձնական նախադրյալը։ Այս կապակցությամբ, թվում է, ավելորդ չի



լինի մի դիտողություն. խոսելով մարդու ֆիզիկական ու մտավոր բոլոր հնարավորությունների դրսևորման ու զարգացման մասին, մեր միտքն ակամա ուղղվում է նաև դեպի մարդկային չար ու նեգատիվ հակումներն ու դեմ առնում մի շարք այլ հարցերի, որոնք առաջին հայացքից անիրագործելի են դարձնում մարդու համակողմանի զարգացման պրոբլեմը։ Այսպես. կա՞ն արդյոք մարդու մոտ չար հակումներ, եթե այո՛, ապա բնատո՞ւր են, թե՞ կենսապայմաններից կախված, և, վերջապես, եթե, այնուամենայնիվ, ինչ որ ձևով կան այդպիսի հակումներ, ինչպե՞ս պիտի լուծվի դրանց հարցը անհատի համակողմանի զարգացման պրոցեսում։

Այս հարցերին պատասխանելիս պետք է մշտապես ելակետ ունենալ ոչ թե անհատին իր առանձնահատկություններով, այլ այն փաստը, որ անհատը, որքան էլ որ նա անհատ է ու առանձնահատուկ, այնուամենայնիվ միայնակ չէ, նա գոյություն ունի միայն հասարակության մեջ ու հասարակության շնորհիվ։ Այն բոլորի համար, ինչով օժտված է անհատը, նա պարտական է հասարակությանը։ Դրանում է կայանում մարդու և հասարակության միասնությունն ու նմանությունը։

Բայց հետաքրքրականն այն է, որ անհատը հասարակությունից վերցրած ամեն ինչ չի պահպանում իր հասարակական ձևով, այլ բեկելով իր անհատականության մեջ, ամեն ինչի վրա իր անհատականության դրոշմն է դնում։ Նա միշտ մնալով որպես հասարակության արդյունք, շատ հաճախ դրսևորում է այնպիսի հատկանիշներ, որոնք հակադրվում են հասարակության շահերին։ Հասարակությունն էլ, իր հերթին, կազմված լինելով անհատներից, օժտված է այնպիսի հատկություններով, որ ոչ մի անհատ, առանձին վերցրած, չի կարող ունենալ։ Դա, այսպես ասած, համընդհանուր հասարակական շահերի առկայությունն է և հարկադրման այն անդիմադրելի ուժը, որով հասարակությունն իր շահերին է ենթարկում ամեն մի առանձին երևույթ, մարդկային ամեն մի անհատականություն։ Դրանում էլ դրսևորվում է անհատի ու հասարակության հարաբերությունների հակասական կողմը, որ անընդհատ լուծվում ու նորից է վերածնվում, որի ընթացքում միշտ էլ գերակշռող է հանդիսանում հասարակությունը։ Եթե հաշվի առնենք այս և ապա այն հանգամանքը, որ խոսքը դասային ու դասակարգային հարաբերություններից ազատ հասարակության մասին է, ապա կարելի է պնդել, որ այսպիսի պայմաններում անհատը ի վերջո կկարողանա դրսևորել ու, մանավանդ, զարգացնել իր այնպիսի հնարավորությունները, որոնք, վերջին հաշվով, ունեն հասարակայնորեն օգտակար հատկություն։

Այժմ, եթե նորից անդրադառնանք հետազոտվող հարցին, ապա պարզ կդառնա, որ անհատի համակողմանի զարգացման համար, բացի նրա բնատուր անձնական հնարավորություններից, անհրաժեշտ են նաև այլ, իրենից դուրս գտնվող նախադրյալներ։ Վերը շարադրվածից երևում է, որ այդպիսիք կարող են լինել այն հասարակությունն ու հասարակական հարաբերությունները, որոնք իրենց գոյության ու զարգացման համար ոչ միայն կարիք են զգում անհատների համակողմանի զարգացման, այլև անհրաժեշտ պայմաններ են պարունակում այդպիսի զարգացման համար, միաժամանակ բացասելով, այսպես ասած, նեգատիվ հակումների առաջացումն ու դրսևորումը մարդկանց մոտ։ Մի կողմից մարդու բնատուր անձնական հնարավորությունները, մյուս կողմից սոցիալական այն միջավայրը, ուր ընթանում է նրա

կյանքը,— ահա անհատի համակողմանի զարգացման այն նախադրյալները, որոնք, մեր կարծիքով, վճռող են այդ հարցում։

Ի՞նչ են իրենցից ներկայացնում մարդու բնատուր-անհատական հնարավորությունները։ Համարժե՞ք են արդյոք դրանք տարբեր անհատների մոտ, որ կնշանակի նաև, թե համազոր կլինե՞ն արդյոք համակողմանիորեն զարգացած մարդկանց ունակություններն ու գործունեության արդյունքները։

Առաջին ամենակարևոր հետևությունն այն է, որ պրակտիկորեն առողջ բոլոր մարդկանց ուղեղի ինտելեկտուալ հնարավորություններն ունեն միատեսակ բնութագիր։ Այդ հետևության ամենաակներև հիմքն այն է, որ ֆիզիոլոգիապես առողջ բոլոր մարդկանց ուղեղներն իրենց կառուցվածքով, գործողության սկզբունքներով ու օրենքներով, ինչպես նաև ներքին հնարավորությունների դրսևորման եղանակներով համընկնում են միմյանց։

Բացի այդ ակներև հիմքից, գիտությանը հայտնի են շատ այլ տվյալներ, որոնք հաստատում են մարդկային ուղեղի ձևավորման ու բիոմորֆոլոգիական զարգացման ընդհանրությունը ժամանակակից բոլոր ցեղերի, ժողովուրդների ու ռասաների մոտ։ Ինչո՞վ է պայմանավորված այդ ընդհանրությունը։ Նախ, պետք է նշել, որ մարդն առաջ է եկել ոչ թե ամայի տեղում ու միանգամից, այլ, ինչպես նշում է Չ. Դարվինը, որպես կենդանական աշխարհի նախընթաց ողջ զարգացման բնական շարունակություն։ Նույնիսկ այժմյան վիճակում մարդկային ուղեղն իր կառուցվածքով ու գործողության սկզբունքով ճշգրիտ կերպով վկայում է իր կենդանական ծագումը։ «Դարվինից հետո նրա բազմաթիվ հետևորդները նմանապես մատնանշել են, որ ոչ միայն ըստ անատոմա-ֆիզիոլոգիական հատկանիշների, այլև ըստ հոգեկոր գործունեության զարգացման, անդունդ գոյություն չունի կենդանիների և մարդու միջև և որ մարդանման կապիկները, իրենց մտավոր կարողություններով մոտենում են մարդուն» (Г. З. Рогинский, Развитие мозга и психики, Ленинград, 1949, стр. 45)։ Այլ կերպ ասած, կենդանական աշխարհի զարգացման ընդհանուր օրինաչափություններն են, որ պայմանավորել են մարդու առաջացումը, «նախապատրաստելով» նաև նրա ուղեղը։

Այսպես, գոյություն ունի կարևորագույն բնական օրենք, ըստ որի կենդանու օրգաններն իրենց կառուցվածքով ու գործողության սկզբունքներով պայմանավորված են այն ֆունկցիայով, որ նրանք կատարում են։ Եվ քանի որ տվյալ բիոլոգիական տեսակի համար միջավայրի պայմաններն ունեն մոտավորապես միատեսակ տևականություն, ներգործության միատեսակ ուժ ու ակտիվություն, ապա անխուսափելի է նաև տվյալ տեսակի բոլոր անհատների կառուցվածքի միասնությունն ու ընդհանրությունը, քանի որ նրանք բոլորն էլ ենթարկվում են միատեսակ պայմանների ազդեցության։ Ավելին, ոչ թե նախ տեսակն է առաջանում, ապա նոր միայն միասնություն է ծագում այդ տեսակը կազմող անհատների կառուցվածքի մեջ, այլ, ընդհակառակը, անհատների կառուցվածքի միասնությունից է (միջավայրի միասնության շնորհիվ), որ ձևավորվում է տվյալ տեսակը։ Այս կապակցությամբ տեղին է հիշել բիոլոգիական միատեսակացումը («ունիֆիկացիան»), այսինքն՝ այն, որ եթե անհատը ծնվելով չի ունենում միջավայրին հարմարվելու՝ տվյալ տեսակին հատուկ որևէ գիծ, նա ոչնչանում է։ Մնում են միայն «նմանները»։

Այս ամենը վերաբերում է նաև մարդու նախահայրերին։ Սա, այսպես ասած, հարցի բիոլոգիական ասպեկտն է։ Սակայն մարդու, հետևապես նաև



նրա ուղեղի ձևավորումը ունի նաև այլ կողմ, այսպես ասած սոցիալական ասպեկտ։ Իրենց բիոլոգիական էվոլյուցիայի ինչ-որ աստիճանից սկսած մարդու նախահայրերը ստիպված են եղել գոյությունը պահպանելու համար լուծել այնպիսի խնդիրներ, որոնք օտար են մնում կենդանական ամբողջ աշխարհին։ Սպառելով բնության մեջ պատրաստի վիճակում գտնվող կենսամիջոցները, հոմինիդները (այն բարձրագույն կենդանիները, որոնք այժմյան մարդու անմիջական նախահայրերն են հանդիսացել—Ա. Զ.) ստիպված են եղել հեռանալ տվյալ միջավայրից կամ էլ մնալով, ինչ որ կերպ ստեղծել անհրաժեշտ կենսապայմաններ՝ վերափոխելով մինչ այդ անօգտագործելի բնական նյութերը, այսինքն՝ արտադրել նյութական բարիքներ։ Աշխատելու կարողությունը հանդես է գալիս ոչ թե արդեն ձևավորված, այլ նոր միայն ձևավորվող մարդու մոտ և այդ նույն ձևավորման (այսինքն՝ մարդու ձևավորման) կարևորագույն գործոնը հանդիսանում։

Այսպիսով, մարդու օրգանիզմի, նրա ուղեղի, հետևապես և նրա բոլոր ինտելեկտուալ կարողությունների ուսումնասիրությունն իր հիմքում ելակետ պետք է ունենա աշխատանքի ձևավորող և դեռ ավելին՝ պայմանավորող ֆունկցիան մարդակազմության պրոցեսում։

Այդ կապակցությամբ պետք է նշել, որ աշխատանքը, ուստի նաև նրա հետևանքները, որպես կարևորագույն միասնական պայման, հավասարապես վերաբերվել են բոլոր այն բարձրագույն կենդանիներին, որոնք իրենց զարգացման ընթացքում ոտք են դրել «մարդկային» ուղին։ Այլ կերպ ասած, նախամարդիկ մարդու են վերածվել միասնական ձևով՝ մղված լինելով միջավայրի միասնական պայմաններով, բնական էվոլյուցիայի, ապա նաև սոցիալական կյանքի ընդհանուր օրենքներով և այլն, և որ սոցիալական «ասպեկտն», այսպիսով, մարդու և նրա ինտելեկտի ձևավորման պրոցեսում միաձուլվել է այդ պրոցեսի ֆիզիոմորֆոլոգիական «ասպեկտին»։ Այս տեսակետից չի կարելի գոնե համառոտակի կանգ չառնել լեզվի նշանակության վրա։

Իրենց առաջացման ու ձևավորման ժամանակաշրջանում լեզուն ու բառերը, նրանց արտասանման ու ընկալման եղանակները պետք է միատեսակ բնույթ ունենային նախամարդկանց կոլեկտիվների բոլոր անհատների համար։ Չէ՛ որ միայն այդ ձևով լեզուն կարող էր իրագործել հաղորդակցության իր ֆունկցիան և գիտակցության դրսևորման միջոցն ու ձևը դառնալ, ինչպիսին որ նա կա իրոք։ Այդ պրոցեսի հետևանքով է նաև, որ նախամարդկանց բոլոր անհատների ուղեղում բնականորեն առաջացել են միատեսակ փոփոխություններ, որոնք հետագայում կազմել են մտածողության ու լեզվի մշտական ֆիզիոլոգիական հիմքը։

Մարդաբանական բազմաթիվ տվյալներ ապացուցում են, որ իր ձևավորումից այս կողմ մարդու կառուցվածքը, այդ թվում նաև ուղեղը չեն ենթարկվել որևէ զգալի փոփոխության։ «Նեանդերթալյան մարդու ստադիայից հետո սկսվում է մարդկային էվոլյուցիայի էտապը։ Առաջանում է ժամանակակից տիպի մարդը։ Եթե այդ մարդը կարողանար երևալ ժամանակակից քաղաքի փողոցներում, նա իր կառուցվածքով չէր կարող զատվել մեզանից որևէ մեկից» (Г. З. Рогинский, Наука о происхождении человека, 1955, стр. 16)։ Բայց եթե իրոք այդպես է, ապա ինչով է բացատրվում մարդու և մարդկության բուռն զարգացումը համեմատաբար կարճ ժամանակաշրջանում։

Ի տարբերություն մնացած կենդանիների, որոնց զարգացումը տեղի է

ունենում օրգանիզմի անընդհատ փոփոխությամբ (որպես արդյունք փոփոխված միջավայրի), մարդկային զարգացումն ընթանում է նրա սոցիալական կյանքի փոփոխմամբ, որի մեջ կարևորագույն դեր են խաղում ինտելեկտուալ կարողությունների դրսևորումն ու կիրառումը՝ աշխատանքային գործունեության հետ կապված։ Շատ կարևոր է ճիշտ հասկանալ այս հարաբերությունը։ Մարդու մոտ այսօր էլ նոր բացվող ու բացահայտվող հնարավորությունները նոր են ոչ թե բացարձակ իմաստով, այսինքն՝ ոչ թե արդյունք են ուղեղի օրգանական փոփոխությունների, այլ ուղեղում արդեն իսկ պարունակվող հնարավորությունների նոր դրսևորման։ Մարդկային ուղեղն ինչ որ ժամանակ, ինչ որ պատճառով մտածելու ընդունակություն ձեռք բերելով, կարողանում է այնուհետև մտածել ու ըմբռնել բոլորովին այլ խնդիրներ ևս (որոնք կարևոր նշանակություն են ստանում), լուծել նոր պրոբլեմներ, դրա համար բնավ էլ կարիք չզգալով որևէ օրգանական փոփոխության։ Այլ կերպ ասած, իր ձևավորումից հետո մարդկային ուղեղի ինտելեկտուալ հնարավորությունների դրսևորման համար կարևորն այն պրոբլեմներն են, որոնց լուծման համար ուղեղն ստիպված է լինում նոր ձևով վերադասավորել իր ներքին հնարավորությունները։ Դա նման է այն բանին, թե ինչպես ձեռքի տակ եղած գունագեղ քարերի բեկորներից կարելի է ստեղծել ամենատարբեր երանգներ ու գծագիր ունեցող մոզաիկ պատկերներ։

Դա սոսկ հայտարարություն չէ։

Նման պնդման համար որպես անհերքելի ապացույց կարելի է բերել այսօրվա փաստեր։ Այսպես, անվիճելի է, որ վերջին հարյուրամյակի ընթացքում մարդկությունը վիթխարի առաջխաղացում է ապրել տնտեսության, տեխնիկայի ու գիտության բնագավառներում, մի բան, որ աներևակայելի է առանց մարդկային հսկայական զանգվածների ակտիվ մտավոր ստեղծագործական աշխատանքի։ Բայց նույնքան անվիճելի է նաև այն, որ մարդկային ուղեղն այդ նույն ժամանակաշրջանում չի կրել շատ թե քիչ նշանակալի փոփոխություն։

Սրանք են անհատների համակողմանի զարգացման բիոմորֆոլոգիական նախադրյալները։

Շարադրանքից երևում է, որ դրանք անխառն չեն, որ այդ նախադրյալները իրենց բնույթով ու հենց գոյությամբ մեծապես պայմանավորված են մարդու կյանքի սոցիալական կողմով։ Ուստի պարզ է, որ այդքան մեծ նշանակություն ունենալով մարդկային ուղեղի ձևավորման մեջ, սոցիալական կյանքի պայմանները կարևորագույն նախադրյալ են հանդիսանում նաև ուղեղի հնարավորությունների դրսևորման ու կիրառման համար, որ այդ պայմանները իրենք էլ վճռական նախադրյալ են անհատների համակողմանի զարգացման համար։ Այդ պատճառով նրանք պետք է թեկուզև համառոտակի, բայց առանձին քննարկման նյութ դառնան։

Անհատի համակողմանի զարգացման, ինչպես և հասարակական կյանքի մյուս բոլոր երևույթների համար ամենավճռական գործոնը նյութական բարիքների արտադրությունն է, ավելի ճիշտ՝ արտադրաեղանակը։ Մարդկանց վրա ազդում, նրանց դեպի զարգացում կամ լճացում են մղում ոչ միայն նյութական բարիքների արտադրության, բաշխման ու սպառման եղանակը, այլև այստեղից ծագող հարաբերությունների ու կապերի ամբողջությունը, որը տվյալ հասարակարգի բնորոշ սոցիալական հյուսվածքն է կազմում։ Այս փաս-



տից ելնելով, ամեն մի արտադրաեղանակ, բացի արդեն հայտնի պատմամատերիալիստական ու տնտեսագիտական բնութագրումից ու դասակարգումից, թվում է, պետք է ունենա նաև, այսպես ասած, բարոյական արժեքավորում ևս, այսինքն՝ որքանով մարդասիրական է այս կամ այն արտադրաեղանակը։

Մասնավոր սեփականության վրա հիմնված արտադրությունն իր գոյության համար չի «ենթադրում» նրա մեջ ներգրավված աշխատավորական մասսաների և այդ մասսաները կազմող անհատների զարգացումը ինչ որ սահմանափակ շրջանակներից այն կողմ։ Այդպիսի պայմաններում արտադրության ոլորտներից չեն առաջանում մտավոր գործունեության այնպիսի պահանջմունքներ, որոնց բավարարման (այսինքն՝ մտավոր աշխատանքի) համար անհրաժեշտ լիներ հասարակության բոլոր անդամների գործունեությունը։ Իսկ եթե մարդն իր առաջ չի տեսնում այնպիսի պրոբլեմներ, որոնց լուծումը պահանջեր նրա բոլոր հնարավորությունների շարժումն ու դրսևորումը, ապա խոսք չի կարող լինել նրա համակողմանի զարգացման մասին։

Իսկ ի՞նչ է տալիս (ի՞նչ կարող է տալ) մարդուն արտադրամիջոցների հանրային սեփականությամբ պայմանավորված արտադրությունը և ինչո՞ւմն է կայանում այդպիսի արտադրության վրա հիմնված հասարակարգի մարդասիրական արժեքը։

Ամեն մի արտադրության ելակետը մարդկանց պահանջմունքներն են, որոնք միաժամանակ արտադրության կազմակերպման ներքին գործոններն են ու նրա նպատակը։ Արտադրված նյութական բարիքները բարիք են հենց այն պատճառով, որ նրանք արտադրվելու ժամանակ նախատեսվել են մարդկային որևէ պահանջմունք բավարարելու համար։ Սա հարցի, իհարկե, պարզեցված ըմբռնումն է։ Իրականում պահանջմունքների՝ արտադրության ոլորտ հասնելու և ապա արտադրված բարիքները սպառողներին հասցնելու ուղին անցնում է հասարակական արտադրական բարդ հարաբերությունների միջով, որոնցից ամենակարևորը և վճռականը այն է, թե ում են պատկանում արտադրամիջոցները։ Արտադրամիջոցների հանրային սեփականության վրա հիմնըված արտադրությունն իր կազմակերպման ու գոյության համար որպես ներքին գործոն և որպես նպատակ «ենթադրում է» ոչ թե աբստրակտ մարդկային պահանջմունքներ, ինչպես ամեն մի այլ արտադրություն, այլ միանգամայն ռեալ մարդկանց ու նրանցից կազմված հասարակության ռեալ պահանջմունքներ։ Չէ՛ որ արտադրամիջոցները, որոնք պիտի արտադրեն այդ պահանջները բավարարող բարիքները, պատկանում են այդ մարդկանց ու նրանցից կազմըված հասարակությանը։

Մյուս կողմից, արտադրամիջոցների հանրային սեփականության շնորհիվ հասարակության ամեն մի անդամ նյութական բարիքների արտադրությունը դիտում է (ավելի ճիշտ կլիներ ասել՝ հնարավորություն ունի դիտելու) որպես իրենը։ Նրա կյանքն ու ամեն կարգի գործունեությունը հնարավոր է միայն այդպիսի արտադրության ոլորտում։ Նա միայն այնտեղ կարող է միջոցներ ձեռք բերել՝ բավարարելու իր պահանջմունքները, որոնք, ինչպես հայտնի է, բաժանվում են երկու մասի՝ նյութականի ու հոգևորի։ Այսպիսի պայմաններում, որպես օբյեկտիվ օրինաչափ երևույթ, առաջ է գալիս հանրային ու անհատական շահերի զուգակցում անկախ այն բանից՝ գիտակցո՞ւմ են և, նույնիսկ, ցանկանո՞ւմ են անհատները այդ զուգակցումը, թե՞ ոչ, թեև

պարզ է, որ նման ձևով կազմակերպված իրականությունը գիտակցման համար մշտական հնարավորություն է ընձեռում ամեն մի անհատի:

Նման սոցիալական պայմաններում ամեն մի անհատ շահագրգռված է (կրկնում ենք՝ անկախ այն բանից՝ գիտակցո՞ւմ է նա, թե՞ ոչ) հանրային սեփականության վրա հիմնված արտադրության գոյությամբ ու զարգացմամբ: Այս բոլորի շնորհիվ սոցիալիստական արտադրաեղանակը և նրան հատուկ հարաբերությունները մշտական օբյեկտիվ խթան են ամեն մի առանձին մարդու բնատուր կարողությունները դրսևորելու և զարգացնելու համար:

Սոցիալիստական արտադրաեղանակը մի առանձնահատկություն ևս ունի, որը խիստ կարևոր է անհատների համակողմանի զարգացման տեսակետից:

Հանրային սեփականության հիման վրա կազմակերպված արտադրությունն, ամեն մի այլ արտադրության նման, բնականորեն ծառայում է իր տերերի շահերին: Բայց քանի որ այստեղ «տերը» ամբողջ հասարակությունն է, ապա օբյեկտիվորեն բացառվում է մարդկային ինչ որ խմբին ձեռնտու թեքումը արտադրության մեջ: Դրա անհրաժեշտ հետևանքը պիտի համարել արտադրության օբյեկտիվ, համամասնական ու պլանաչափ բնույթը, որի վրա էլ հիմնված է տնտեսության ու հասարակական կյանքի մյուս կարևոր կողմերի գիտակցական պլանավորումը:

Տնտեսության այս պլանաչափության ու պլանայնության շնորհիվ արտադրության ծայրամասային օղակները և այնտեղ ներգրավված մարդիկ կապվում են կենտրոնական օղակների, ապա նաև հասարակարգի համընդհանուր խնդիրների հետ: Դրանով օբյեկտիվորեն հնարավորություն է ստեղծվում մարդկանց համար գիտակցելու և՛ հասարակական համընդհանուր խնդիրների բնույթը, և՛ իրենց տեղն ու դերը այդ խնդիրներն իրագործելու, ապա նաև ամբողջ հասարակական առաջընթացի մեջ:

Սակայն, ինչպես շարադրածից երևում է, մի բան է այդ նախադրյալների առկայությունը որպես օբյեկտիվ, անհատներից անկախ փաստ, օգտագործման իր բազմաթիվ հնարավորություններով, մի այլ բան, թե ինչպես են իրոք օգտագործվում այդ նախադրյալները: Այս կապակցությամբ կարևոր է այն, թե բոլորի համար ընդհանուր նշանակություն ունեցող այդ նախադրյալները ի՞նչ միջոցով և ինչպե՞ս են ընկալվում ամեն մի անհատի կողմից: Այլ կերպ ասած, հարցն այն է, թե ինչպե՞ս են համընդհանուր համարվող նախադրյալները տրանսֆորմացիայի ենթարկվում և դառնում անհատական:

Այսպիսով, նորից է մեջտեղ գալիս անհատի և հասարակության, այսինքն՝ եզակիի և համընդհանուրի հարաբերության հարցը, որի լուծումը սոցիալիստական հասարակարգում կախված է ոչ միայն այն բանից, թե հասարակությունը և անհատներն առանձին վերցրած ինչ են ներկայացնում իրենցից, այլև թե գիտակցական ինչպիսի՛ միջոցներ ու միջոցառումներ են կիրառվում նրանց փոխհարաբերությունները մաքսիմալ արդյունավետ դարձնելու համար: Իհարկե, կարևոր է նախ և առաջ այն, թե մարդիկ ցանկանո՞ւմ են արդյոք հասարակության հետ ունենալ այնպիսի փոխհարաբերություններ, որոնք լայնորեն նպաստեին անհատական ինտելեկտուալ և այլ հնարավորությունների դրսևորմանն ու համակողմանի զարգացմանը:

Անհատի հնարավորությունների դրսևորման ու համակողմանի զարգացման հարցը պրակտիկորեն լուծելիս պետք է մշտապես ելնել այն օրինաչա-



փությունների իմացումից, որոնց շնորհիվ առաջացել և զարգացել են այդ հնարավորությունները:

Ձևավորվելով արտաքին միջավայրը ճանաչելու, այդ միջավայրում կողմնորոշվելու և այնտեղ մարդկային գործունեությունը ծավալելու ընթացքում, մարդկային ուղեղն այնուհետև ընդունակ է դարձել իր ֆունկցիան դրսևորելու նաև ամեն մի նոր պրոբլեմի կապակցությամբ, որն այս կամ այն չափով կենսական նշանակություն է ձեռք բերել մարդու համար:

Հասարակության բոլոր անդամների համակողմանի զարգացման համար անհրաժեշտ է, որպեսզի ամեն մի անհատ իր առջև դրված տեսնի շրջապատի սոցիալական միջավայրից բխող այնպիսի խնդիրներ, որոնք հասարակության և, իհարկե, իր համար կենսական կարևորություն ունենան, և որոնց լուծումը պայմանավորի նրա բոլոր հնարավորությունների շարժումն ու դրսևորումը: Այստեղից հետևում է նաև, որ հասարակությունը կարիք պիտի ունենա մարդկանց անհատականության դրսևորման ու մաքսիմալ արդյունավետությամբ կիրառման:

Պարզ է, որ այս բոլորն արագ իրագործվող բան չէ, այլ միայն աստիճանաբար: Երբ հասարակությունը, իրոք, կկարողանա ծավալել մարդկային ունիվերսալ գործունեության ասպարեզ, ուր ամեն ոք հնարավորություն կունենա դրսևորել հասարակությանը օգտակար իր բոլոր առանձնահատկությունները, ապա համակողմանի զարգացումը հանդես կգա որպես հասարակության կենսագործունեության օբյեկտիվ անհրաժեշտ արդյունք և որպես հասարակության ամեն մի անդամի բնորոշ հատկանիշ:

Մի այլ հանգամանք ևս կարևոր նշանակություն է ձեռք բերում մարդկանց համակողմանի զարգացման տեսակետից:

Հայտնի է, որ այդպիսի զարգացման համար մեծ նշանակություն ունի աշխատանքի ու հանգստի մեջ չմտնող որոշակի ժամանակը, որը աճելու տենդենց ունի: Արտադրության մեջ նոր հզորությունների ներմուծումը, էլեկտրոնային հաշվիչ սարքավորումների կիրառումն ու արտադրական պրոցեսների ավտոմատացումը, սոցիալիստական արտադրաեղանակի պայմաններում հնարավոր է դարձնում մարդու աշխատանքային զբաղվածության աստիճանական կրճատումն ու բեռնվածության իջեցումը: Դրա կարևորագույն լրացումը պիտի համարել հնգօրյա աշխատանքային շաբաթի անցնելու որոշումը, որը հնարավորություն է ընձեռում ի մի հավաքել վեց օրերում «ցրված» մեկական ազատ ժամերը, որոնք ինքնըստինքյան համարյա ոչինչ չեն կարող փոխել, բայց կիրակի օրվա հետ երկու ազատ օր կազմելով, մեծ նշանակություն են ձեռք բերում մարդկանց հանգստի և ինքնազարգացման համար:

Այստեղից տրամաբանորեն բխում է նաև նպատակայնորեն կազմակերպված կոմպլեքս հաստատությունների ու միջոցառումների անհրաժեշտությունը (բացի ուսումնականից, օրինակ, արտադրության նորագույն տեխնոլոգիայի, գիտատեխնիկական, սպորտային, երաժշտական և այլ բնույթի), որոնք հաշվի առնեին մարդկային հասակային տարբերություններն ու հնարավորություն ստեղծեին ամեն մեկի համար՝ դրսևորելու իր անհատական հակումներն ու առանձնահատկությունները:

Ս. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

ՀՍՍՀ Մինիստրների սովետի պրոֆ–տեխնիկական կրթության կոմիտեի նախագահ

# ՈՐԱԿՅԱԼ ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ԿԱԴՐԵՐԻ ՊԱՏՐԱՍՏՈՒՄԸ ՆՈՐ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ

ՄԵՐ երկրում արդյունաբերության բուռն աճը պահանջում է տեխնիկապես գրագետ, որակյալ բանվորական կադրեր, որոնց պատրաստմամբ զբաղվում է պրոֆտեխնիկական կրթության սիստեմը։

ՍՄԿԿ XXIII համագումարին տրված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ նշվեց, որ արդյունաբերության զարգացման ու գյուղատնտեսության վերելքի վիթխարի ծրագիրը կուսակցության առջև խնդիր է դնում բանվորների, գյուղի աշխատավորների շարքերը մշտապես համալրել որակյալ կադրերով։ Այդ պատասխանատու գործը դրված է պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանների վրա։ Հնգամյակում ուսումնական այդ հաստատությունները ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի համար պատրաստելու են ավելի քան 6 միլիոն երիտասարդ որակյալ բանվոր։ «Մենք վստահ ենք, ասում է Լ. Ի. Բրեժնևը,—որ վարպետները, դասատուները, պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության սիստեմի բոլոր աշխատողները պատվով և արժանապատվությամբ կկատարեն իրենց պարտքը»։

Կուսակցության XXIII համագումարում ընդունած հնգամյա պլանի դիրեկտիվներում ասված է՝ ընդլայնել որակյալ բանվորների պատրաստումը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի համար։ Պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնական հաստատություններում սովորողների ընդունելությունը 1970 թվականին հասցնել 1.700—1.800 հազարի (այս անցած հինգ տարիների միջինից 1,7—1,8 անգամ ավելի է)։

Այս հնգամյակում հանրապետության արդյունաբերությունն ու գյուղատնտեսությունը որակյալ տեխնիկական կադրերով ապահովելու համար Հայաստանի պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանները պետք է պատրաստեն (150 մասնագիտությամբ) ավելի քան 60 հազար որակյալ բանվոր, որը գրեթե երկու անգամ ավելի է, քան անցած հինգ տարիներին։ Նախատեսվում է մեծ թվով որակյալ կադրեր տալ քիմիական, էլեկտրավակուումային ու թեթև արդյունաբերությանը, էլեկտրոնային հաշվիչ մեքենաների և բարձր կարծրության նյութերի ու արհեստական ալմաստի արտադրության, էլեկտրամեքենաշինության, հաստոցաշինության, ռադիոէլեկտրոնիկայի, հեռուստատեսության, շինարարության և արտադրական բազմաթիվ այլ ձեռնարկություններին։ Բավական է հիշատակել, որ հանրապետության պրոֆտեխնիկական ուսումնարանները միայն այս ուսումնական տարում կընդունեն 10.500 պատանիներ ու աղջիկներ, որից 4500-ը միջնակարգ կրթությամբ։ Հայտնի է, որ այս տարի հանրակրթական միջնակարգ դպրոցների X և XI դասարանները միաժամանակ ավարտում են մոտ 35 հազար հոգի։

Ընթացիկ ուսումնական տարում Երևանում, Աբովյանում, Կիրովականում, Կամոյում արտադրական համապատասխան ձեռնարկությունների բազայի վրա բացվում են նոր տեխնիկական ուսումնարաններ, որտեղ մասնագետ կադրեր են պատրաստվելու էլեկտրակապի, ռադիոտեխնիկայի, հեռուստատեսության, հաստոցաշինության և ճշգրիտ սարքերի արտադրության գծով։ Վերոհիշյալ քաղաքներում ուսումնական շենքերի ու հանրակացարանների շինարարությունն արդեն ավարտված է, սկսված է արհեստանոցների, կաբինետների ու լաբորատորիաների կահավորումը։ Միաժամանակ կոմպլեկտավորվում է պարապող վարպետների և դասատուների կազմը։

Մասնագիտական կադրերի պատրաստումը սերտորեն առնչվում է հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացման կոնկրետ խնդիրների հետ։ Հնգամյակում ավարտվելու է Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի կառուցումը։ Կոմբինատին մեծ թվով մասնագետ կադրեր են հարկավոր։ Հրազդանում արդեն գործում է պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարան, որը պատրաստելու է որակյալ բանվորներ։ Կիրովականի արհեստական մետաքսաթելի գործարանի շինարարությանը զուգընթաց տեղում ժամանակին կազմակերպված պրոֆտեխնիկական ուսումնարանը բանվորական կադրեր պատրաստեց։ Ուսումնարանի սաները արտադրական պրակտիկան անցկացրին Սերպուխովի համանուն գործարանում։ Եվ պատահական չէ, որ գործարանը շահագործման հանձնելու առաջին իսկ օրից ուսումնարանի մի քանի հարյուր շրջանավարտներ դարձան բարդ ագրեգատների լավագույն սպասարկողները։

Երևանում դեռևս չի ավարտվել քիմիական ռեակտիվների գործարանի և դեղագործական ֆաբրիկայի շինարարությունն ու կահավորումը, մինչդեռ դրանց համար Երևանի № 2 տեխնիկական ուսումնարանը արդեն կադրեր է պատրաստում։

Սակայն պետք է խոստովանել, որ մասնագիտական կադրերի պատրաստումը. խիստ ետ է մնում արտադրական ձեռնարկությունների գործարկումից։ Հաճախ գործարանի կամ ֆաբրիկայի կառուցումն ավարտելուց հետո են միայն որոշ ղեկավարներ մտահոգվում կադրերի պատրաստման գործով։ Ճիշտ այդպիսի վիճակում է Երևանի ավտոգործարանը։ Այն արդեն տվել է իր փորձնական առաջին ավտոմեքենաները, հետզհետե ընդարձակվում է նրա արտադրական կարողությունը։ Սակայն Երևանի № 23 պրոֆտեխնիկական ուսումնարանն այս տարի է միայն ձեռնամուխ լինելու ավտոգործարանի համար կադրեր պատրաստելուն. Իջևանի գորգագործական կոմբինատը շահագործման հանձնելուց հետո միայն մտածեցին կադրերի պատրաստման մասին։ Այդ է պատճառը, որ կոմբինատն այժմ իր կարողությունների մոտ 40 տոկոսի չափով է արտադրանք տալիս։ Ներմուծված մեքենաները որակյալ տեխնիկական

կադրերի պակասի պատճառով լրիվ չեն օգտագործվում: Այստեղ որոշակի մեղք ունեն է և հանրապետության պետպլանը, որին հայտնի են նորակառույց ձեռնարկությունների գործարկման ժամկետները:

Մասնագիտական կադրերի պատրաստման ճիշտ պլանավորումը հնարավորություն կընձեռի նորակառույց գործարանները, ինչպես նաև արտադրական կարողություններն ընդարձակող ձեռնարկությունները ժամանակին ապահովել որակյալ բանվորական կադրերով և դրանով իսկ նպաստել պլանավորված չափով արտադրանք տալուն: Դրա համար, մեր կարծիքով, հանրապետության պետպլանը պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության պետական կոմիտեի հետ պետք է մշակեն և իրականացնեն գործնական միջոցառումներ՝ հնգամյակի բոլոր նորակառույցները ժամանակին որակյալ բանվորական կադրերով ապահովելու համար:

Ժամանակակից արտադրությունը զինված է նորագույն տեխնիկայով, բարդ սարքավորումներով: Ստեղծվում են արդյունաբերության նոր ճյուղեր, որոնք պահանջում են տեխնիկապես գրագետ կադրեր: Ընթացիկ հնգամյակում հատուկ ուշադրություն է նվիրվելու հատկապես ռադիոտեխնիկայի և էլեկտրոնային հաշվիչ մեքենաների տեխնիկ-մասնագետների պատրաստման հարցերին: Այդ նպատակով նոր ուսումնարաններ կբացվեն Երևանում, Աբովյանում և հանրապետության մյուս քաղաքներում: Նախատեսված է այս հնգամյակում բաց անել 15 նոր պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարան: Այսպիսով, հնգամյակի վերջում Սովետական Հայաստանում կգործի 50 պրոֆտեխնիկական ուսումնարան, որտեղ կսովորեն տարեկան ավելի քան 25 հազար պատանիներ ու աղջիկներ: Հնգամյակի վերջում քիմիական, մեքենաշինական, ռադիոտեխնիկայի ու հեռուստատեսության, էլեկտրոնային հաշվիչ տեխնիկայի արդյունաբերական ձեռնարկությունների մասնագիտական կադրերի պահանջը լիովին կապահովեն պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանները:

Հայկական կիրառական արվեստը դարերի անցյալ ունի: Հայ ժողովուրդը տարիների ընթացքում ստեղծել է քարի, փայտի, գունավոր մետաղների գեղարվեստական մշակման ու փորագրության, խեցագործության ու բրուտագործության, ասեղնագործության ու ժանյակագործության հիանալի նմուշներ, որոնք անհրաժեշտ է պահպանել ու զարգացնել: Սակայն պետք է խոստովանել, որ վերջին շրջանում մեզ մոտ վերոհիշյալ մասնագիտությունների գծով կադրերի պատրաստման գործը չի կազմակերպված: Այդ նպատակով նախատեսված է Երևանում բաց անել գեղարվեստական պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարան: Այս գործին աջակցում են ակադեմիայի արվեստի ինստիտուտի դիրեկտոր ընկ. Ռ. Զարյանը և գեղարվեստական ժանյակագործության գիտակ ընկ. Ս. Դավթյանը:

Նոր հնգամյակում մեծ են խնդիրները գյուղատնտեսության բնագավառում: Իրականացվում է գյուղատնտեսության մեքենայացման մեծ ծրագիրը: Պարզ է, որ մեր կոլտնտեսություններն ու սովխոզները կպահանջեն որակյալ մեխանիզատորներ և այլ մասնագետներ: Ոռոգման սիստեմի ընդարձակումը, նոր ջրանցքների, լճակների կառուցումը նույնպես պահանջում են մեծ թվով մասնագետներ: Գյուղատնտեսությանը որակյալ մեխանիզատորական կադրերով ապահովելու նպատակով նախատեսվում է ընդարձակել գյուղական պրոֆտեխնիկական ուսումնարանների ցանցը: Հնգամյակի առաջին տարում սկսվել



է և երկրորդ տարում ավարտվելու է Սևանի, Էջմիածնի գյուղատնտեսության մեխանիզացիայի նոր ուսումնարանների շինարարությունը: Եթե անցյալ հինգ տարիներին պրոֆտեխնիկական ուսումնարանները պատրաստել են 2.500 մեխանիզատոր, ապա նոր հնգամյակում նրանք պատրաստելու են ավելի քան 5.700 տրակտորիստ, կոմբայնավար, ջրային տնտեսության ռոգիչ ցանցում աշխատող որակյալ մասնագետներ: Կոլտնտեսություններն ու սովխոզները ունեն մեծ արհեստանոցներ, որոնք ամեն տարի հագեցվում են նորագույն տեխնիկայով, էլեկտրիֆիկացվում են գյուղատնտեսական աշխատատար պրոցեսները: Ուստի, ժամանակն է, որպեսզի գյուղմեխանիզացիայի ուսումնարանները պատրաստեն նաև խառատներ, փականագործներ, էլեկտրիկներ:

Հայկական ՍՍՀ գյուղատնտեսության, ջրային տնտեսության մինիստրությունների և «Հայգյուղտեխնիկայի» ղեկավարությունը պետք է օգնեն գյուղմեխանիզացիայի ուսումնարանները նոր մեքենաներով ու գյուղատնտեսական գործիքներով հարստացնելուն: Հրամայական պահանջ է՝ վճռականապես բարձրացնել մեխանիզատորների մասնագիտական որակը: Գյուղատնտեսությունը տարեցտարի հագեցվում է բարդ, արագաշարժ տրակտորներով, կոմբայններով և բազմաթիվ այլ մեքենաներով: Միայն տեխնիկապես գրագետ մասնագետները կարող են դրանք ղեկավարել: Չի կարելի անտեսել այն փաստը, որ մի շարք կոլտնտեսություններում ու սովխոզներում գյուղատնտեսական տեխնիկան լիովին չի օգտագործվում՝ որակյալ մեխանիզատորական կադրեր չունենալու պատճառով: Ուստի որակյալ մեխանիզատորական կադրերի պատրաստումը գյուղատնտեսության հետագա արագ զարգացման կարևոր ազդակներից մեկն է, որի վրա պետք է բևեռել պատշաճ ուշադրություն:

Նոր հնգամյակում ուսումնական հաստատություններում սովորող ապագա երիտասարդ բանվորների մասնագիտական որակի, տեխնիկական գրագիտության բարձրացումը ևս առաջնահերթ խնդիր է: Ժամանակակից արտադրության տեխնիկայի արագ զարգացումը, գիտության ու տեխնիկայի նվաճումների ներդրումն արտադրական ձեռնարկություններում առավել մեծ պահանջներ են ներկայացնում երիտասարդ բանվորներին: Նրանց տեխնիկական գիտելիքների մակարդակը պետք է մոտենա ինժեներա-տեխնիկական աշխատողների մակարդակին:

Կուսակցությունն ու կառավարությունը անհրաժեշտ միջոցներ են ձեռնարկում հնգամյակում հիմնականում լուծելու պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնական հաստատությունների տեխնիկական հագեցվածության հարցը: Միայն վերջին երկու տարում հանրապետության պրոֆտեխնիկական ուսումնարանները Միության կենտրոնական քաղաքներից, տարբեր մասնագիտությունների գծով, ստացել են 95 կաբինետ-լաբորատորիաների լրիվ սարքավորում, 100 մետաղահատ և այլ տիպի հաստոց: Հնգամյակի առաջին տարում ուսումնարանները կստանան նաև 50 կաբինետ-լաբորատորիա, 45 մետաղահատ և այլ տիպի հաստոց: Այս ամենը, անշուշտ, կբարձրացնի ապագա երիտասարդ բանվորների տեխնիկական գրագիտության մակարդակը, կբավարարի արտադրության բարձր պահանջները:

Պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններում պատրաստվող կադրերի մասնագիտական որակի բարձրացման գործում վճռական դերը պատկանում է արտադրական ուսուցման վարպետներին: Նրանց մասնագիտական

հմտություններից և ընդհանուր կուլտուրայից է մեծ չափով կախված սաների պրոֆեսիոնալ գիտելիքների խորությունն ու ընդհանուր կուլտուրան։ Գոհունակությամբ կարելի է ընդգծել, որ անցած տարիներին Հայաստանում աճել է վարպետների մի որակյալ կազմ, որը մեր արդյունաբերության ու գյուղատնտեսության համար պատրաստել է ավելի քան 100 հազար որակյալ բանվոր։ Դժվար է գտնել մի գործարան, շինարարություն, կոլտնտեսություն կամ սովխոզ, ուր չեն աշխատում պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններն ավարտած պատանիներ ու աղջիկներ։ Նվիրված ու անբասիր աշխատանքի համար 42 վարպետների Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի հրամանագրով շնորհվել է պրոֆտեխնիկական կրթության վաստակավոր վարպետի պատվավոր կոչում։ Բայց չի կարելի չնկատել այն փաստը, որ առանձին ուսումնարաններում դեռևս աշխատում են վարպետներ, որոնք իրենց կրթությամբ, մասնագիտական գիտելիքներով և ընդհանուր կուլտուրայով ետ են մնում, չեն բավարարում ուսումնարանների աճող պահանջները։

Վերջին տարիներին պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններն են ընդունվում 8-ամյա և միջնակարգ կրթությամբ երիտասարդներ, որոնք առավել մեծ պահանջներ են ներկայացնում վարպետներին ու դասատուներին։ Ուստի նրանք պետք է մշտապես հարստացնեն իրենց գիտելիքները։

Նախատեսվում է այս տարի Երևանում պրոֆտեխնիկական կրթության պետական կոմիտեին կից կազմակերպել վարպետների ու դասատուների որակավորման ինստիտուտ, որտեղ նրանք կարճատև դասընթացներում կծանոթանան գիտության ու տեխնիկայի նորույթներին, կլսեն մայրաքաղաքի անվանի մասնագետների, արտադրության նորարարների դասախոսություններն ու զրույցները։

Պրոֆտեխնիկական ուսումնական հաստատությունների ցանցի ընդարձակումը նոր հնգամյակում պահանջում է տարբեր մասնագիտության մեծ թվով վարպետներ։ Այդ նպատակով Երևանում երրորդ տարին է, ինչ գործում է վարպետների պատրաստման ինդուստրիալ-մանկավարժական տեխնիկումը, որտեղ սովորում են ավելի քան 650 երիտասարդ մասնագետ։

Հնգամյակում պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանների ցանցի ընդարձակմանը զուգընթաց մեծ աշխատանք է կատարվելու ուսումնական նոր շենքերի, արհեստանոցների, հանրակացարանների շինարարության ուղղությամբ։ Հնգամյակում պրոֆտեխնիկական ուսումնարանների շինարարության վրա ծախսվելու է 16 միլիոն ռուբլի։ Հնգամյակի վերջին տարում գրեթե բոլոր ուսումնարանները կունենան իրենց բարեկարգ շենքերը, արհեստանոցները։

Բանն այն է, որ հաճախ լրիվ չեն օգտագործվում կապիտալ շինարարության հատկացված միջոցները, տարիներով ձգձգվում է նոր շենքերի կառուցումը։ Մեր կարծիքով, ժամանակն է, որ կազմակերպվի դպրոցաշինարարական հատուկ տրեստ, որը լիակատար պատասխանատվություն կրի շինարարության համար։ Այժմ շինտրեստներն ու շինվարչությունները միանգամայն անբավարար են զբաղվում դպրոցական շենքերի շինարարությամբ, որի հետևանքով մեծապես ուշանում է պրոֆտեխնիկական ուսումնարանների ու հանրակրթական դպրոցական շենքերի շինարարությունը։

Հնգամյակում պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության զարգացման խնդիրները հաջողությամբ լուծելու ուղղությամբ մեծ անելիքներ ունեն այն ձեռ-



նարկությունները, որոնց բազայի վրա գործում կամ գործելու են նոր բացվող ուսումնարանները։ Մենք ունենք բազային ձեռնարկություններ, որոնց ղեկավարները պրոֆտեխնիկական ուսումնարանները համարում են իրենց գործարանի կարևոր արտադրամասերից մեկը և հնարավոր բոլոր միջոցներով օգնում են որակյալ բանվորական կադրերի պատրաստման գործը բարձր մակարդակով կազմակերպելու համար։ Գովասանքի է արժանի Երևանի Ս. Մ. Կիրովի անվան սինթետիկ կաուչուկի գործարանի դիրեկցիայի (դիրեկտոր ընկ. Ս. Թումանյան), կուսակցական կազմակերպության (կուսկոմի քարտուղար ընկ. Ն. Կյուրեղյան) հոգատարությունը № 2 տեխնիկական ուսումնարանի նկատմամբ։ Գործարանի օգնությամբ ուսումնարանն ստեղծել է 20 կաբինետ-լաբորատորիա և արհեստանոց։ Նոր սարքավորումներ ստանալիս այն առաջին հերթին տալիս է ուսումնարանին, որպեսզի ապագա երիտասարդ բանվորները ծանոթանան և տիրապետեն ժամանակակից արտադրության տեխնիկական միջոցներին։ Միայն վերջին ժամանակներս գործարանի դիրեկցիան 30 հազար ռուբլի հատկացրել է ուսումնարանի կաբինետ-լաբորատորիաների կահավորմանը։ Կառուցել և կահավորել է էլեկտրա-գազաեռակցման հիանալի արհեստանոց, որտեղ կազմակերպված է սովորողների արտադրական ուսուցումը։ Գործարանի լավագույն ինժեներները, տեխնիկները ուսումնարանում դասավանդում են մասնագիտական առարկաներ։ Պատահական չէ, որ այս ուսումնարանը դարձել է հանրապետության քիմիական ձեռնարկությունների համար որակյալ բանվորական կադրերի պատրաստման իսկական դարբնոց։ Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր գործարանի կոլեկտիվի դրական փորձը պետք է օրինակ ծառայի մյուսներին։

ՍՄԿԿ XXIII համագումարը խնդիր է դրել՝ ավելի բարձրացնել սովետական ժողովրդի հանրակրթական և կուլտուր-տեխնիկական մակարդակը, վերացնելով մտավոր ու ֆիզիկական աշխատանքի էական տարբերությունները, հաղթահարել քաղաքի և գյուղի սոցիալական, կուլտուր-կենցաղային տարբերությունները։ Այդ պատմական խնդիրների հաջող լուծման գործում կարևոր նշանակություն ունի նոր սերնդի պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթությունը։

Ներկա հնգամյակում հոյակապ են ինչպես ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի, այնպես էլ պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության զարգացման հեռանկարները։ Դրանք ոգևորում և աշխատանքային նոր սխրանքների են մղում բոլորին։ Զինված կոմունիստական կուսակցության XXIII համագումարի պատմական որոշումներով, հանրապետության պրոֆտեխնիկական կրթության սիստեմի աշխատողները նոր եռանդով գործի կլծվեն պատվով կատարելու իրենց պարտքը հայրենիքի հանդեպ։



# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ՄԵՐ ԱՌՕՐՅԱ ՀՈԳՍԸ

ՍՄԿԿ XXIII համագումարը մեծ նշանակություն տալով կադրերի հետ տարվող աշխատանքին, կուսակցական բոլոր օրգաններից պահանջեց այդ գործը հասցնել համակուսակցական, համապետական մակարդակին, ամբողջ ուշադրությունը կենտրոնացնել ամենագլխավորի՝ կադրերի ընտրության, առաջքաշման ու դաստիարակման, կուսակցության դիրեկտիվների կատարման ստուգման, կուսկազմակերպությունների և պետական ապարատի աշխատանքի կատարելագործման վրա։

Կադրերի ընտրության և տեղաբաշխման գործում հիմնական չափանիշը եղել և մնում են նրանց քաղաքական և գործնական հատկանիշները։ Խոսելով այդ մասին, մենք այժմ նկատի ունենք ո՛չ միայն մարդկանց քաղաքական վստահելիությունը և նրանց նվիրվածությունը սովետական կարգերին, այլև այն, թե նրանց մոտ որքանով է բարձր գիտակցական կարգապահությունը, հասարակական պարտքի զգացումը, գաղափարայնությունը, քաղաքական և աշխատանքային ակտիվությունը։ Առանց այս հատկությունների կադրերը չեն կարող ղեկավարել իրենց վստահված տեղամասը։

Կադրերի ունակությունները մենք ուսումնասիրում ենք սիստեմատիկաբար՝ աշխատանքի պրոցեսում, սկզբնական կուսկազմակերպությունների, շրջկոմի ապարատի աշխատողների, բյուրոյի անդամների և քարտուղարների միջոցով։ Այս կամ այն աշխատողին առաջ քաշելիս հաշվի է առնվում նաև տվյալ անձնավորության մասին եղած հասարակական կարծիքը։ Շատ կարևոր է, որ առաջքաշվողի մասին լայն խոսակցություն սկսվի սկզբնական կուսկազմակերպությունում և շրջկոմի բյուրոյում, հաշվի առնվի նրա բոլոր դրական և բացասական կողմերը, նոր միայն ընդհանուր եզրակացություն արվի։

Մեզ մոտ, որպես կանոն, կոլտնտեսային կադրերը, սկսած պահեստապետից ու բրիգադավարներից վերջացրած նախագահով, հաստատվում են սկզբնական կուսակցական կազմակերպություններում և ապա՝ շրջկոմի բյուրոյում, որով կանխվում են կադրերի ընտրության և տեղադրման գործում նկատվող սխալներն ու թերությունները։

Նկատի ունենալով, որ շրջանը հիմնականում գյուղատնտեսական է, շրջկոմը ամենից առաջ լուրջ ուշադրություն է դարձնում գյուղատնտեսական ղեկավար կադրերի ընտրության և տեղաբաշխման հարցին։ Գյուղատնտեսության լավագույն մասնագետներով է կոմպլեկտավորված շրջանային արտադրական վարչությունը։ Զգալի աշխատանք է կատարվել կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավարության ամրապնդման ուղղությամբ և լրջորեն բարելավվել է կոլտնտեսությունների նախագահների և սովխոզների դիրեկտորների կազմը։ Գյուղատնտեսական ձեռնարկությունների այդ ղեկավար պոստերում հաստատվել են գյուղատնտեսության շատ մասնագետներ, հմուտ կազմակերպիչներ։ Այժմ շրջանի 44 տնտեսությունների ղեկավարներից 26-ն ունեն բարձրագույն, 7-ը՝ թերի բարձրագույն, իսկ 11-ը՝ միջնակարգ կրթություն, նրանցից 26-ը գյուղատնտեսության մասնագետներ են, իսկ 7-ը հեռակա կարգով սովորում են գյուղատնտեսական ինստիտուտում։

Կոլտնտեսությունների նախագահների և սովխոզների դիրեկտորների կազմի բարելավումը դրական ազդեցություն է ունեցել այդ տնտեսությունների ընդհանուր գործունեության վրա։ Այդ տեսակետից ուշագրավ է հետևյալ օրինակը. մի քանի տարի սրանից առաջ Այգեպատ գյուղի կոլտնտեսությունը համարվում էր շրջանի համեմատաբար թույլ տնտեսություններից մեկը, նրա շատ ցուցանիշներ շրջանի միջինից էլ ցածր էին։ 1964 թվականի հունվարին Այգեպատում կոլտնտեսության վարչության նախագահ ընտրվեց երիտասարդ ագրոնոմ Ալբերտ Սայիլյանը։ Նա կարողացավ աշխատանքը կազմակերպել այնպես, որ կոլտնտեսությունում սկսեցին ավելի լավ օգտագործվել արտադրական հնարավորությունները։ Տարեցտարի ավելացավ գյուղատնտեսական մթերքների արտադրության ծավալը։ 1965 թվականին կոլտնտեսությունը գերակատարեց խաղողի, բոստանա-բանջարանոցային կուլտուրաների և անասնաբուծական մթերքների արտադրության և վաճառքի պլանները։ Այգեպատի կոլտնտեսությունը անասնաբուծության գծով մի քանի անգամ շահել է շրջկոմի և շրջսովետի գործկոմի փոխանցիկ դրոշը։

Սակայն կադրերի ճիշտ ընտրությունն ու տեղաբաշխումը դեռևս բավական չեն։ Անհրաժեշտ է սիստեմատիկ աշխատանք տանել նրանց շրջանում, օգնել նրանց հարստացնելու և խորացնելու գիտելիքները, կոփել քաղաքականապես ու գաղափարապես։

Սկզբնական կուսակցական կազմակերպությունների գրեթե բոլոր քարտուղարներն աշխատում են արտադրության այս կամ այն տեղամասում, իրենց անմիջական աշխատանքային պարտականությունները զուգակցում կուսակցական-քաղաքական գործունեությանը։

Շատ կուսակցական կազմակերպությունների ղեկավարներ են ընտրվել նոր մարդիկ. սրանք թեև ունեն բարձրագույն կրթություն, բայց չունեն կուսակցական կազմակերպությունը ղեկավարելու, այդ աշխատանքը վարելու անհրաժեշտ փորձ։ Պետք է օգնել նրանց, սովորեցնել կուսակցական-կազմակերպական և քաղաքական-մասսայական աշխատանքի ձևերն ու մեթոդները։ Այդ նպատակով արդեն երկրորդ տարին է, ինչ ՀԿԿ շրջկոմին կից գործում է կուսկազմակերպությունների քարտուղարների միամյա դպրոցը։

Դպրոցն ունի 3 խումբ. առաջինում ընդգրկված են կոլտնտեսությունների և սովխոզների, մյուսում՝ հիմնարկ-ձեռնարկությունների և երրորդում՝ դպրոցական կուսկազմակերպությունների քարտուղարները։

Բացի այդ, շրջկոմի քարտուղարներն ու մյուս աշխատողները տեղերում հրահանգավորում ու սովորեցնում են կուսկազմակերպությունների քարտուղարներին, թե ինչպես պլանավորել և վարել կուսկազմակերպությունների աշխատանքը։

Այս ամենի շնորհիվ վերջին ժամանակաշրջանում բարելավվել է շրջանի շատ սկզբնական կուսկազմակերպությունների գործունեությունը, բարձրացել նրանց մարտունակությունը, նրանք սկսել են ավելի կոնկրետ զբաղվել մարդկանց դաստիարակության և արտադրության ղեկավարման հարցերով։

Իր աշխատանքներն ավարտեց կուսակցական շրջանային կոմիտեին կից գործող ագրոքիմիայի երկամյա համալսարանը, ուր ընդգրկված էին երկու հարյուր կոլտնտեսությունների վարչությունների նախագահներ, սովխոզների դիրեկտորներ, կուսակցական կազմակերպությունների քարտուղարներ, գյուղատնտեսության մասնագետներ և այլ ակտիվիստներ։

Շրջանում պրակտիկա է դարձել տարբեր գիտահետազոտական ինստիտուտների համատեղ գիտական սեսիաների անցկացումը։ Անցյալ տարի Երևանի անասնաբուծական-անասնաբուժական ինստիտուտի հետ միասին անասնապահության հետագա զարգացման հարցերին նվիրված գիտական սեսիա կազմակերպվեց։ Իսկ 1966 թվականին արդեն անց է կացվել երկու գիտական սեսիա. մեկը՝ բույսերի պաշտպանության գիտահետազոտական ինստիտուտի հետ, նվիրված մոլախոտերի դեմ հերբիցիդների և նորագույն մեթոդների միջոցով պայքարի հարցերին. մյուսը՝ հողագործության և ագրոքիմիայի գիտահետազոտական ինստիտուտի հետ, որտեղ քննարկվեց Արտաշատի պայմաններում հանքային պարարտանյութերի օգտագործման հարցը, կոլտնտեսություններին ու սովխոզներին հանձնվեց ինստիտուտի գիտական աշխատողների կազմած ագրոքիմիական քարտեզները։

Շրջկոմը և կուսկազմակերպությունները լուրջ ուշադրություն են նվիրում մարքսիզմ-լենինիզմի տեսության ուսումնասիրմանը։ 1965 թվականին կուսակցական ուսուցման սիստեմի արմատական վերակառուցումից հետո լայն հնարավորություններ ընձեռվեցին ղեկավար կադրերի ուսուցման համար։ Շրջկոմին կից հիմնվել է կուսակցական, սովետական ակտիվի քառամյա դպրոց, որը գործում է հեռակա կուսակցական բարձրագույն դպրոցի ծրագրով։ Պարապմունքներն ընթանում են գաղափարական բարձր մակարդակով։ Այս գործում մեզ մեծ օգնություն են ցույց տալիս ՀՍՍՀ գյուղատնտեսական ինստիտուտի դասախոսական կազմը, ռեկտորատը և կուսակցական կազմակերպությունը։

Կադրերի ճիշտ ընտրությունն ու դաստիարակությունը անհնար է առանց վերահսկողության և պատշաճ պահանջկոտության։ Այդ պատճառով էլ սկզբնական կուսակցական կազմակերպությունները սիստեմատիկ վերահսկում են կադրերի աշխատանքը, նրանց դաստիարակում կուսակցական և պետական կարգապահության պահպանման ոգով։

Վերջերս որոշ օղակներում նկատվում էին անկարգապահության դեպքեր։ Շրջկոմների վերականգնումից հետո որոշ ղեկավար աշխատողներ ուշացումով էին ներկայանում շրջանային զանազան միջոցառումների։ Արտաքուստ այդ կարծես փոքր հարց էր, բայց ուներ լուրջ պատճառներ։ Ահա թե ինչու շրջկոմը զգուշացրեց որոշ ընկերների և ամենուր վերականգնեց կարգ ու կանոնը։ Դեռևս կան առանձին բրիգադավարներ, ֆերմաների վարիչներ, գյուղատնտեսության մասնագետներ և անգամ կոլտնտեսությունների նախագահներ, որոնք թերանում են իրենց պարտականությունների կատարման մեջ։

Գարնան գյուղատնտեսական աշխատանքների ժամանակ Բերքանուշի կոլտնտեսության Ա. Հովսեփյանի բրիգադայում այգիների էտը և փորը կատարվում էր անորակ։ Զգուշացումից հետո էլ վիճակը չփոխվեց։ Շրջկոմի բյուրոն քննեց այդ հարցը։ Ա. Հովսեփյանը ազատվեց բրիգադավարի պարտականություններից, ագրոնոմ Կ. Գալստյանին հայտարարվեց նկատողություն, իսկ կոլտնտեսության նախագահ Ս. Գևորգյանին՝ նախազգուշացում։

Բամբակի ցանքի և մշակության նկատմամբ Վ. Դվինի կոլտնտեսության ղեկավարների անպատասխանատվությունը շրջկոմի քննարկման հարց դարձավ։ Վարչության նախագահ Ս. Եղիգարովին հայտարարվեց նկատողություն, իսկ գյուղատնտես Ե. Ագասարովը ազատվեց աշխատանքից։

Կադրերի աշխատանքը վերահսկելու և նրանց օգնելու նպատակով շրջկոմի բյուրոյում սիստեմատիկաբար լսվում են սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների հաշվետվությունները, ստուգվում կոլտնտեսությունների և սովխոզների ֆինանսական-տնտեսական գործունեությունը և անհրաժեշտ միջոցներ են ձեռնարկվում։

Մի քանի տարի առաջ կոլտնտեսության վարչության նախագահ էր աշխատում գյուղատնտես Ս. Դավթյանը։ Նա լավ գիտեր գյուղատնտեսությունը, սակայն անփորձության պատճառով մի շարք սխալներ էր թույլ տվել։ Շրջկոմը նրան իջեցրեց գյուղատնտեսի պաշտոնին, ցույց տվեց նրա սխալները։ Այդ բոլորից կոմունիստ Ս. Դավթյանը լուրջ եզրակացության հանգեց։ Բերքանուշում, որտեղ նա գյուղատնտես էր, կոմունիստները ընտրեցին կուսկազմակերպության քարտուղար, իսկ 1964 թվականի աշնանը շրջկոմը նրան վստահեց Ջրահովտի ետ մնացող կոլտնտեսությունը։ Կոլտնտեսականները նրան ընտրեցին նախագահ և չսխալվեցին։ Ս. Դավթյանի ջանքերով անցած մեկուկես տարվա ընթացքում պատշաճ կարգ ու կանոն ստեղծվեց կոլտնտեսությունում։ Կատարվեց գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և պետությանը գյուղատնտեսական մթերքների վաճառքի պլանը։ Իրացվեցին 30 հեկտար նոր հողեր, շինարարական մեծ աշխատանք ծավալվեց։ 1964 թվականի համեմատությամբ, 1965 թվականին կոլտնտեսության դրամական եկամուտներն ավելացան 120.000 ռուբլով, մեկ աշխօրի արժեքը 1 ռ. 10 կոպեկից բարձրացավ 2 ռ. 70 կոպեկի։

Կադրերի դաստիարակության և նրանց պատասխանատվության բարձրացման ձևերն ու մեթոդները բազմազան են։ Կարևորն այն է, որ կադրերի նկատմամբ ցուցաբերվի սկզբունքայնություն, պահանջկոտություն, բնավ չխրաշահել նրանց։

Պետք է խոստովանել, որ կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության գործում Արտաշատի շրջանում կան նաև թերություններ ու սխալներ։ Ամենալուրջ թերությունն այն է, որ դեռևս չենք հասել ղեկավար կադրերի (կոլտնտեսության նախագահ, սովխոզի դիրեկտոր, գյուղատնտեսության գլխավոր մասնագետ, սկզբնական կուսկազմակերպության քարտուղար) համապատասխան ռեզերվ ունենալուն։

Զգալի թերություններ կան նաև գյուղատնտեսության մասնագետների օգտագործման հարցում. ցածր է պահանջկոտությունը նրանց հանդեպ։ Որոշ մասնագետներ (հատկապես անասնաբույժները) վատ են կատարում իրենց պարտականությունները, իսկ երբեմն էլ կոլտնտեսությունների վարչությունները ոչ ճիշտ վերաբերմունք են ցուցաբերում նրանց նկատմամբ՝ հատկապես վարձատրության հարցում։ Իհարկե, նման դեպքերում շրջկոմը միջամտում և ուղղում է սխալը։

Դեռևս թերություններ կան միջին օղակի կադրերի՝ բրիգադավարների և ֆերմաների վարիչների ընտրության, տեղադրման գործում: Որոշ սկզբնական կազմակերպություններ երբեմն սկզբունքային չեն այդ հարցում, որի հետևանքով, առանձին դեպքերում, բրիգադավարներ կամ ֆերմաների վարիչներ են առաջադրվում այնպիսիները, որոնք նախկինում իրենց չեն արդարացրել: Այս դեպքում շրջանային կոմիտեն չի հաստատում կուսակցական կազմակերպությունների որոշումները:

Կադրերի ընտրությունն ու տեղաբաշխումը ո՛չ միայն պատասխանատու, այլև վերին աստիճանի բարդ գործ է: Այստեղ յուրաքանչյուր սխալ կարող է անօգտակար դարձնել ընդունակ մարդկանց կարողությունները և մեկընդմիշտ խոտորել մարդու կյանքի ուղին: Ուստի, շրջանային կոմիտեն էլ ջանում է կատարելագործել կադրերի ղեկավարման արվեստը, նախ սովորելով սեփական փորձի վրա:

Այսպիսով, կադրերի դաստիարակությունն ու ճիշտ տեղաբաշխումը կուսշրջկոմի ամենօրյա հոգսն է:

Ավ. ՄԿՐՏՉՅԱՆ
ՀԿԿ Արտաշատի շրջկոմի առաջին
քարտուղար

# ՊԱՏՇԱՃ ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ ԿՈՒՍԽՄԲԵՐԻՆ

ՍՄԿԿ Կանոնադրության համապատասխան, կուսակցական խմբերն ստեղծվում են սկզբնական կուսկազմակերպությունների ներսում՝ ըստ արտադրական տեղամասերի՝ բրիգադներում, ֆերմաներում ու արտադրական այն ստորաբաժանումներում, ուր կա կուսակցության երեք և ավելի անդամ:

Կուսակցական խմբերը կոլեկտիվի միջուկն են: Գտնվելով մարդկանց և արտադրությանը մոտ, նրանք հետևողական պայքար են ծավալում արտադրական պլանների կատարման և եղած թերությունների վերացման համար, ժամանակին ընթացք տալիս կարևոր նախաձեռնություններին: Կուսխմբերը միաժամանակ ջանում են բարձրացնելու կոմունիստների պատասխանատվությունը հանձնարարված գործի և իր կազմակերպության հանդեպ, հասնելու այն բանին, որ կուսակցության յուրաքանչյուր անդամ և թեկնածու պատվով կատարի իր ավանգարդային դերը ու դառնա մասսաների մարտական կազմակերպիչը: Կուսակցական խմբերի գործունեության հաջողությունը ամենից առաջ պայմանավորված է կոմունիստների կազմակերպվածությամբ ու համախմբվածությամբ, ակտիվությամբ ու ձեռներեցությամբ:

ՍՄԿԿ XXIII համագումարում Կենտրոնական կոմիտեն իր հաշվետու զեկուցման մեջ նշեց, որ սկզբնական կուսակցական կազմակերպությունները արտադրամասային կազմակերպությունների և կուսակցական խմբերի իրենց լայն ցանցով վճռական դեր են խաղում կուսակցության քաղաքականությունը կենսագործելու, մարդկանց կոմունիզմի վեհ գաղափարներով զինելու ուղղությամբ, կուսակցությունը կապում են մասսաների հետ, գործում այն բնագծերում, ուր կառուցվում է ու ստեղծվում: Սրանց ամենօրյա գործունեության



մեջ են արտացոլվում կուսակցության ողջ կյանքը, հաջողություններն ու թերությունները, այն ամենը, ինչը ուրախացնում է մեզ կամ վշտացնում:

Կյանքը ցույց է տալիս, որ կուսակցության քաղաքային և շրջանային կոմիտեներն իրենց առջև դրված խնդիրները հաջողությամբ են լուծում, երբ կուսակցական ստորին կազմակերպություններում, այդ թվում և կուսակցական խմբերում, հասնում են ղեկավարման կատարելագործված ոճի ու մեթոդների, ապահովում են դրանց ամենօրյա և ակտիվ գործունեությունը, օժանդակում խորապես ազդելու արտադրության բոլոր տեղամասերի և կյանքի բոլոր կողմերի վրա:

Մեր հանրապետության կուսակցական կազմակերպությունները, հատկապես ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1964 թ.) պլենումից հետո, քիչ բան չեն արել կուսակցական ստորին կազմակերպությունների, ինչպես և կուսակցական խմբերի ամրապնդման, տեղերում ամեն ինչի հանդեպ նրանց դերի ու պատասխանատվության բարձրացման ուղղությամբ:

1966 թվականի հունվարի 1-ի դրությամբ հանրապետությունում հաշվվում է 2,442 կուսխումբ, որից 381-ը կազմվել է միայն 1965 թվականին: Այդ հնարավորություն է ընձեռում կուսակցության ազդեցության ոլորտում պահել տնտեսական և կուլտուրական շինարարության բոլոր տեղամասերը, կազմակերպական ու բացատրական լայն աշխատանք ծավալել կոլեկտիվում:

Իրենց լավ աշխատանքով աչքի են ընկնում, օրինակ, Աշտարակի շրջանի կուսակցական կազմակերպությունները, որոնք վերջին տարիներին պատշաճ ուշադրություն են նվիրում կուսակցական խմբերին: Շրջանում ստեղծված է 115 կուսակցական խումբ, այդ թվում՝ 49-ը կոլտնտեսային և 46-ը սովխոզային կուսկազմակերպություններում:

Լուրջ նշանակություն է տրվում կուսկազմակերպիչների ընտրությանը: Կուսակցական կազմակերպությունները հետևում են, որպեսզի կուսխմբերի կազմակերպիչներ ընտրվեն ավելի գրագետ, հասուն և ազդեցիկ կոմունիստներ: Այնտեղ կուսկազմակերպիչներից 29-ը ունեն բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն, 57-ը՝ միջնակարգ, իսկ այդ բոլորը կուսկազմակերպիչների մոտ 75 տոկոսն են կազմում:

Կուսակցության շրջկոմը և շատ սկզբնական կուսկազմակերպություններ հաճախ հետաքրքրվում են կուսխմբերի գործունեությամբ, վերահսկում դրանց, ցույց տալիս գործնական օգնություն: Բյուրոյի նիստերում և սկզբնական կազմակերպությունների ժողովներում լսվում են կուսխմբերի հաշվետվությունները, սեմինար պարապմունքներ են անցկացվում, կազմակերպվում է փորձի փոխանակում: Սեմինար պարապմունքներում, օրինակ, կուսխմբերի կազմակերպիչները դասախոսություններ են լսել հետևյալ թեմաներով՝ «Կուսակցական խմբերի իրավունքներն ու պարտականությունները», «ՍՄԿԿ Կանոնադրության պահանջների կատարումը օրենք է յուրաքանչյուր կոմունիստի համար», «Կուսխմբերի խնդիրները արտադրական պլանները ժամկետից շուտ կատարելու գործում» և այլն:

Վերջերս կուսշրջկոմի բյուրոն լսեց Ոսկեվազ գյուղի կոլտնտեսության կուսկազմակերպության հաշվետվությունը՝ կուսխմբերին ցույց տրվող օգնության մասին: Հաշվետվություններ լսվեցին նաև Աշտարակի և Պռոշյանի անվան խաղողագործության սովխոզների կուսխմբերի աշխատանքների մասին: Շրջկոմի մշակած ու կենսագործած միջոցառումները զգալի չափով աշխու-

ժացրին Օշականի, Արտաշավանի, Արայի, Աշտարակի, Սասունիկի, Պռոշյանի անվան սովխոզների, Ուջան, Ոսկեվազ, Ջորափ և այլ կոլտնտեսությունների կուսխմբերի գործունեությունը։ Օրինակ, Օշականի № 2 սովխոզի դաշտավարական բրիգադայի կուսխումբը, որտեղ կուսկազմակերպիչ է բանվորուհի, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ Քնարիկ Շահինյանը, ունի 4 կոմունիստ, որոնք բոլորն էլ արտադրության առաջավորներ են։ Կուսխմբի հիմնական հոգսը արտադրական պլանների կատարման համար պայքարի կազմակերպումն է։ Այն կոլեկտիվի շրջանում ամենօրյա մասսայական բացատրական աշխատանք է տանում, հոգում աշխատանքային կարգապահության ամրապնդման մասին, ուսումնասիրում բրիգադայի անդամների պահանջները և ձգտումները, ակտիվ ներգործում մարդկանց գործելակերպի ու տրամադրության վրա, զգայուն և ուշադիր վերաբերմունք ցուցաբերում յուրաքանչյուրի նկատմամբ։ Բրիգադան ունի 85 բանվոր-ծառայող։ Նրանք աշխատում են եռանդով, կատարում ու գերակատարում օրվա առաջադրանքները։ Այս ամենի շնորհիվ, ընթացիկ տարում, այգեգործները ժամկետից 15 օր շուտ մշակեցին խաղողի 47 հեկտար այգին, որակով ու ժամանակին ավարտեցին դրա մշակումն ու բուժումը, դրեցին բարձր բերքի հիմքը։

Կուսխմբի կարևորագույն խնդիրներից մեկն էլ մարդկանց աշխատանքային ակտիվության բարձրացումն է, հանձնարարված գործին ստեղծագործական մոտեցումը։ Այն առավել ուշադրություն է նվիրում սոցիալիստական մրցությանը, նպատակամղում մարդկանց յուրացնելու աշխատանքի լավ օրինակները, սովորելու և պրակտիկայում ներդնելու առաջավոր փորձը, պայքարելու արտադրության ռեզերվների արդյունավետ օգտագործման համար, անհրաժեշտ պայքար մղելու լճացման ու հետամնացության դեմ։

Կուսխմբերի նախաձեռնությամբ, դեռևս ընթացիկ տարվա սկզբին, բրիգադները արտադրական խորհրդակցություններում ամփոփեցին 1965 թվականին վերցրած պարտավորությունների արդյունքները և նոր պարտավորություններ վերցրին։ Բրիգադների կոմունիստների ուշադրության կենտրոնում է այդ պարտավորությունների կատարումը։ Նրանք քննարկում են այս կամ այն ակտուալ հարցը, գալիս միասնական հետևության և հասնում տվյալ հարցի գործնական լուծմանը։

Կուսակցական խմբերի ստեղծումն ու դրանց ակտիվ գործունեությունը մեծ մասամբ պայմանավորված է արտադրության հիմնական ճյուղերում կոմունիստների ուժերի խելամիտ ու նպատակային տեղաբաշխմամբ։ Առանց կուսակցության անդամների անհրաժեշտ քանակի, չի կարելի կուսխմբեր ստեղծել։ Ցանկալի է, որ կուսակցական կազմակերպությունները այդ հարցին մոտենան պատշաճ լրջությամբ և կոմունիստների ուժերն այնպես դասավորեն, որ արտադրության բոլոր ճյուղերում հնարավոր դառնա կուսակցական խմբերի ստեղծումը։

Մինչդեռ փաստերն այլ բան են ասում։ Աշտարակի շրջանի կոլտնտեսություններում ու սովխոզներում ստեղծված 95 կուսակցական խմբերից միայն 9-ն են անասնապահական ֆերմաներում։ Եվ այդ այն դեպքում, երբ շրջանի տնտեսությունում հաշվվում է 64 անասնապահական ու թռչնաբուծական ֆերմա։ Այս հիմնականում բացատրվում է այն բանով, որ շրջանի անասնապահական ֆերմաներում ընդամենը 59 կոմունիստ է աշխատում, այսինքն՝ շըրջանի կոլտնտեսությունների ու սովխոզների կուսակցական կազմակերպություններում ընդգրկված կոմունիստների 5,7 տոկոսը։



Կուսակցական խմբերի ստեղծումը, անշուշտ, ինքնանպատակ չէ։ Անհրաժեշտ է այնպես վարել գործը, որ կոմունիստները հնարավորություն ունենան իրենց տեղամասերում կազմակերպական ու քաղաքական ամենօրյա գործունեություն ծավալել, ներգործեն արտադրության վրա, դաստիարակեն մարդկանց։ Սակայն, ցավոք, այս պահանջները երբեմն անտեսվում են և մեկ կուսխմբում ընդգրկվում են տարբեր տեղամասերի ու բրիգադաների կոմունիստներ։ Իսկ այդ պայմաններում կոմունիստներն ի վիճակի չեն իրենց առջև դրված խնդիրները լրիվ լուծել։ Բացի այդ, փաստերը ցույց են տալիս նաև, որ առանձին կազմակերպություններում անհրաժեշտ հոգատարություն չի ցուցաբերվում կուսխմբերի հանդեպ։ Որոշ կուսկազմակերպություններ ինչպես հարկն է չեն ղեկավարում կուսխմբերին, չեն խորանում նրանց գործունեության մեջ։ Աշտարակի շրջանի Փարպի և Կոշ գյուղերի կոլտնտեսությունների կազմակերպությունները միայն սահմանափակվեցին արտադրական բրիգադաներում և անասնապահական ֆերմաներում կուսակցական խմբերի ստեղծմամբ։ Եվ այդ է պատճառը, որ սրանց դերը ամենևին չի երևում։

Կուսխմբերի ակտիվ գործունեությունից ու մարտունակությունից է մեծ մասամբ կախված սկզբնական կուսկազմակերպությունների աշխատանքի մակարդակը, նրանց առջև դրված բոլոր խնդիրների լուծումը։

Յուրաքանչյուր կուսխմբի ակտիվ գործունեության ապահովումը ոչ միայն սկզբնական կազմակերպությունների, այլև քաղաքային ու շրջանային կոմիտեների կարևոր խնդիրն է։

Ջ. ՍՈՒԼԹԱՆՈՎ
ՀԿԿ Կենտկոմի տեսուչ

# ՇԱՐՔԱՅԻՆ ԿՈՒՍԱՆԴԱՄԸ

Գործարանում բոլորը նրան ճանաչում են որպես ազնիվ աշխատողի, բարի ու համեստ մարդու։ Նա այդպիսին է նաև ընտանիքում, բարեկամների և ծանոթների շրջանում։

Նախշուն Հակոբյանը սիրում է ալյումինագործի իր մասնագիտությունը, գործարանի կոլեկտիվին, որտեղ աշխատում է երկար տարիներ։ Նա հպարտությամբ և ոգևորված է պատմում էլեկտրոլիզային արտադրամասի մարդկանց, իր աշխատանքային ընկերների մասին։ Սակայն զարմանալի սակավախոս է դառնում նա, երբ պատմում է իր գործունեության մասին։ Այդ պահին նա իրեն կորցնում է, շիկնում և դասը վատ իմացող աշակերտի պես դժվարանում է արտահայտել մտքերը, պատասխանել սովորական հարցերին։ Մինչդեռ Հակոբյանը անցել է կյանքի դժվարին և փայլուն ուղի։

1942 թվականի նոյեմբեր։ Հայրենական պատերազմի ծանր օրեր... Գերմանա-ֆաշիստական զավթիչները հասել են Կովկասի նախալեռները և կատաղի ճիգեր են գործադրում ներխուժելու Անդրկովկաս, զավթելու Կովկասը։

Հարազատ հայրենիքի գլխին կախված այդ մահացու վտանգի օրերին էր,

որ Ախտայի շրջանի Բջնի գյուղի բազմաթիվ երիտասարդների հետ միասին 18-ամյա Նախշունը մեկնեց կարմիր բանակ։

Շատ քիչ տևեց նրա ծառայությունը պահեստային զորամասում։ Կարճ ժամանակում տիրապետելով ռազմական տեխնիկային, նա դարձավ ականաձիգ և շատերի հետ միասին գնաց ռազմաճակատ։ Առաջին մարտական մկրտությունն ստացավ Նովոռոսիյսկի մոտ։ Սովետական խոշտանգված հողը, ավերված քաղաքներն ու գյուղերը, մարդկային զոհերը երիտասարդ մարտիկի մեջ խոր ատելություն առաջացրին գերմանա-ֆաշիստական զավթիչների նկատմամբ։ Նա իր ականանետից մահացու կրակ էր տեղում թշնամու գլխին։ Նովոռոսիյսկի շրջանում մղվող այդ մարտերում էր, որ Ն. Հակոբյանը ծանր վիրավորվեց և նրան փոխադրեցին հոսպիտալ։

Կարճ ժամանակում բուժվելուց հետո Ն. Հակոբյանը նորից է մեկնում ռազմաճակատ։ Այս անգամ նա սնայպեր է Օրյոլի-Կուրսկի աղեղում, դիպուկ կրակով ոչնչացնում է թշնամու զինվորներին և սպաներին։

Օրյոլի-Կուրսկի աղեղում մղված նշանավոր ճակատամարտերն ավարտվում են սովետական զորքերի փայլուն հաղթանակով։ Սովետական բանակը շարունակում է իր հաղթարշավը դեպի Արևմուտք։ Այդ հարձակողական մարտերի ժամանակ Սումայի մարզում Ն. Հակոբյանը նորից ծանր վիրավորվում է։

Հարկ է լինում երկրորդ անգամ պառկել հոսպիտալում, որից հետո նա դարձյալ գործող բանակում է։ Ն. Հակոբյանը այս անգամ հրետանավոր է 2-րդ Բելոռուսական ռազմաճակատում գործող հակատանկային դիվիզիայում։ Ինչպես միշտ, այս անգամ ևս նա ակտիվորեն մասնակցում է ֆաշիստական Գերմանիայի ջախջախման համար մղվող ավարտական մարտերին, հասնում մինչև Էլբայի ափը։

Պատերազմի հաղթական ավարտից հետո կոմերիտական Ն. Հակոբյանը տուն է վերադառնում. նրա կրծքին փայլում են «Փառքի III աստիճանի» շքանշանը, «Արիության համար», «Մարտական ծառայության համար» և բազմաթիվ այլ մեդալներ։

Պատերազմից հետո սովետական ժողովուրդը ձեռնամուխ է լինում երկրի տնտեսության վերականգնման և հետագա զարգացման գործին։ Հազարավոր նախկին ռազմաճակատայինների հետ հետպատերազմյան հնգամյակի համար մղվող պայքարում իր տեղն է գտնում նաև Հակոբյանը։ Նա հյուսն է Երևանի այն շինտրեստում, որին հանձնարարված է ալյումինի գործարանի կառուցումը։ Աշխատում է մեծ եռանդով ու ոգևորությամբ, սիստեմատիկաբար կատարում ու գերակատարում է արտադրական նորմանները։

Գործարանի շինարարությունից հետո նրան փոխադրում են էլեկտրոլիզային արտադրամասը, որտեղ նա կարճ ժամանակում ձեռք է բերում ալյումինագործի մասնագիտություն։

Ավելի քան երկու տասնամյակ անընդհատ աշխատելով ալյումինագործների մեծ ընտանիքում, Ն. Հակոբյանը իր անբասիր աշխատանքով նվաճել է ոչ միայն էլեկտրոլիզային արտադրամասի, այլև ամբողջ գործարանի կոլեկտիվի սերն ու հարգանքը, դարձել նրա սիրելին ու ընդունվել կուսակցության շարքերը։

Բարդ ու դժվարին է ալյումինագործների աշխատանքը։ Ահա էլեկտրոլիզային արտադրամասի ընդարձակ կորպուսը։ Սարքավորված վաննաներում



լցված հանքանյութը բարձր ջերմաստիճանի տակ հալվում, դառնում է վարդագույն կրակե հեղուկ։ Այնուհետև այդ մետաղե հալոցքը հատուկ խողովակներով լցնում են սարքերի մեջ, փոխադրում այլ տեղ, ձև տալիս, սառեցնում, մշակում...

Աշխատանքի այդ բոլոր պրոցեսները կատարում են էլեկտրոլիզնիկները։ Ն. Հակոբյանը, նրա աշխատանքի ընկերները հերթափոխում մի անգամ չէ, որ անցնում են վաննայից վաննա, հետևում, որպեսզի բռնկումներ չլինեն, չխախտվի ջերմային ռեժիմը, այլապես էլեկտրոլիզնիկները լավ գիտեն, որ բարձր ջերմաստիճանից մետաղի պատրաստի հալվածքը նորից վեր է ածվում հումքի, որից երկրորդ անգամ ալյումին ստանալը պահանջում է կրկնակի աշխատանք և էլեկտրաէներգիա։

Կոմունիստ Ն. Հակոբյանը, գտնվելով արտադրական պլանի կատարման համար մղվող պայքարի առաջավոր գծում, չի մոռանում իր կուսակցական պարտավորությունները. հերթափոխի բանվորների հետ նա սրտաբաց զրույցներ է ունենում ՍՄԿԿ XXIII համագումարի նյութերի շուրջը, պարզաբանում է այն խնդիրները, որ դրված են մետալուրգիական արդյունաբերության աշխատողների, այդ թվում նաև ալյումինագործների առջև։

Էլեկտրոլիզային արտադրամասի կոլեկտիվը հաջողությամբ է կատարում արտադրական պլանները՝ բոլոր հիմնական ցուցանիշների գծով։ Իսկ այն հերթափոխը, որտեղ աշխատում է ինքը՝ Ն. Հակոբյանը, ընթանում է առջևից։

Ն. Հակոբյանը ոչ միայն արտադրության առաջավոր է, այլ նաև հասարակական ակտիվ աշխատող։ Նա հաճախակի բանաստեղծություններով, ակնարկներով և թղթակցություններով հանդես է գալիս «Մետալուրգ» բազմատիրաժ թերթում։ Բազմատիրաժ և հանրապետության թերթերում զետեղված իր գողտրիկ ոտանավորների մեջ բանվոր-բանաստեղծը գովերգում է ալյումինագործի աշխատանքը, Հայաստանի գեղեցիկ բնաշխարհը, փառաբանում սովետական մեծ հայրենիքը։

Անվանի ալյումինագործի ջանասեր աշխատանքը բարձր են գնահատում գործարանի դիրեկցիան, կուսակցական և արհմիութենական կազմակերպությունները, ամբողջ կոլեկտիվը։ Ավագ էլեկտրոլիզնիկ Ն. Բ. Հակոբյանի բարեխիղճ աշխատանքը բազմաթիվ անգամ նշվել է դրամական պարգևներով, արժեքավոր նվերներով, հասարակական մեծարմամբ։

Հայաստանի կոմկուսի վերջերս տեղի ունեցած XXIV համագումարը ճանաչված ալյումինագործ, կոմունիստ Ն. Բ. Հակոբյանին ընտրել է Հայաստանի կոմկուսակցության վերստուգիչ հանձնաժողովի անդամ։ Կուսակցության շարքային անդամը հպարտությամբ և պատասխանատվության մեծ զգացումով է կատարում կուսակցական այդ պատասխանատու հանձնարարությունը։

***

Վերջերս հրապարակվեց ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագիրը գունավոր մետալուրգիայի մի խումբ առաջավորների շքանշաններով և մեդալներով պարգևատրելու մասին։ «Պատվի նշան» շքանշանով պարգևատրվածների մեջ էր նաև Նախշուն Բալաբեկի Հակոբյանը։

Ա. ԵՂԻԱԶԱՐՅԱՆ

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ՀՈՂԱՏԱՐԱԾՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԳՆԱՀԱՏՈՒՄԸ ԵՎ ՆՊԱՏԱԿԱՀԱՐՄԱՐ ՕԳՏԱԳՈՐԾՈՒՄԸ

*Այժմ խիստ կարևոր նշանակություն է տրըվում մեր երկրի և նրա առանձին շրջանների հողային ֆոնդի ուսումնասիրությանը: Հողերի քանակի ու որակի վերաբերյալ օբյեկտիվ և հավաստի տվյալների բացակայությունը պատճառ է դարձել գյուղատնտեսական արտադրության պլանավորման և կոլտնտեսությունների ու սովխոզների տնտեսական գործունեության գնահատման թերությունների: Այդ, միաժամանակ, հասցրել է հողի նկատմամբ անտնտեսվար վերաբերմունքի, որի հետևանքով երկրի զանազան շրջաններում, ինչպես և մեր հանրապետությունում կրճատվել է գյուղատնտեսության մեջ օգտագործվող հողային ֆոնդը: Այդ կրճատումը տեղի է ունեցել ինչպես որոշ հողատարածությունների պտղաբերության կորստի, այնպես էլ արդավանդ հողերի խոշոր տարածություններն արդյունաբերական և այլ օբյեկտների շինարարությանը հատկացնելու հետևանքով:*

*Ներկայումս մեծ նշանակություն է տրվում գյուղատնտեսական արտադրության՝ «ներքևից» եկող պլանավորմանը: Սակայն, հանրապետության պլանավորող օրգանները մեծ դժվարությունների են հանդիպում տեղերում կազմված պլանները գնահատելիս, քանի որ առանց հողերի որակի մասին ճշգրիտ տեղեկություններ ունենալու, անհնար է պարզել, թե որքան լրիվ ու նպատակային են օգտագործվում յուրաքանչյուր տնտեսության հնարավորություններն ու ռեզերվները:*

*Հողերի որակի վերաբերյալ ստույգ տվյալներն անհրաժեշտ են նաև լուծելու ՍՄԿԿ ծրագրի առաջադրանքը՝ ողջ կոլտնտեսային սիստեմի մասշտաբով հավասար աշխատանքի դիմաց հավասար վարձատրության հասնելու ասպարեզում: Այդ պատճառով էլ հրատապ անհրաժեշտություն է մեր հողային ռեսուրսների խոր ուսումնասիրությունը, որը կօգնի կազմելու սովետական հողային ճիշտ կադաստր և տալու հողերի տնտեսական գնահատականը:*

*Ի՞նչ է իրենից ներկայացնում հողային կադաստրը մեր պայմաններում և ինչ տեղ է գրավում դրանում հողերի տնտեսական գնահատականը:*

*Հայտնի է, որ կապիտալիստական երկրներում հողային կադաստրներ կազմվում են իշխող դասակարգերի շահերին համապատասխան. Նրանց հիմնական խնդիրն է՝ սահմանել առանձին հողամասերի գինը՝ առուծախի, վարձակալական վճարի ու պետական հարկերի գանձման նպատակներով: Այդ պատճառով նման աշխատանքները սովորաբար կատարում են ֆինանսների մինիստրությունները:*

*Մեր երկրում հողը համաժողովրդական սեփականություն է, այն չի վաճառվում և չի գընվում: Բայց այդ չի նշանակում, թե՛ մեզ պետք չեն հողային կադաստր և, մանավանդ, հողերի տնտեսական գնահատում, ինչպես մտածում էին 10—15 տարի առաջ[1]: Մեզ անհրաժեշտ են թե՛ մեկը և թե՛ մյուսը: Բայց այլ են հողային կադաստրի բովանդակությունը և նրա օգնությամբ լուծվելիք խնդիրները: Սովետական հողային կադաստրը պետք է հիմք դառնա գյուղատնտեսական պլանավորման, հողաշինարարության, հողերի արդյունավետության բարձրացման միջոցառումների մշակման ու արմատավորման, ինչ-*

1 Սովետական մեծ հանրագիտարանի երկրորդ հրատարակությունում գրված է. «Սովետական Միությունում, ուր չկա հողի մասնավոր սեփականություն, հարկ չկա կադաստր ունենալու» (т. *19*, М., *1953*, стр. *287*):



*պես և դրանց օգտագործման նկատմամբ պետական հսկողություն սահմանելու համար:*

*Սովետական հողային կադաստրում պետք է արտացոլվեն հողի՝ իբրև գյուղատնտեսության արտադրության գլխավոր միջոցի վերաբերյալ առավել լիակատար ու հավաստի տվյալները: Կադաստրի բաղկացուցիչ մասերն են. հողերի քանակական հաշվառումը (նրանց բաշխումը ըստ հողօգտագործողների և ըստ հողահանդակների), որակական բնութագրությունը, տնտեսական գնահատումը և կադաստրային քարտեզների կազմումը:*

*Հողային կադաստր կազմելու համար պետք է ամենայն խորությամբ վերլուծել հողաշինարարական, հողային, աշխարհագրական, երկրաբուսաբանական, մելիորատիվ, ջրագրական և այլ հետազոտությունների արդյունքները, ինչպես և մի շարք տարիների հաշվետու-վիճակագրական տվյալները կոլտնտեսությունների ու սովխոզների մասին: Դրա հետ մեկտեղ անհրաժեշտ են նաև հատուկ արշավախմբային հետազոտություններ: Հողային կադաստրը կազմելու գործում պետք է ընդգրկվեն, ամենից առաջ, հողաշինարարները, հողագետները, աշխարհագրագետները, գյուղատնտեսության մասնագետները:*

*Հողերի տնտեսական գնահատումը հողային կադաստր կազմելու մեծ և բարդ աշխատանքի մի մասն է միայն: Բայց հենց այդտեղ գոյություն ունեն ինչպես տեսական, այնպես էլ գործնական շատ չլուծված հարցեր: Քննենք դրանցից հիմնականները, հիմք ընդունելով հողերի տնտեսական գնահատման այն մեթոդիկան, որ մշակել է գյուղատնտեսության էկոնոմիկայի համամիութենական գիտահետազոտական ինստիտուտը* (ВНИИЭСХ).

*Հողի տնտեսական գնահատում ասելով, ըստ այդ մեթոդիկայի հեղինակների, պետք է հասկանալ հողի՝ իբրև գյուղատնտեսության մեջ արտադրության միջոցի, համեմատական արժեքի որոշումը, կամ, տարբեր որակի հողերից՝ բնատնտեսական տարբեր պայմաններում ստացվող հարաբերական եկամտաբերության բացահայտումը: Այդպիսի գնահատականով կարելի է որոշել, թե որ հողն է լավ, որը վատ[1]: Այս ձևակերպմանը, ըստ էության, առարկություններ չկան: Սակայն վերջին ժամանակներս եղան նոր կարծիքներ, որոնց համաձայն մշակվող հողերի «գինը» պետք է որոշել, ելնելով հողի դիմաց «վարձավճար» սահմանելուց:*

*Շինարարության և այլ կարիքների համար*

1 Основные принципы экономической оценки земли. Материальный научно-исследовательских работ ВНИИЭСХ. М., 1962, стр. 6.

*ավելի ու ավելի մեծ քանակությամբ հողատարածություններ վերցնելը գյուղատնտեսության մեջ հարուցում է ոչնչով չհատուցվող կորուստներ[1]: 1963 թվականին շինարարության կարիքների համար ողջ երկրում հատկացված է մոտ 2 մլն. հեկտար հող, որից ավելի քան կես միլիոնը բերրի վարելահող: Տնտեսագետների հաշվումների համաձայն մինչև 1980 թվականը գյուղատնտեսությունից վերցված հողերի ընդհանուր տարածությունը կկազմի մոտավորապես 30 մլն. հեկտար, որից 2—3 մլն.՝ վարելահող: Հայկական ՍՍՀ-ում վերջին 10—12 տարում շինարարության և այլ կարիքներին հատկացված է ավելի քան 25 հազար հեկտար հող, որից մոտ 10 հազարը՝ վարելահող: Հանրապետությունում շինարարությանը հաճախ հատկացվում են բերրի, նույնիսկ ոռոգվող հողեր, պտղատու և խաղողի այգիներ, ընդ որում՝ երբեմն պահանջվածից ավելի մեծ տարածություն:*

*Մեր սակավահող հանրապետությունում, ուր մշակման համար պիտանի հողերի ֆոնդը չափազանց սահմանափակ է, այդպիսի դրությունը աններելի է: Ահա թե ինչու 1966 թվականի մարտին Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետը հատուկ որոշում ընդունեց հողերի ռացիոնալ օգտագործման մասին: Այնտեղ նշված է, որ արդյունաբերական և այլ օբյեկտների նախագծերի տնտեսական հիմնավորման ժամանակ պետք է հաշվի առնվեն այն կորուստները, որոնք կրում են հանրապետության կոլտնտեսություններն ու սովխոզները: Համապատասխան կազմակերպությունները պետք է նրանց հատուցեն այն ծախսերը, որոնք կապված են շինարարությանը հատկացված տարածությունների փոխարեն նոր հողերի յուրացման հետ: Սովետական Միության առանձին հանրապետություններում այդպիսի միջոցառում իրականացվում է: Այսպես, օրինակ, էստոնական ՍՍՀ-ում վարելահողի միջով ճանապարհ անցկացնելու դեպքում իբրև փոխհատուցում տնտեսություններին մեկ հեկտարի համար վճարվում է 480 ռուբլի:*

*Այդպիսի միջոցառումների իրականացումը կպահանջի կատարել համապատասխան հաշվարկներ, որոնք պետք է ցույց տան, թե ո՞րն է ավելի ձեռնտու՝ օգտագործել մշակվող հողերը, շինարարության արժեքի մեջ հաշվի առնելով դրանցից ստացվող արտադրանքի արժե՞քը, թե՞ լրացուցիչ ծախսումներ կատարել՝ շինարարու-*

1 Ըստ մոտավոր հաշվումների շինարարական օբյեկտների տեղաբաշխման ժամանակ հողերի ոչ ռացիոնալ օգտագործման հետևանքով պետությանը հասցվող վնասը կազմում է տարեկան մոտ մեկ միլիարդ ռուբլի: «*Известия*», 1965 թ., № 41:

թյան համար յուրացնելով գյուղատնտեսությանը ոչ պիտանի հողեր։ Հարկ է նշել, որ Չեխոսլովակիայում՝ վերջերս, հատուկ օրենքի համաձայն ձեռնարկության տնտեսական շահավետությունը որոշելու համար նրա շինարարության արժեքի մեջ մտցվում է նաև գյուղատնտեսական արտադրանքի կորուստների արժեքը (այն ամբողջ ժամանակի համար, երբ վերցված է հողը), ինչպես ռեկուլտիվացիայի (հողային շերտի վերականգնման) արժեքը։

Մեր երկրում այդպիսի միջոցառումներ կիրառվում են միայն փորձնական ձևով։ Բայց դրանք էլ ցույց են տալիս, որ հողերի տնտեսական գնահատականը տարբեր կերպ է ազդում շինարարության արժեքի ու արտադրանքի ինքնարժեքի վրա։ Այս տեսակետից հետաքրքրական հաշվարկներ են բերվում Ս. Լյաշչենկոյի Շինարարությունը, հողը, տնտեսական նպատակահարմարությունը հոդվածում (Экономика сельского хозяйства, 1965 թ., № 4-ում)։

Որոշ տնտեսագետներ գտնում են, որ արդյունաբերության մեջ արտադրության հիմնական ֆոնդերի համար վճարումներ սահմանելիս պետք է վճարումներ սահմանել նաև հողի համար, որը գյուղատնտեսության գլխավոր արտադրամիջոցն է։ Նրանք գտնում են, որ հողի նկատմամբ անտնտեսվար վերաբերմունքի պատճառներից մեկն էլ նրա «ձրի» լինելն է և առաջարկում են սահմանել, այսպես կոչված, ռենտային վճարումներ բյուջեին, ըստ տվյալ ձեռնարկության կողմից օգտագործվող հողերի բերրիության։ Իսկ հողի որակը պետք է որոշվի կադաստրի և հողի տնտեսական գնահատականի հիման վրա (տե՛ս Մ. Բրոնշտեյնի հոդվածը 1966 թ. հունվարի 18-ի «Известия»-ում)։ Այսպիսով, ըստ էության, հարց է դրվում՝ որոշել ո՛չ միայն առանձին հողամասերի համեմատական արժեքը բալերով, այլև մշակվող յուրաքանչյուր հեկտարի եկամտաբերությունը՝ արտահայտված ռուբլիներով։

Իհարկե, այս բոլոր հարցերը վիճելի են և պահանջում են հատուկ ուսումնասիրություն։ Սակայն բուն հարցադրումը, մեզ թվում է, արդարացի է և չի հակասում մարքսիստական այն դրույթին, թե քանի որ հողը չի ստեղծվել մարդու աշխատանքով, ուրեմն արժեք չունի։ Չէ՞ որ խոսքը ամբողջ հողի մասին չէ, այլ միայն նրա այն մասի, որի մեջ մշակման պրոցեսում ներդրվում է հասարակական աշխատանք։ Այդպիսի հողը ոչ միայն աշխատանքի միջոց է դառնում, այլև որոշակի չափով՝ մարդկանց աշխատանքի արդյունք։ Այդ առումով էլ հնարավոր է նրա գնահատումը։

Ներկա հոդվածում հողի տնտեսական գնահատման հարցը մենք կքննարկենք միայն այն տեսակետից, թե ինչո՞ւ են անհրաժեշտ տարբեր բնական-տնտեսական պայմաններում գտնվող հողերի որակի վերաբերյալ համեմատական տվյալները։ Այդպիսի գնահատման համար պետք է որոշել հողի արդյունավետ պտղաբերությունը և այդ արտահայտել այնպիսի ցուցանիշներով, որոնք հնարավորություն կտան որոշ հողամասեր մյուսների հետ համեմատելու։

ВНИИЭСХ-ի մշակած մեթոդիկայում առաջադրվում են հողի գնահատման երկու հիմնական ցուցանիշ՝ համախառն արտադրանքի արժեքն ըստ պետական գնման նորմաների և գնահատվող հողերի մեկ հեկտարից ստացվող պայմանական զուտ եկամուտը։ Այս ցուցանիշների կիրառումը մի կողմից արդարացվում է, իսկ մյուս կողմից՝ հարուցում մի շարք տեղին առարկություններ։ Այն արդարացվում է նրանով, որ մեզ մոտ գոյություն ունի բազմաճյուղ տնտեսություն և, հաճախ, միևնույն հողերում մշակվում են տարբեր կուլտուրաներ, որոնց համախառն արդյունքը պետք է արտահայտել համեմատելի արժեքային միավորներով՝ վերահաշվարկելով կերային միավորների, կալորիաների, հացահատիկի և այլն։

Սակայն ըստ պետական գնման նորմաների (համախառն արդյունքի արժեքով) հողերը գնահատելու վրա մեծ ազդեցություն է գործում ցանքերի ստրուկտուրան կամ նույնիսկ մի որևէ՝ փոքր տարածություն գրավող, բայց բարձր եկամտաբերություն ունեցող կուլտուրայի տեսակարար կշիռը։ Սա պայմանավորված է գնման գների թերություններով. այդ գները դեռևս զգալիորեն շեղվում են արժեքից և որոշ մթերքների համար ապահովում արտադրության բարձր շահութաբերություն, իսկ մյուսների գծով՝ հազիվ ծածկում են արտադրության անհատական ծախսերը։ Հետևանքը կարող է լինել այն, որ միանման որակ ունեցող, բայց տարբեր կուլտուրաներով զբաղեցված հողերը կստանան տարբեր գնահատականներ։

Այսպես, օրինակ, Հայկական ՍՍՀ-ում դաշտավարության մեջ ձեռնտու են տեխնիկական կուլտուրաները, առանձնապես ծխախոտը։ Գրավելով ցանքատարածության միայն 7—8 տոկոսը, տեխնիկական կուլտուրաները տալիս են ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների բուսաբուծության համախառն արտադրանքի մեկ քառորդից ավելին։ Հետևաբար, կողք-կողքի գտնվող և արտադրության միատեսակ պայմաններ ունեցող կոլտնտեսությունների հողերից ավելի բարձր կգնահատվեն այնպիսիք, ուր բարձր է տեխնիկական կուլտուրաների տեսակարար կշիռը։ Եվ, հակառակը՝ նվազ բերրիություն ունեցող հողերը կարող են բարձր բերքատվություն ունեցողներին հավասար գնահատվել, եթե այնտեղ մշակվում են ավելի աշխատատար և, հետևաբար՝ բարձր



վարձատրվող կուլտուրաներ, չնայած դրանք քիչ բերք են տալիս։ Օրինակ, միատեսակ պետք է գնահատվեն հեկտարից 30 ց. ցորեն, 1ց. ծխախոտ կամ 40 ց. բանջարեղեն տվող հողերը (եթե գնահատվեն ըստ պետական գնման գների)։ Բացի այդ, տարբեր կուլտուրաներ հողի, կլիմայի և մյուս պայմանների նկատմամբ տարբեր պահանջներ են առաջադրում և ունեն մշակման տարբեր ագրոտեխնիկա։ Որոշ կուլտուրաների համար բարենպաստ հողերը կարող են այլ կուլտուրաների համար բոլորովին պիտանի չլինել։

Պետական գնման գներում համախառն արտադրանքի ցուցանիշի կիրառումը, առանց հաշվի առնելու արտադրության ծախսերը մեր հանրապետությունում (որտեղ արտադրության պայմանները շատ բարդ են), կարող է սխալ պատկերացում տալ տարբեր բնա-տնտեսական պայմաններում գտնվող հողերի համեմատական արժեքավորության մասին։ Իբրև օրինակ վերցնենք երկու շրջաններ, որոնք գտնվում են Սևանի ավազանի միևնույն գոտում՝ Մարտունու և Սևանի շրջանները։ Առաջին շրջանի կոլտնտեսություններում վարելահողի մեկ հեկտարին ընկնում է երեք անգամ ավելի արտադրանք, քան երկրորդում։ Բայց այդ դեռևս չի նշանակում, թե Մարտունու շրջանի հողերն իրենց բնական հատկություններով երեք անգամ լավ են Սևանի շրջանի հողերից։ Բանը նրանումն է, որ այստեղ մշակվում է աշխատատար, բայց եկամտաբեր կուլտուրա՝ ծխախոտը։ Եթե հողերի որակի համեմատությունը կատարենք ըստ համախառն արտադրանքի արժեքի ու արտադրության ծախսերի հարաբերության, ապա կպարզվի, որ Մարտունու շրջանում վարելահողերի արտադրողականությունը, Սևանի շրջանի համեմատությամբ, բարձր է միայն 28—30 տոկոսով, որն, անշուշտ, ավելի մոտ է ճշմարտության։ Այսպիսով, մեզ թվում է, համախառն արտադրանքի ու ծախսումների հարաբերության ցուցանիշը ավելի ճիշտ է արտահայտում հողի տնտեսական բերրիությունը, քան միայն համախառն արտադրանքի արժեքը՝ պետական գնման գներով արտահայտված։

Կարևոր ցուցանիշ է հողի մեկ հեկտարից ստացվող համախառն արտադրանքի արժեքը, որը բնութագրում է գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման արդյունքները, որոնք, իհարկե, որոշ չափով կախված են նաև հողի որակից։ Սակայն այդ ցուցանիշը, ինչպես նաև տարածության մեկ միավորից ստացվող զուտ եկամուտը ներկա պայմաններում մեծ չափով արտացոլում են ձեռնարկությունների տնտեսական գործունեության արդյունքները և միայն նվազագույն չափով են բնորոշում հողն իբրև գյուղատնտեսության գլխավոր արտադրամիջոց։ Մինչև այժմ չեն սահմանվել այնպիսի ցուցանիշներ, որոնք առավել չափով համապատասխանեին առաջադրված խնդրին։ Հողի գնահատման համար առաջարկվող մյուս բոլոր ցուցանիշները նույնպես անկատար են և ունեն շատ թերություններ։

Հողի արդյունավետ բերքատվության գոյացումը բարդ պրոցես է, որին մասնակցում են բնա-պատմական և տնտեսական շատ գործոններ։ Այդ պատճառով մեզ թվում է հնարավոր չէ այն գնահատել մեկ ցուցանիշով։ Անհրաժեշտ է մշակել ցուցանիշների մի ամբողջ սիստեմ, որոնց կիրառումը հնարավորություն կտա լուծելու հողերի տնտեսական գնահատման խնդիրները։ Իսկ այդպիսի խնդիրները շատ են։ Սակայն հողերի տնտեսական գնահատումն առաջին հերթին անհրաժեշտ է այնպիսի հարցերի լուծման համար, ինչպիսիք են՝ արտադրության ճիշտ տեղաբաշխումը, ցանքերի ռացիոնալ կառուցվածքի սահմանումը, հողագործության կուլտուրայի բարձրացումը (ճիշտ ցանքաշրջանառությունների մշակումն ու արմատավորումը, հողագործության ձևավորված սիստեմների տնտեսական գնահատումը, նոր, ավելի կատարելագործված սիստեմների մշակումը և այլն)։ Այդ նպատակների համար անհրաժեշտ է հողերի գնահատումը կատարել ըստ առանձին կուլտուրաների բերքատվության և դրանց արտադրության վրա կատարված ծախսերի։

Այս տեսակետից ուշադրության արժանի է հողի՝ ըստ համաչափելի բերքատվության և արտադրանքի ինքնարժեքի տնտեսական գնահատման մեթոդը, որ մշակել է Ղազախստանի ԳԷԳՀ ինստիտուտը և որը փորձարկված է Հյուսիսային Ղազախստանի սովխոզներում և կոլտնտեսություններում [1]։ Հետաքրքրական է նաև Բելոռուսիայում կատարված հողերի գնահատման փորձը, ըստ հիմնական կուլտուրաների բերքատվության՝ հավասարամեծ ծախսումների պայմաններում [2]։

Ըստ բերքատվության և արտադրանքի, հողերի գնահատումը մեծ չափով արտացոլում է տարբեր հողերի արտադրական արդյունավետությունը. այդ է նրա առավելությունը։ Չէ՞ որ կարևոր է իմանալ ո՛չ միայն մեկ հեկտարից ստացվող արտադրանքի, այլև կատարված ծախսումների չափը։

---

1 *Николенко Г. С.*, Экономическая оценка земель. Алма-Ата, 1964.

2 *Медведев А. и др.*, Экономическая оценка земель и ее применение в сельском хозяйстве, Минск, 1964.

թեք լանջերը, նախապատրաստում այգետնկման: Այդ նպատակով արդեն թփերից ու քարերից մաքրվել, մշակման համար պիտանի են դարձել շուրջ 200 հեկտար:

Շրջանի բոլոր տնտեսություններն ունեն թըմբավորման ենթակա հողեր: Դրանց տարածությունը Աչաջրի սովխոզում 250 հեկտար է, Իջևանում՝ 230, Սևքարում՝ 500, Խաշթառակի կոլտնտեսությունում՝ 250, Ջողազում՝ 150, Ռևազլուում՝ 80. սրանք առաջիկա տարիներին պետք է մշակվեն:

Առատ բերք ստանալու պայմաններից մեկը ոռոգումն է: Իջևանը հարուստ է գետակներով, որոնք տարիներ շարունակ մնացել են անօգտագործելի: Վերջին տարիներին շրջանում որոշ աշխատանք է տարվել ոռոգելի ջրանցքների կառուցման, գետերի ափամերձ հողերը ջրովի դարձնելու ուղղությամբ: 1960 թվականից սկսած շրջանի կոլտնտեսություններում և սովխոզներում ոռոգելի է դարձել շուրջ 1200 հեկտար վարելահող:

Վերջին տարիներին նշանակալից աշխատանք է տարվել նաև գյուղատնտեսությունը մեքենայացնելու, կոլտնտեսականների և սովխոզների բանվորների աշխատանքային պայմանները բարելավելու ուղղությամբ: Շրջանում շուրջ 200 հեկտար ծխախոտի պլանտացիաներ արդեն մըշակվում են մեքենաներով:

Պետք է ասել, որ շրջանի հողերի մելիորացիան մեծապես կախված է հանրապետության համապատասխան կազմակերպությունների օգնությունից: Ճիշտ է, մեզ մոտ ոռոգման ցանցի ընդարձակման ուղղությամբ որոշ գործ արված է, սակայն այն դեռևս չի բավարարում մեր պահանջները: Անհրաժեշտ է արագացնել Թալալուսաձոր, Լուսաձոր-Ն. Աղդան և Սևքարի ջըրհան կայանների կառուցումը: Հանրապետության ջրային տնտեսության մինիստրությունը պատշաճ ուշադրություն չի նվիրում այս աշխատանքներին: Ոչինչ չի արվում նաև Ջողազ գետի ջրերի օգտագործման ուղղությամբ: Այն զարմանալիորեն վրիպել է մինիստրության ղեկավարների և ջրաշինարարների ուշադրությունից:

ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումում ընկ. Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ ջրանցքների ու ջրամբարների կառուցումը պետք է ընթանա նոր հողերի յուրացմանը զուգահեռ, մի բան, որը մեզ մոտ կատարվում է մեծ թերություններով:

Սակայն նախատեսված ջրհան կայանների և ջրամբարների կառուցմամբ հնարավոր չէ լրիվ ոռոգելի դարձնել իրացվող և, ընդհանրապես, երկրագործության պիտանի հողերը: Հանրապետության համապատասխան կազմակերպությունները պետք է հոգ տանեն նաև կոլտնտեսություններին և սովխոզներին ջրային պոմպերով, տրանսֆորմատորներով, խողովակներով ապահովելու մասին:

Մելիորացիոն աշխատանքում կարևոր է հողի պահպանումը: Չնայած հողային ֆոնդերի պահպանման, վարելահողերի ընդարձակման ուղղությամբ ձեռնարկված միջոցներին, էռոզիայի հետևանքով շրջանում ավելի քան 1000 հեկտարով պակասել է վարելահողերի տարածությունը: Անհրաժեշտ է, որ ջրային պրոբլեմների և հիդրոմելիորացիայի գիտահետազոտական ինստիտուտի աշխատողները լինեն տեղերում, ուսումնասիրեն և օգնեն կանխելու էռոզիան: Ուստի, լավ կլինի, եթե գյուղատնտեսության մինիստրությունը մեխանիզատորների և տնտեսությունների մասնագետների համար կազմակերպի կարճատև դասընթացներ, էքսկուրսիաներ:

Հողերի բերրիության բարձրացման ծավալուն ծրագրի, մելիորատիվ միջոցառումների մեծ կոմպլեքսի իրագործումը համապատասխանում է գյուղատնտեսության զարգացման շահերին:

Կուսակցության շրջանային կոմիտեն, սկզբնական կազմակերպությունները, գյուղատնտեսության բնագավառի բոլոր աշխատողներն իրենց հերթին կանեն ամեն բան՝ հողի յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը բարձրացնելու և գյուղատնտեսական մթերքների արտադրությունը ավելացնելու համար:

ՎԼ. ՂԱԼՈՒՄՅԱՆ
ՀԿԿ Իջևանի շրջկոմի քարտուղար

---

# ՁԿՆԵՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

Ձկնաբուծությունն ու ձկնարդյունաբերությունը Սովետական Հայաստանի էկոնոմիկայում ուրույն տեղ ունեն: Մեր խմբագրության աշխատակիցը զրույց ունեցավ Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի Ձկնատնտեսության միավորման նախագահ ընկ. Շ. Մ. Առուշանյանի հետ, խնդրեց պատմել հանրապետության ձկնարդյունաբերության ու ձկնաբուծության զարգացման հեռանկարների մասին

Ստորև տպագրում ենք այդ ինտերվյուն

ՀԱՐՑ. Ինչպիսի՞ վիճակում է ձկնարդյունաբերությունը մեր հանրապետությունում:

ՊԱՏԱՍԽԱՆ. Մեր հանրապետությունը ձըկնարդյունաբերության և ձկնաբուծության զարգացման լայն հնարավորություններ չունի: Այդ գլխավորապես հետևանք է այն բանի, որ Հայաստանում գետերը սակավաջուր և արագահոս են, լճերն ու լճակները՝ սակավաթիվ: Այժմ ձկան որս է կատարվում միայն Սևանա և մասամբ էլ Արփի լճերում:

Հետաքրքրական է նշել, որ բնական ջրամբարներում աշխարհում ամենից շատ իշխան է որսվում Սևանա լճում:

Սևանի ձկան կոմբինատն ունի երեք ձկնորսարան (Նորադուզ, Մարտունի, Կարճաղբյուր) և մեկ որսակետ (Սևան): Յոթնամյակում, ըստ պետական պլանի նախագծման, կոմբինատը պետք է որսար 63030 ցենտներ ձուկ, այդ թվում՝ իշխան տեսակի (իշխան, ամառային և ձմեռային բախտակ, գեղարքունի, բոջակ)՝ 20900, սիգ՝ 9150, կողակ՝ 32980 ցենտներ: Պլանը գերակատարվել է. հայթայթվել է 67506 ցենտներ ձուկ (իշխան՝ 18572, սիգ՝ 15994, կողակ՝ 32932 ցենտներ): Կոմբինատի յոթնամյակի համախառն արտադրանքի պլանը 4 միլիոն 243 հազար ռուբլի էր: Այդ, ինչպես նաև օգուտների, աշխատանքի արտադրողականության բարձրացման և ինքնարժեքի իջեցման պլանները գերակատարվել են:

Կոմբինատի կոլեկտիվը 1965 թվականին պատվով դուրս եկավ սոցիալիստական մրցությունից և արժանացավ առաջին կարգի մրցանակի:

ՀԱՐՑ. Որո՞նք են հանրապետության ձկնարդյունաբերության խնդիրները նոր հնգամյակում:

ՊԱՏԱՍԽԱՆ. ՍՄԿԿ XXIII համագումարում ՍՍՀՄ Մինիստրների սովետի նախագահ ընկ. Ա. Ն. Կոսիգինն իր զեկուցման մեջ և առանձին պատգամավորներ իրենց ելույթներում նշեցին ձկնաբուծության և ձկնարդյունաբերության զարգացման խնդիրները: Ընկեր Կոսիգինն ասաց, որ նոր հնգամյակում ձկան որսն ավելանալու է 1,5—1,6 անգամ:

Մեր հանրապետության հնգամյա պլանում նախատեսվել է լճակային ձկնաբուծության լայն զարգացում: Ավելի լավ պետք է դրվի գետերի ու այլ ջրամբարների ձկնապաշարների պահպանման գործը: Խիստ պատասխանատվության կենթարկվեն այն անձինք, ովքեր գետերը, լճերն ու ջրամբարներն են թափում արդյունաբերական ու կոմունալ ձեռնարկությունների կեղտաջրերը:

Հայաստանում ձկնարդյունաբերությունը և ձկնաբուծությունը զարգանալու են ջրամբարների ու լճակների լայն ցանց ստեղծելու միջոցով: Այդ և մյուս միջոցառումները հնարավորություն կտան 1966—1970 թվականներին հանրապետությունում ձկան որսը յոթնամյակի համեմատությամբ գրեթե կրկնապատկելու:

Այս տարի ձկան որսի պլանն է 10000 ցենտներ, որից՝ իշխան տեսակի 2600, սիգ՝ 3100, կողակ՝ 4100, ծածան՝ 200 ցենտներ: Հնգամյակի առաջին տարվա համար հաստատված 10000 ցենտների փոխարեն հնգամյակի վերջին տարում ձկան որսը կաճի մոտ երկու անգամ:

Մեզ մոտ հնարավոր է ձկան որսն ավելացնել երկուսից ավելի անգամ. սակայն միայն Սևանա և Արփի լճերից չենք կարող այդքան ձուկ ստանալ: Ձկնալճակային տնտեսությունների ստեղծումով միայն (որոնց հիմքը դրված է այս տարվանից) կավելանա ձկան որսը:

ՀԱՐՑ. Մոտակա տարիներին ի՞նչ գործնական աշխատանքներ են տարվելու ձկնարդյունաբերությունը զարգացնելու ուղղությամբ:

ՊԱՏԱՍԽԱՆ. Ձկան պաշարներն ավելացնելու և հանրապետության բնակչությանը շատ ձուկ տալու գործում մեծ նշանակություն ունի ձկնատնտեսության ստեղծումը: Սովետական Հայաստանի կլիմայական պայմանները նպաստավոր են արդյունաբերական ձկնատնտեսության ստեղծման համար: Այս տարի սկսված է ձկան լճակային տնտեսության ստեղծումը: Այդ նպատակին հատկացվելու է մոտ 800 հազար ռուբլի: Էջմիածնի շրջանի Այղր լճի աղբյուրների ջրերի բազայի վրա լճի մոտակայքում արդեն կառուցվում է ֆորելի լճակային տնտեսություն, որի նախագծային-նախահաշվային արժեքն է 722 հազար ռուբլի: 1966 թվականին շինարարության համար հատկացված է 240

հազար ռուբլի և 15 հեկտար հողամաս, որից միայն 1,8 հեկտարի վրա լճակներ են կառուցվելու։ Դրանք տարեկան պետք է տան 900 ց. ֆորել։ Հոկտեմբերյանի շրջանի Եղեգնուտի սովխոզի շրջակայքում հատկացված է 209 հեկտար աղակալած, չօգտագործվող հողային մասսիվ։ Այստեղ հիմնվում է Կարպի լճակային տնտեսությունը, որի նախագծային-նախահաշվային արժեքն է 654 հազար ռուբլի։ 1966 թվականին շինարարության համար նախատեսված է 256 հազար ռուբլի։ Լճակային տնտեսությունը տարեկան տալու է 2600 ցենտներ ձուկ։

Հայկական ՍՍՀ մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրության, տրեստի և շինվարչության ղեկավարները լուրջ ուշադրություն են նվիրում ձկան լճակային տնտեսություն ստեղծելուն։ Նրանք կանեն ամեն ինչ, որպեսզի ժամանակին ավարտեն լճակային տնտեսությունների հիմնադրումը։

Այժմ Սևանում կառուցվում է ձկնաբուծման բազա։ Սա, իհարկե, գործի սկիզբն է։ Նախապատրաստական աշխատանքներ են տարվում հետագայում նոր տնտեսություններ ստեղծելու ուղղությամբ։ Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի որոշմամբ Էջմիածնի շրջանի Մրգաշատ սովխոզի և Այղր լճի շրջակայքում աղակալած, դարերով չօգտագործվող հողերից 785 հեկտար հատկացված է ձկնատնտեսության միավորմանը։ Մոսկվայի և Ռոստովի ինստիտուտներից եկած մասնագետներն արդեն ավարտել են նախապատրաստական աշխատանքները՝ նախագծերն ու նախահաշիվները։ Որոշված է երկու տնտեսությունների հիմնադրումը մտցնել 1967—68 թվականների պետական պլանի մեջ։ Ջերմուկ քաղաքի առողջարանները թարմ ձկով ապահովելու համար այնտեղ ֆորելային լճակային տնտեսություն է ստեղծվելու։

Հոկտեմբերյանի, Էջմիածնի, Արտաշատի և Վեդու շրջաններում կան չօգտագործվող հողային տարածություններ, որոնք ուսումնասիրվել են նոր լճակային տնտեսություններ ստեղծելու նպատակով։ 1966 թվականին Կամոյի և Կարճաղբյուրի ձկնագործարանների ընդարձակման և կերի բազան ավելացնելու համար նախագծեր են կազմվելու և մտցվելու 1967—68 թվականների շինարարական պլանի մեջ։ Վերոհիշյալ լճակային տնտեսությունները Սևանա լճից ավելի շատ ձուկ կտան։

Հանրապետությունում ձկան պաշարներն ավելացնելու կարևոր պայմաններից մեկն էլ կառուցված և կառուցվող ջրամբարներն են։ Հայկական ՍՍՀ մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրությունը Ապարանում, Արթիկում և Թալինում կառուցել է խոշոր ջրամբարներ։ Խոշոր ջրամբարներ կկառուցվեն նաև Ղուկասյանում, Ախուրյանում և մյուս շրջաններում։ Տաթևի, Շամբի, Տոլորսի, Անգեղի հիդրոէլեկտրակայանների կառուցման շնորհիվ Սիսիանի շրջանում ստեղծվելու է չորս խոշոր և միջին ջրամբար։ Հետագայում Ստեփանավանի և մյուս շրջաններում ևս կկառուցվեն նոր ջրամբարներ։ Այս տարվանից Արփի լճից ձկներ են (արտադրողներ) տեղափոխելու Ապարանի լիճը։ Կամոյի ձկնագործարանը Ապարանի լիճն է լցրել 15 հազար ձկնիկ-գեղարքունի և Մանթաշի ջրամբարը՝ 5000 ձկնիկ։

Այժմ ուսումնասիրվում է, թե որ ջրամբարում ինչ տեսակի ձուկ կարելի է աճեցնել, ձկնաբուծական ինչպիսի նոր գործարաններ կառուցել։

ՀԱՐՑ. Կոլտնտեսություններին և սովխոզներին ձեռնտո՞ւ է ձկնարդյունաբերությամբ զբաղվելը։

ՊԱՏԱՍԽԱՆ. Այո՛։ Մեր հանրապետության շատ կոլտնտեսություններ ու սովխոզներ մեծ հնարավորություններ ունեն զբաղվելու տնտեսության այդ արդյունավետ ճյուղով։

Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն և Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետը 1964 թվականի հուլիսի 7-ի որոշմամբ գյուղատնտեսության մինիստրությանը պարտավորեցրել են կոլտնտեսություններում և սովխոզներում կառուցել ձուկ աճեցնելու լճակներ։ Նրանք միաժամանակ ձկնատնտեսության միավորմանը պարտավորեցրել են կոլտնտեսություններն ու սովխոզներն ապահովել ձկնկիթով, թրթուրով և ձկնիկներով։ Շատ կոլտնտեսություններ ու սովխոզներ նպաստավոր պայմաններ ունեն ձկնաբուծական լճակային տնտեսություններ ստեղծելու համար։ Լճակային տնտեսություններ կարող են կառուցել կես հեկտարից մինչև մեկ-երկու հեկտար հողամասի վրա։ Եթե առանձին կոլտնտեսություններ և սովխոզներ կցանկանան ստեղծել խոշոր ձկնաբուծական տնտեսություն, ինչպես այդ անում են մյուս հանրապետություններում, ապա դա հնարավոր է և խրախուսելի։

Գյուղատնտեսության մինիստրությունն անհրաժեշտ ցուցումներ պետք է տա այն կոլտնտեսություններին ու սովխոզներին, որոնք ի վիճակի են զբաղվելու նաև ձկնաբուծությամբ, որը եկամտաբերության լրացուցիչ աղբյուր կհանդիսանա։ Ձկնաբուծական գործարանները կոլտնտեսություններին և սովխոզներին կապահովեն ձկնկիթով, թրթուրով և ձկնիկներով։

ՀԱՐՑ. Ի՞նչ է արվելու առաջիկայում ձկնաբուծության զարգացման բնագավառում։

ՊԱՏԱՍԽԱՆ. Ձկնարդյունաբերությունը զար-



գացնելու գործում վճռական է ձկնաբուծության դերը։ Անցյալ տարի հանրապետության Սևանի, Կամոյի և Կարճաղբյուրի բուծարանները հավաքել են 125 միլիոն ձկնկիթ, լճերն ու գետերն են թողել 90 միլիոն թրթուր և 2 միլիոն ձկնիկ։ Այս տարի այդ գործարանները հավաքելու են 208 միլիոն ձկնկիթ, որից գեղարքունի՝ 51 միլիոն հատ, ձմեռային բախտակ՝ 2 միլիոն, ամառային բախտակ՝ 19 միլիոն, սիգ՝ 2 միլիոն և կողակ՝ 134 միլիոն հատ։ Բուծարանները պետք է պատրաստեն և աճեցնեն թրթուր՝ 165 միլիոն 780 հազար և ձկնիկներ՝ 2 միլիոն 150 հազար հատ։ Արփի լճի ձկնաբուծարանը պետք է աճեցնի մեկ միլիոն ձկնիկ և աշնանը թողնի լիճը։ Մեր հանրապետության ձկնաբուծարաններն աճեցնում են ամառային և ձմեռային բախտակ, գեղարքունի, սիգ և կողակ։

Ձկնաբուծությունը մեծ դեր է խաղում ձկան պաշարներն ավելացնելու գործում։ Անհրաժեշտ է մեծ ուշադրություն նվիրել ձկնաբուծարանների ընդարձակմանը և կերի անհրաժեշտ բազա ստեղծելուն։

1965 թվականի երկրորդ կեսին Ամասիայի շրջանի Արփի լճի բազայի վրա ստեղծվեց ձկնաբուծարան, որը նոր կառուցված լճակներում պետք է աճեցներ ձկնիկներ, թողներ լիճը և միաժամանակ ձուկ որսար։ Չնայած բուծարանը նոր էր, բայց որսաց 92 ցենտներ ծածան և լճակներում աճեցրեց կես միլիոն ձկնիկներ ու թողեց լիճը։

Հայկական ՍՍՀ-ն չունի կարպ տեսակի ձուկ։ 1965 թվականին այն աճեցնելու առաջին փորձն արվեց։ Կարպը աճեցնում են Արտաշատի շրջանի Սարջալար գյուղի մոտ գտնվող լճակում։ Վրացական ՍՍՀ-ի ձկնատնտեսության կազմակերպությունները, օգնության կարգով, մեզ տրամադրեցին երկու հազար հատ կարպ ձկնիկ, որը մայիս ամսին թողնվեց լիճը։ Նոյեմբերին արդեն այս համեղ ձկան քաշը 20—30 գրամից հասավ 400—500 գրամի։

Կարպը լավ է աճում շոգ վայրերում (նըպաստավոր են Էջմիածնի, Հոկտեմբերյանի, Արտաշատի, Վեդու շրջանները)։ Կարպ ձկան մայրական կազմը տասնյակ անգամ ավելի ձկնկիթ է տալիս, քան իշխանը կամ կողակը։ Այսպես, մեկ կարպ ձուկը տալիս է մինչև 500.000 ձկնկիթ, ամառային բախտակը՝ 1200, ձմեռայինը՝ 2000, գեղարքունին՝ 1200, կողակը՝ 30.000, ծածանը՝ 200.000, սպիտակ ամուրը՝ մինչև մեկ միլիոն։

Մասնագետների կարծիքով, Արարատյան դաշտավայրում պետք է աճեցնել կարպ, ծածան, սպիտակ ամուր։ Կարպը կարող է լավ բազմանալ նաև նախալեռնային շրջաններում։

ՀԱՐՑ. Ինչպե՞ս են ներդրվում գիտության նվաճումները ձկնաբուծության մեջ։

ՊԱՏԱՍԽԱՆ. Ինչպես ողջ ժողովրդական տնտեսությունը, այնպես էլ ձկնարդյունաբերությունն ու ձկնաբուծությունը զարգանում են գիտության և տեխնիկայի առաջավոր փորձի հիման վրա և նրանց արմատավորմամբ։ Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիան Սևանում ունի հիդրոբիոլոգիական կայան, որն զբաղվում է լճերի, գետերի և նրանց մեջ եղած ձկների, կենդանիների ուսումնասիրման և այլ հարցերով։ Կայանը զգալի աշխատանք է տանում ձկան պաշարներն ուսումնասիրելու, ձկնաբուծությունը զարգացնելու, պլանները կազմելու ուղղությամբ։ Ձկնատնտեսության միավորումը և ձեռնարկությունները հիդրոբիոլոգիական կայանի հետ միասին ստուգում ու որոշում են ձկնաբուծության զարգացման հետ կապված հարցերը։ Հիդրոբիոլոգիական կայանը և նրա ղեկավարները կարող են մեծ օգնություն ցույց տալ նաև կոլտնտեսություններում ու սովխոզներում ձկնաբուծության գործի կազմակերպմանը։

Ձկնարդյունաբերության մեքենայացումը կընպաստի դրա զարգացմանը։ Այժմ Սևանա և Արփի լճերում ձկան որսը համարյա ձեռքով է արվում։ Ձկնատնտեսության միավորումը և Սևանի ձկան կոմբինատը որոշ միջոցներ են ձեռնարկել լճերում որսը մեքենայացնելու համար։ Այդ նպատակով ՍՍՀՄ ձկնատնտեսության մինիստրությունը Մոսկվայից և Լենինգրադից մասնագետներ է գործուղել Սևան։ Արդեն ստացված է ուռկան ձգող չորս մեքենա։

ՀԱՐՑ. Առանձին քաղաքացիներ իրավունք ունե՞ն ձուկ որսալու։

ՊԱՏԱՍԽԱՆ. Այո՛, ունեն։ Ձկնորսությունը սպորտի ձև է և մարդու հանգստի լավագույն միջոց։ Սակայն նրանք ձկնորսությամբ (լճերում, լճակներում ու գետերում) զբաղվելու իրավունք ունեն միայն պետության սահմանած օրենքներով։ Բայց, ցավոք, դեռևս կան մարդիկ, որոնք անխղճորեն ոչնչացնում են ձկան պաշարները և մեծ վնաս հասցնում ժողովրդական տնտեսությանը։ Հասարակական կազմակերպությունները, վարչական օրգանները պետք է պայքարեն որսագողերի դեմ։ Լճերը, գետերը, ձկները մեր հայրենի երկրի, ժողովրդի սեփականությունն ու հարստությունն են, այն պետք է խնամքով պահպանել, հարստացնել։

Ձկնաբուծության զարգացմանը խանգարում է նաև գետերն աղտոտելը։ Հանրապետության մի շարք գետեր (Ողջի, Հրազդան, Դեբեդ) այնպես են աղտոտվել արտադրական թափոններից ու այլ կեղտերից, որ այլևս հնարավոր չէ ո՛չ ձուկ աճեցնել, ո՛չ էլ որսալ։ Վտանգի տակ են նաև մյուս գետերը։ Ժամանակն է, որ

համապատասխան մինիստրությունների ու ձեռնարկությունները միջոցներ ձեռնարկեն կատարելու ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումները և կիրառելու բնության պահպանության մասին օրենքը։

ՀԱՐՑ. Այս տարի հանրապետությունում ինչպե՞ս է ընթանում ձկան որսը։

ՊԱՏԱՍԽԱՆ. Մինչ այդ հարցին պատասխանելը, կուզենայի անդրադառնալ կադրերին։ Ինչպես բոլոր բնագավառներում, այնպես էլ ձկնարդյունաբերության մեջ գործի հաջողությունը մեծ մասամբ կախված է կադրերի ընտրությունից ու ճիշտ դասավորումից։

Ձկնատնտեսության միավորման և նրա ձեռնարկությունների առաջնակարգ և գլխավոր խնդիրներից մեկը կադրերի պատրաստումն ու տնտեսությունները մասնագետներով ապահովելն է։ Ձկան կոմբինատը, ձկնորսարանները, ձկնաբուծարանները դեռևս ապահովված չեն ինժեներ-ձկնագետներով, տեխնոլոգներով, ձկնաբույծներով և այլն։ Ձկնատնտեսության միավորումը 1965 թվականին միջնակարգ դպրոցն ավարտած 21 հոգու սովորելու ուղարկեց Աստրախանի և Կալինինգրադի ձկնատնտեսության ինստիտուտներում։ Մի քանի տարի հետո հանրապետությունը կունենա լիարժեք մասնագետներ։ Պետք է նաև տեղերում կազմակերպել նավավարների, բրիգադավարների դասընթացներ։

Մեր հանրապետության ձկնորսները հնգամյակի առաջին տարում լավ են սկսել իրենց աշխատանքը։ Նրանք կատարել և գերակատարել են ՍՄԿԿ XXIII համագումարի պատվին ստանձնած իրենց սոցիալիստական պարտավորությունները։ 1966 թվականի հունվար—հունիս ամիսներին Սևանի ձկան կոմբինատի ձկնորսարանները 5400 ցենտների դիմաց որսացել են 5830 ցենտներ։ 1966 թվականի առաջին եռամսյակի բավարար ցուցանիշների համար Սևանի ձկան կոմբինատը արժանացել է ՍՍՀՄ ձկնատնտեսության մինիստրության և սննդի արդյունաբերության բանվորների արհեստակցական միության կենտրոնական կոմիտեի փոխանցիկ դրոշին և ստացել առաջին կարգի դրամական մրցանակ։

Սովետական Հայաստանի ձկնորսները, ձկնաբույծները և բոլոր աշխատողները, ոգևորված ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումներով, կանեն ամեն ինչ հանրապետությունում ձկնատնտեսությունը զարգացնելու համար։



# Եղբայրական ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ

## ԼԻՏՎԱՅԻ ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅՈՒՆԸ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՀԱՄԱՐ ՄՂՎՈՂ ՊԱՅՔԱՐՈՒՄ

ՄԱՐՏԻ ԲՈՑԵՐՈՒՍ

Վիլնյուսը խայտաբղետ քաղաք է։ Նոր թաղամասերի, ժամանակակից ֆաբրիկաների ու գործարանների կողքին ապաստանել են նեղ ու խաղաղ, փոքրիկ փողոցները, սրածայր կոստյոլները (եկեղեցիները), հնամենի ամրոցների փլված պատերը։

Քաղաքի հին մասում են գտնվում ճարտարապետական հոյակապ շատ կոթողներ, որոնք իրենց պատմությամբ մեզ համար թանկ են։ Հնությունից բորբոսնած աղյուսե տներում իրենց անլեգալ նիստերն են անցկացրել կոմբջիջները, խայտաճամուկ սալիկների վրա մեր պապերը զենքը ձեռքներին մարտնչել են Նեմանի երկրամասի երջանկության համար։ Այստեղ է իր հեղափոխական գործունեությունն սկսել Լիտվայի կոմերիտմիության հիմնադիրներից մեկը՝ աննկուն բոլշևիկ Յուոզաս Գրեյֆենբերգերիսը, երբ (1918 թվականին) վերադարձավ Ռուսաստանի կոմունիստական երիտասարդական միության առաջին համագումարից։

> «Մենք սկսեցինք միավորվել 1918 թվականին, երբ դեռ Վիլնյուսում էին գտնվում կայզերական օկուպանտները,— մտաբերում է կոմերիտմիության վետերան Ալդոնա Մատուլայտիտեն։—Առաջին կոմերիտականները նրանք էին, ովքեր մանկությունն անց էին կացրել ցարական կարգերի օրոք, կրել կապիտալիստական շահագործման լուծը... Կոմունիստներին հանձնարարված առաջին գործը՝ Հոկտեմբերյան հեղափոխության էության, նպատակների, սովետական իշխանության խնդիրների մասին ժողովրդին ճշմարիտ խոսք ասելն էր, աշխատավորներին օկուպանտների, սեփական բուրժուազիայի դեմ պայքարի կոչն էր, կապիտալիստների ու կալվածատերերի լուծը տապալելու կոչը»։

Ոգեշնչված Ռուսաստանի պրոլետարիատի օրինակով, Լիտվայի աշխատավորները կոմունիստների գլխավորությամբ թոթափեցին բուրժուազիայի լուծը և 1919 թվականի սկզբին հռչակեցին սովետական իշխանություն։ Շուտով Ռոկիշկում, Շիրվինտոսում, Կուպիշկում և այլուր ստեղծվեցին կոմերիտական բջիջներ։ Բայց լիտվական կոմերիտմիության միջուկը առաջվա պես մնում էր Վիլնյուսի կազմակերպությունը, որն այն ժամանակ մոտ 300 անդամ ուներ։

Հունվարի 29-ին Վիլնյուսում ընտրվեց Լիտվայի ԿԵՄ-ի ժամանակավոր կենտրոնական բյուրո։ Քանի որ անհնար էր համագումար հրավիրել, բյուրոյի անդամները, առաջնորդվելով Ռուսաստանի կոմունիստական երիտասարդական միության ծրագրով, պատրաստեցին և առանձին հրատարակեցին Լիտվայի ԿԵՄ-ի ծրագիրն ու կանոնադրությունը, այնուհետև լիտվերեն, ռու-

սերեն, լեհերեն, հրեերեն լեզուներով լույս տեսավ «Լիտվայի երիտասարդ կոմունիստ» թերթի առաջին համարը։

Լեհական ու գերմանական իմպերիալիստները չէին հաշտվում երիտասարդ հանրապետության գոյության հետ։ Եվ 1919 թվականի ապրիլի 19-ին Պիլսուդսկու լեգեոներները հարձակվեցին Վիլնյուսի վրա։ Կոմունիստների և կարմիրբանակային սակավաթիվ զորամասերի հետ մեկտեղ . հեղափոխության պատվարը հերոսաբար պաշտպանում էին նաև Կարլ Լիբկնեխտի անվան ջոկատում համախմբված կոմերիտականները։

«Ամեն մեկիս մոտ հինգ փամփուշտ էր մնացել։ Ջոկատի հրամանատար Կոստաս Իվանովասը, Յուոզաս Գրեյֆենբերգերիսը, բոլոր կոմերիտականները այդ ծանր պահին աներեր էինք։ Մենք լավ գիտեինք, որ նրանք, ովքեր սովետների իշխանության համար են կռվում, ուրիշ ելք չունեն...»,— վկայակոչում է ջոկատի մարտիկ Է. Տաուկայտեն։

Ինտերվենտների և հակահեղափոխականների միացյալ հորդան խեղդեց սովետական հանրապետությունը։ Այսօր մենք հպարտությամբ ենք արտասանում ժողովրդի բարօրության համար մղված մարտերում ընկած մեր ավագ ընկերների և հերոս կոմերիտականների՝ Բրոնե Կաշլաուսկայտեի, Պովիլաս Ավիդոնասի, Նիկոլայ Վոլովի ու շատ շատերի անունները։

## ՌԵԱԿՑԻԱՅԻ ՏԱՐԻՆԵՐԸ

Կոմերիտմիության տրադիցիաները՝ բուռն ատելությունը շահագործողների, իմպերիալիստների հանդեպ, արիությունը, վտանգի արհամարհումը, աննկունությունը հեղափոխության համար մղվող պայքարում ամրապնդվեցին ու զարգացան Լիտվայի պատմության ամենամռայլ ժամանակաշրջանում՝ բուրժուազիայի տիրապետության, ֆաշիստական տեռորի տարիներին։

Բազում հարվածներ տեղացին կոմերիտմիության վրա։ 1925 թվականի աշնանը պահնորդական բաժանմունքը ամպագոռգոռ հայտարարեց, թե ոչնչացված է Լիտվայի ԿԵՄ Կենտկոմը։ Դրան ի պատասխան, երկրով մեկ հնչեց հետևյալ կոչը. «Իրենց կեղծ հաղորդումներով նրանք ուզում են խուճապ առաջացնել մեր շարքերում։ Ջո՜ւր ջանքեր են դրանք։ Ընկերնե՛ր, մեր Կենտկոմը առաջվա պես գործում է... Ապագան մե՛րն է»։

1926 թվականի վերջերին, ֆաշիստական հեղաշրջումից հետո, չորս նշանավոր հեղափոխականների բանտ գցեցին ու գնդակահարեցին։ Այդ Կարոլիս Պոժելան, Յուոզաս Գրեյֆենբերգերիսը, Կազիս Գեդրիսը և Ռապոլաս Չյարնասն էր։ Ֆաշիստները շատ կոմերիտական կազմակերպություններ ոչնչացրին, ԿԵՄ-ի անդամների մեծ մասը նետվեց բանտերն ու համակենտրոնացման ճամբարները։ Լիտվայի կառավարողները համոզված էին, որ «կարմիր վտանգը» վերացել է։ Բայց նրանք շուտով գլխի ընկան, որ թերագնահատել են կոմունիստների և կոմերիտականների ուժերը։

Իրավ, նոսրացել էին կոմերիտմիության շարքերը։ Բայց զոհված ու բանտարկված ընկերներին փոխարինում էին ԿԵՄ-ի նոր անդամները։ Նրանք բարձր էին պահում մարտիկների էստաֆետը։ Հեղափոխական տոներին քաղաքների ու գյուղերի վրա ծածանվում էին կարմիր դրոշները, հազարավոր թռուցիկներ էին տարածվում, կոմունիստներն ու կոմերիտականները գլխավորում էին մասսայական ցույցերը, ղեկավարում գործադուլները։



## ԱԶԱՏԱԳՐՈՒՄԸ

1940 թվականի հունիսի 17-ին Լիտվայի աշխատավորները տապալեցին ֆաշիստական կառավարությունը և վերականգնեցին սովետական իշխանությունը։

Մեր կազմակերպության լեգալացումից մեկ շաբաթ անց, 1940 թվականի հուլիսի 4-ին, ԼԿԵՄ Կենտկոմը «Լիտվայի երիտասարդությանը» հղած դիմումում գրում էր.

> «Լիտվայում չկա այնպիսի երիտասարդական կազմակերպություն, որը դաժան տեռորի տարիներին այնպես կգոն պահպաներ երիտասարդության գործը, երիտասարդության լայն մասսաների հետ ամուր կապերի մեջ լիներ, ինչպես Լիտվայի ԿԵՄ-ն էր»։ Եվ այնուհետև՝ «Լիտվայի ԿԵՄ-ը այժմ լեգալ է։ Այն կրկնապատիկ եռանդով է պայքարում իր առջև դրված նոր խնդիրների լուծման համար»։

Գլխավոր խնդիրն էր՝ կուսակցական կազմակերպության մարտական օգնականը դառնալ պատմական այն օրերին, երբ մեր երկրամասը վերակառուցվում էր սոցիալիստական սկզբունքներով։ Հեղափոխական ժողովրդական կառավարությունը օրենք հրապարակեց բանվորական միլիցիայի կազմակերպման մասին։ Կոմերիտականները և նրանց հարող երիտասարդները դրա ակտիվ մասնակիցները դարձան։ Երբ ժողովրդական սեյմի ընտրություններ հայտարարվեց, քաղաքի և գյուղի կոմերիտական կազմակերպությունները ստեղծեցին կոմերիտական երիտասարդական բրիգադաներ, որոնք բացատրական լայն գործունեություն էին ծավալում ընտրողների շրջանում, ձևավորում ընտրական կետերը, հրավիրում ընտրողների ժողովներ, գլխավորում գեղարվեստական ինքնագործունեության ելույթները։

Հեղափոխությունը ծավալվում ու խորանում էր։ Կոմերիտականներն ու երիտասարդները մասնակցում էին կապիտալիստական արդյունաբերության ազգայնացմանն ու կալվածատիրական հողերի բաժանմանը։ Նրանցից շատերն առաջ քաշվեցին որպես ժողովրդական տնտեսության ղեկավարներ, իսկ մյուսները մեկնեցին գյուղմեքենայացման և տրակտորների վերապատրաստման կուրսեր։ Հազարավոր կոմերիտականներ զբաղվում էին անգրագետների և կիսագրագետների ուսուցմամբ, իսկ բուրժուազիան այդպիսի 400 հազար հոգի էր ժառանգություն թողել։ Կոմերիտականների նախաձեռնությամբ 1941 թվականի սկզբին հանրապետությունում ստեղծվեցին 500 ակումբ-ընթերցարան, խոշոր քաղաքներում՝ մի ամբողջ շարք կուլտուրայի տներ։

Լիտվայի երիտասարդությունը մեծ հրճվանքով ընդունեց իր սիրելի կազմակերպությունը Համամիութենական լենինյան կոմերիտական երիտասարդական միության մեջ ընդունելու լուրը։ Այդ այն երկարատև պայքարի գնահատականն էր, որը ֆաշիստական տեռորի պայմաններում, Լիտվայում սովետական կարգեր հաստատելու համար, մղում էր հանրապետության կոմերիտական կազմակերպությունը։

Լիտվայի մոտ 15 հազար կոմերիտականների բաժին ընկավ մի նոր, ծանր փորձություն՝ Հայրենական մեծ պատերազմը։

## ՌԱԶՄԱՃԱԿԱՏՈՒՄ ԵՎ ԹՇՆԱՄՈՒ ԹԻԿՈՒՆՔՈՒՄ

1941 թվականի հունիսի 22-ին ֆաշիստական հորդան անսպասելիորեն ներխուժեց մեր հայրենիքի սահմանները։ Սկսվեց Հայրենական մեծ պատե-

րազմը։ Սահմանապահ և կարմիր բանակի զորամասերի հետ մեկտեղ թշնամու դեմ ելան Վիլնյուսի հետևակային ուսումնարանի կուրսանտները։

...Նահանջի դառը օրեր։ Կուրսանտները քայլում էին առանց վախի ու խուճապի։

Ճանապարհին անսպասելի երևացին գերմանական տանկերը։

— Ուղիղ նշանառությամբ տանկերի վրա՛, կրակ,— հնչեց հրամանը։

Հրետանավորները միանգամից երկու տանկ խփեցին։ Տանկերը բռնկվեցին։

Հաղթանակ ու... նորից նահանջ։

...1941 թվական։ Մայր Վոլգայի ափերին արագորեն կազմվում էր լիտվական 16-րդ հրաձգային դիվիզիան։ Մեկ տարի անց դիվիզիան մարտի բռնվեց...

Վերջերս Ալիտուսկի 3-րդ միջնակարգ դպրոցի գավառագիտական խմբակի անդամները հետաքրքրական փաստաթուղթ գտան. այդ 5-րդ մոտոհրաձգային գնդի հրամանատար, մայոր Շադունցի ստացականն էր, որով նա հավաստում էր, թե կարմիրբանակայինների համար գյուղացիներից պարենամթերք է ստացել։ Պատանի հայրենասերները գնացին սովետական ռազմիկների մղած մարտերի հետքերով, կապեր հաստատեցին գնդի վետերանների հետ։ Եվ ահա, թե ինչպիսի նամակ ստացան նրանք Գրոդնոյից, պահեստի գնդապետ Պավել Լոպաշկինից։

> «Լիտվացի իմ պատանի բարեկամներ, ես ապշած եմ. այդ ի՞նչ հրաշքով է պահպանվել մեր 5-րդ տանկային դիվիզիայի հրամանատար, 5-րդ մոտոհրաձգային գնդի մայոր Շադունցի ստացականը։ Հայրենիքի համար այդ ծանր օրերին մեր գունդը նման գրություններ էլի է թողել։ Մենք հավատացած էինք, որ շուտով կգա այն օրը, երբ կվռնդենք ֆաշիստական հորդաներին իրենց եկած ճանապարհով ու մեր կառավարությունը կարմիր բանակին օգնելու համար վարձահատույց կլինի գյուղացիներից։ Ժողովուրդը հավատում էր մեր վերադարձին, հավատում էր, որ մենք կազատագրենք Սովետական Լիտվան։
>
> Թշնամու թիկունքում մեր զորամասը մի անգամ չէ ճակատամարտի բռնվել հիտլերյան օկուպանտների հետ, մենք պարտիզանական կռիվներ էլ ենք մղել։ Եվ միայն 1941 թվականի օգոստոսի 15-ին, Բելիյ քաղաքի տակ մղած մարտերից հետո, կարողացանք 30-րդ բանակի պաշտպանական շրջանում միանալ մերոնց։
>
> Երբ թշնամու թիկունքում էինք արշավում, մեր գնդին էին միանում այլ ստորաբաժանումներ, այդ թվում և լիտվական տերիտորիալ կորպուսի հրետանավորներ՝ սպաներ ու զինվորներ»։

Ժամանակավորապես օկուպացված Լիտվայի տերիտորիայում բոցավառվում էր պարտիզանական կռիվների հուրը։ Ժողովուրդը կենաց ու մահու կռվի էր ելել օկուպանտների և բուրժուական նացիոնալիստների դեմ։

Խուտորներից մեկում վեց գյուղացի երիտասարդ էին միացել, վեց կոմերիտական։ Միացել էին, ոչ ավելի, ոչ պակաս, անհաշտ պատերազմ հայտարարելու Հիտլերին։ Նրանք թղթի մի կտորի վրա ուղղակի գրել էին՝ «Մա՛հ ֆաշիզմին»։ Եվ ստորագրել էին. կնքել ռետինի վրա կոշկակարական դանակով փորագրած կնիքով։

Եվ նրանք պայքարեցին։ Վեցն էլ զոհվեցին։ Երկար ու ձիգ տարիներ էին անցել, ու մի օր էլ մի կոլտնտեսուհի պատահաբար գտել էր ստորագրություններով ու կնիքով կոմերիտական մեծ դեկլարացիան ու բերել Ապիլինկի գյուղսովետ։



Ահա և Սովետական Միության հերոս, պարտիզանական ջոկատի նախկին կոմերիտկազմակերպիչ Բ. Ուրբոնավիչյուսի վկայությունը.

> «1943 թվականի հունիսի 25-ին մեր պարտիզանական խումբը՝ Բուրոկասը, Բառուշիսը, Վիտոցկայտեն, Ալեքսեևը, Կլուշինը և ես, Ստանիսլավ Պետրովիչ Ապիվալի հրամանատարությամբ եկավ Պաբրադե և Շվենչենելայ քաղաքների միջև գտնվող շրջանը։
>
> Հեռվում որոտում էր թշնամու գնացքը։ Երբ մեզնից այն 2—3 կիլոմետր էր բաժանում, Ապիվալան հրաման արձակեց՝ ականապատե՛լ։
>
> Մենք Բառուշիսի հետ սողացինք դեպի ռելսերը, արագ տեղակայեցինք ականը և 150—200 մետր հեռու փախանք։ Շուտով գնացքը մոտեցավ արկին։ Խլացնող պայթյուն։ Հետո ճայթճայթյուն, գոռում-գոչյուն, կրակոց։
>
> Ուռռա՜։ Մեր ականը իր գործը տեսավ։ Անքնությունը, քաղցը, հոգնությունը, ցավը, ուր-որ թռա՜ն-գնացին։ Փոխարենը՝ անսահման ուրախություն։ Հրամանատարը խոր շունչ քաշեց և ասաց.
>
> — Դե, արծիվ-ականահատներ, գնացի՞նք։ Թերևս մի էշելոն էլ, հը՞։
>
> Ու մենք շարժվեցինք։ Այդ գիշեր մեր երկրորդ ականը պայթեցրեց ֆաշիստական ևս մի էշելոն։ Իսկ սրա մեջ մխրճվեց ռազմամթերքով լի հանդիպակաց գնացքը»։

Ժողովրդական վրիժառուների մարտական գործողությունները օգնեցին սովետական բանակին՝ ջախջախելու թշնամուն։ Մեր պարտիզանները հօդս էին ցնդեցնում ֆաշիստական գնացքները, պայթեցնում կամուրջները, կտրում կապը, ոչնչացնում հիտլերականներին։

Այս պայքարը ժողովրդին հույս էր ներշնչում, ակտիվ դիմադրության մղում, ամրապնդում աշխատավորության հավատը իր նկատմամբ։

Կոմունիստներն ու կոմերիտականները մերկացնում էին հիտլերականների կեղծ պրոպագանդան, վիժեցնում Լիտվան ավերելու, բնակիչներին Գերմանիա տաժանակրության ուղարկելու թշնամու փորձերը։

Պայքարում հարյուրավոր ու հազարավոր սովետական հայրենասերներ ծնվեցին, որոնցով հպարտանում է լիտվական ողջ ժողովուրդը։ Կոմերիտականներ Մարիտե Մելնիկիյատեի, Գուբերտաս Բորիսի, Ալֆոնսաս Ջեպոնիսի, Յուոզաս Ալեքսոնիսի, Յուոզաս Վիտասի անունները ոգևորում են մեր երիտասարդությանը։

## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՊԱՇՏՊԱՆՆԵՐԸ

Լիտվական ժողովուրդը, Սովետական Միության մյուս ժողովուրդների հետ միասին, Հայրենական պատերազմը հաղթանակով պսակեց։ Ավագ սերունդը, երիտասարդությունը անօրինակ խանդավառությամբ մասնակցում էին հարազատ երկրամասի ավերված տնտեսության վերականգնմանը, բուժում պատերազմից ստացած վերքերը։ Կոմունիստական կուսակցության կոչով պատանիներն ու աղջիկները մասսայաբար ընդունվում էին կոմերիտմիության շարքերը։ Մինչդեռ շատ վայրերում, հատկապես գյուղերում, դասակարգային դաժան պայքարը շարունակվում էր։ Կոլտնտեսությունների կազմակերպման տարիներին հարկ եղավ հաղթահարել նախկին կալվածատերերի ու կուլակների կատաղի դիմադրությունը։

Մենք հպարտությամբ կարող ենք ասել, որ սովետական իշխանության հաղթանակի համար մղվող պայքարում քաղաքի ու գյուղի կոմերիտականները, ինչպես միշտ, առաջին շարքերում էին։

Նրանք ո՛չ միայն աննկուն մարտիկներ էին, այլև հրաշալի ագիտատորներ. նրանք սերտ կապեր էին պահպանում գյուղական երիտասարդության

հետ, համախմբում նրան կոմերիտմիության շուրջը։ Դիմիտրի Գորդեյչուկը, օրինակ, Ռադիշշյուս կոլտնտեսության շեֆն էր. նա գյուղերում հիմնեց կոմերիտական կազմակերպություններ։ ՀամԼԿԵՄ շարքերը ընդունվեցին Մոնտվիլայ գյուղի պատանիները՝ Գենրիկաս Նանյավիչյուսը, Ալֆոնսաս Ռադվիլավիչյուսը, Միկաս Ժարնաուսկասը։ Կոմերիտական տոմսերի հետ նրանց զենք էին հանձնում։ Շատ գյուղերում սկզբնական կոմերիտական կազմակերպությունները միաժամանակ մարտական խմբեր էին։

Այդ օրերին աչքի էր ընկնում կոմերիտական Վիտաուտաս Բրինդզան։ Երբ բանդիտները հարձակվել էին Մերկինե գյուղաքաղաքի վրա, Վիտաուտասը մարտական առաջադրանք ստացավ. թնդանոթը տեղավորել բլրի վրա և թույլ չտալ թշնամուն կամրջով Նեմանն անցնել։

Անվեհեր մարտիկը շրջապատվեց ու ծանր վիրավորվեց։ Երբ Վիտաուտասը ուշքի եկավ, տեսավ թնդանոթից կրակող բանդիտին։ Կոմերիտականը վերջին ճիգերը գործադրելով նռնակը նետեց։ Լռեց թնդանոթը։ Ընկավ և մեր ընկերը։

Կոմերիտականները երդվեցին միշտ վառ պահել Վիտաուտաս Բրինդզայի հիշատակը։ Ժողովի արձանագրության մեջ գրեցին, որ իրենց կոմերիտական պարտքը կատարած կհամարեն միայն այն ժամանակ, երբ Դզուկիում նացիոնալիստական բանդայից ոչ մի զինված ավազակ չի մնա։ Կոմերիտականները պատվով կատարեցին իրենց խոստումը։

## ՅՈԹՆԱՄՅԱԿԻ ԿԱՌՈՒՅՑՆԵՐՈՒՄ

Կուսակցության կոչով Լիտվայի կոմերիտմիությունը ակտիվորեն մասնակցեց հիտլերյան զավթիչների ավերված արդյունաբերության վերականգնմանն ու հանրապետության ինդուստրացմանը։ Հայրերի ու ավագ եղբայրների, սովետական այլ հանրապետություններից օգնության եկած ընկերների հետ ուս-ուսի լիտվացի երիտասարդությունը փլատակներից վեր բարձրացրեց Կլայպեդի նավաշինական գործարանը, կառուցեց Ակմյանի ցեմենտի կոմբինատը, Ժալգիրիսի հաստոցաշինական գործարանը, Կաունասգեսը...

Ժողովրդական տնտեսության վերելքի ուղղությամբ Լիտվայի երիտասարդությունը, հատկապես յոթնամյակի տարիներին, մեծ ներդրում կատարեց։ Շարք մտան կոմերիտական հարվածային կառույցները՝ Կեդայնաի քիմիական կոմբինատը, Լիտվայի պետական շրջանային էլեկտրակայանը, Իոնավի ազոտային պարարտանյութերի, Կաունասի արհեստական թելի գործարանները...

...Պանեվեժիսի ապակու գործարանի հարվածային կոմերիտական շինարարությունն է։

...Ձմեռ է։ Սառնամանիքը կծում է այտերը։ Անգամ ձեռնոցների միջից մատները մրմռում են։ Դեռ քամի էլ է, հյուսիսային, սո՜ւր։ Եվ հենց այդ ժամանակ անհրաժեշտ է շտապ բետոնապատել կերամիկական արտադրամասի մոնալիթ ծածկը։

— Գլուխ կհանե՞նք, տղերք,— Կոստաս Սամույտիսը խուզարկու հայացք է ձգում բրիգադայի անդամների վրա։

Կեստուտիս Ստումբրիսը, Ալգիրդաս Էյդուկասը, Գենրիկաս և Ջենոնաս



Վյաուդանսկասները, Յուոզաս Միլկյավիչյուսը և մյուս տղաները աշխատում էին անձնուրաց։ Նրանք առաջադրանքները ժամկետից շուտ կատարեցին։

Այսօր Կոստաս Սամույտիսը շարունակում է քաղաքը զարդարել նորակառույցներով. այլ կառույցներում է աշխատում Պանեվեժիսի բրիգադան, որը ապակու գործարանի պատմության առաջին էջում կոմերիտական անմոռաց հուշագիր թողեց։

Այժմ աշխատանքի էստաֆետը շինարարներից ընդունել են ապակու գործարանի տերերը՝ երիտասարդները։ Մերձբալթյան խոշորագույն գործարանը կյանք առավ։ Արդյունաբերական կոմպլեքսի սարքավորմանը մասնակցեցին երկրի ավելի քան 140 քաղաքների ձեռնարկություններ։

1960 թվականի ամռանը էքսկավատորը Անիկշտոս լճի ափը լցրեց հողի առաջին շերեփը։ Լիտվայի պետական շրջանային էլեկտրակայանի (ԳՐԷՍ) շինարարների երիտասարդ կոլեկտիվի ջանքերը աշխատանքային մեծ հաղթանակով պսակվեցին։ 150 հազար կիլովատ կարողություն ունեցող չորրորդ էներգետիկ բլոկի գործարկումով էլեկտրակայանը ստացավ իր նախագծային հզորության կեսը։ 600 հազար կիլովատը սկսեց ծախսվել ժողովրդական տնտեսության վրա, թեթևացավ բանվորի և կոլտնտեսականի գործը, Նեմանի երկրամասի մարդկանց կյանքն ավելի լուսավոր դարձավ։

Հինգ տարվա համառ ջանքերը Անիկշտոսի լճափի բնությունն ու կյանքը անճանաչելիորեն փոխեցին։ Լիտվայի գրէսի շինարարությունը երիտասարդների համար լավ դպրոց եղավ։ Հարյուրավոր տղաներ ու աղջիկներ մասնագետներ դարձան, այժմ նրանք աշխատում են հանրապետության կարևորագույն շատ օբյեկտներում։

Լիտվայի գրէսի շինարարության պատմության մեջ ընդմիշտ կմնան կոմերիտականներ էքսկավատորավար Պլյարպի, շինարարների բրիգադավար Բույնաուսկասի, մոնտաժող Բարովիկի, ինժեներներ Կազյունասի, Խավանաուսկասի, Դանյունասի, Տարուլիսի և շատ ուրիշների անունները։

Որակյալ կադրերի պատրաստման գործում մեզ շատ օգնեցին Ադրբեջանի, Ուկրաինայի և այլ հանրապետությունների էներգետիկները։ Իսկ այժմ մենք կարող ենք օգնել ուրիշներին։ Ու մեր երիտասարդ մասնագետները օգնում են նոր էլեկտրակայաններ կառուցել Հունգարական Ժողովրդական Հանրապետությունում և Կուբայում։

## ԱՌՋԵՎՈՒՄ ՆՈՐ ԲՆԱԳԾԵՐ ԵՆ

Մեր երկրամասը մուտք գործեց ծանր արդյունաբերությունը։ Այսօր մենք հպարտությամբ ենք խոսում արդյունաբերության այնպիսի նոր ճյուղերի մասին, ինչպիսիք են ցեմենտի և նավաշինական արդյունաբերությունը, հաստոցաշինությունն ու գյուղատնտեսական մեքենաշինությունը, ռադիոտեխնիկայի արդյունաբերությունը, հաշվիչ մեքենաների արտադրությունը, որոնք բուրժուազիայի օրոք չկային։ Վերջին տարիներս հուժկու քայլեր է կատարել քիմիական արդյունաբերությունը։ Իսկ նոր հնգամյակում նախատեսված է կառուցել ավելի քան 300 նոր ձեռնարկություն ու արտադրամաս, որով կկրկնապատկվի արդյունաբերական արտադրանքը։

Կերպարանափոխվել է նաև Սովետական Լիտվայի գյուղը։ Արորի փո-

խարեն կոլտնտեսային և սովխոզային դաշտերում բանում են հզոր տրակտորներ, գյուղատնտեսական բարդ մեքենաներ, օգտագործվում էլեկտրաէներգիան։ Ծնվում են կոլտնտեսային նոր ավաններ, որոնք ունեն իրենց կուլտուրայի տներն ու միջնակարգ դպրոցները։ Գյուղատնտեսության առջև է՛լ ավելի պայծառ հեռանկարներ բաց արեցին ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումները։

Ներկայումս, ՍՄԿԿ XXIII և ՀամԼԿԵՄ XV համագումարներից հետո, մենք վերակառուցում ենք կոմերիտական կազմակերպության աշխատանքը, ուժեղացրել ենք երիտասարդության կոմունիստական դաստիարակությունը։ Ահա մի օրինակ։

Վիլնյուսի Կոմունարաս գործարանը երկար ժամանակ համարվում էր ետ մնացող ձեռնարկություն։ Իսկ այժմ այդ կազմակերպությունում գործը լավ է ընթանում։

Կոմերիտականներն ակտիվ մասնակիցներն են սոցիալիստական մրցության, նորարարության ու գյուտարարության։ Գործարանի կոմերիտականներն ու երիտասարդները ջանասիրաբար զբաղվում են թողարկվող հաստոցների որակի բարելավմամբ, ռեզերվներ են որոնում, պայքար մղում թերությունները վերացնելու համար։ Այդպես գործարար, պատասխանատվության մեծ զգացումով են աշխատում Կոմունարասի կոմերիտականներն ու երիտասարդները։

## ԻԼՅԻՉԻ ԽՈՐՀՈՒՐԴՆԵՐՈՎ

Հանրապետության կոմերիտական կազմակերպությունը, կատարելով կուսակցական ամենակարևոր հանձնարարությունը՝ դաստիարակելով երիտասարդությանը, ձգտում է է՛լ ավելի ուժեղացնել իր գաղափարական ազդեցությունը երիտասարդ սերնդի վրա։ Այժմ կոմերիտական կոմիտեները, սկզբնական կազմակերպությունները մեծ ուշադրություն են նվիրում գաղափարական և կազմակերպական գործունեության զուգորդմանը, որովհետև միայն այդ միջոցով է հնարավոր ապահովել երիտասարդների քաղաքական և աշխատանքային աճը։

Վերջերս կոմերիտական կազմակերպությունները մի շարք միջոցներ են իրականացրել երիտասարդության քաղաքական դաստիարակության բովանդակությունը խորացնելու, դրա ձևերն ու մեթոդները կատարելագործելու ուղղությամբ։ Վերակառուցվել է կոմերիտականների քաղլուսավորության սիստեմը, ուր այժմ ուսանում են ավելի քան 150 հազար պատանիներ ու աղջիկներ։ Ավելի ու ավելի մասսայական ու արդյունավետ են դառնում լենինյան դասերը, քաղաքական ակումբները, հետաքրքրասերի ակումբները։ Հաճախ են կազմակերպվում մարքսիզմ-լենինիզմի ակտուալ հարցերին նվիրված տեսական կոնֆերանսներ և սեմինարներ։ «Գիտելիք» ընկերության բաժանմունքներին կից երիտասարդական հանձնաժողովները վատ չեն դրսևորում իրենց։ Ձեռնարկություններում ստեղծվում են երիտասարդ մասնագետների խորհուրդներ, կազմակերպվում ստեղծագործող երիտասարդության լագերներ, կոմերիտական ակտիվի թեորիական-մեթոդական կոնֆերանսներ, ուր քննարկվում են երիտասարդների հայրենասիրության ու ինտերնացիոնալ դաստիարակության, անչափահասների շրջանում տարվող աշխատանքի հարցերը։



Վ. Ի. Լենինի կյանքն ու գործունեությունը, կուսակցության և կոմերիտմիության պատմությունը, հեղափոխական տրադիցիաները պրոպագանդելու նպատակով անց են կացվում կինոֆեստիվալներ։

Քաղաքի կոմերիտական կազմակերպությունը պետական, պատմա-հեղափոխական թանգարանում հաճախակի ժողովներ է անցկացնում, հանդիպումներ ունենում սովետական իշխանության համար պայքարող մարտիկների հետ։ Այստեղ, հայրերի և ավագ եղբայրների հերոսական կյանքի հիշատակին դեմ հանդիման, այժմյան երիտասարդ սերունդը քննարկում է իր «ճակատային», «հեղափոխական» գործերը։ Այսօր արդեն ոչ 17-ն է և ոչ էլ 41-ը։ Սակայն, նորից սխրանքների ժամ է։

Ոչ թե հուշակել ճշմարտություններ, այլ պրոպագանդել դրանք իրենց անձնական օրինակով, գործունեությամբ։ Այս է կազմակերպական աշխատանքի լենինյան ոճի առանձնահատկությունը։ Ինչպե՞ս է այդ կենսագործվում։

Կոմերիտմիության քաղկոմը մշակել է երիտասարդության շրջանում տարվող աշխատանքի հիմնական ուղղությունը։ Որպես օրինակ, ակտիվիստները վերցրել են այն հարցերը, որոնք ԼԿԵՄ առաջին համագումարում Վ. Ի. Լենինն առաջարկեց երիտասարդների ղեկավարներին։

1. Ինչպե՞ս է երիտասարդությունը հանգստանում։
2. Ինչպե՞ս է օգնում սովետական օրենքի կենսագործմանը։
3. Ինչպե՞ս է երիտասարդությունը սովորում։
4. Ինչպե՞ս է աշխատում։ Ինչպե՞ս նպաստում աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։

Շատ ժամանակ է անցել կոմերիտմիության առաջին համագումարից, մինչդեռ այդ հարցերը այսօր էլ ակտուալ են ու չեն հնացել։ Լիտվայի կոմերիտմիությունը վճռեց պատասխանել դրանց գործով։

Նոր Վիլնյուսի շրջանում հատկապես ակտուալ է կուլտուր-մասսայական աշխատանքը։ Այդ պատճառով էլ կոմերիտականները որոշեցին ավելի շատ ուժ ու ժամանակ նվիրել կուլտուրական միջոցառումների, երիտասարդության ազատ ժամանակի կազմակերպմանը։

Քաղաքի մեծ շրջանում (Սովետական) կոմերիտմիության գործունեության մեջ ամենից ավելի կարևոր է հասարակական կարգի խախտման, հանցագործության դեմ մղվող պայքարը, իսկ մյուս շրջանում (Հոկտեմբերյան)՝ երիտասարդության ուսուցման գործը։

Այս բոլոր որոշումները ընդունվել են մի քանի ամիս առաջ։ Այժմ արդեն կարելի է անցնել կատարման ստուգմանը։ Ստուգել, բնական է, այնպես, ինչպես սովորեցրել է Վ. Ի. Լենինը, այսինքն՝ գործնական նվաճումների հիման վրա։

Այժմ քառորդ միլիոն պատանիներ ու աղջիկներ, կոմերիտական նշանները կրծքներին, Նեմանի երկրամասի երիտասարդ սերնդի ավանգարդում են։ Շարունակելով Լիտվայի կոմերիտականների փառավոր տրադիցիաները, նրանք իրենց ուժերը, ողջ ավյունը նվիրում են Լենինի գործին, կոմունիզմի կառուցման համար մղվող պայքարին։

«Լենինյան ուղիով» ամսագրի կոլեկտիվ թղթակից՝ «Կոմյաունիմո տեսա» թերթի խմբագրություն (Լիտվայի ԼԿԵՄ Կենտկոմի օրգան)

# ՔՆՆԱՐԿՈՒՄ ԵՎ ԲԱՆԱՎԵՃ

## ԱՄԵՆԱԿԱՐԵՎՈՐԸ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐԴԱՐ ՀԱՏՈՒՑՈՒՄՆ Է

Մեր երկրի գյուղատնտեսության վերելքի ապահովման մեջ վճռական նշանակություն ունի նյութական շահագրգռվածության պրոբլեմի ճիշտ լուծումը: Այդ առթիվ կան լուրջ տարաձայնություններ՝ հարցը ուսումնասիրողների միջև:

Այդ առթիվ տպագրած մեր հոդվածը[1] մտքերի աշխույժ փոխանակություն հարուցեց:

Բանավեճի մասնակից ընկերներն իրենց հոդվածներում ամենից շատ կանգ են առել կոլտնտեսային աշխատանքների կազմակերպման ձևերին վերաբերող հարցերի վրա և, հատկապես, ջանացել են ապացուցել արտադրական փոքր բրիգադներ ստեղծելու մասին մեր կարծիքի սխալականությունը: Ոմանք ժխտում են փոքր բրիգադների առավելությունները հօգուտ խոշոր բրիգադների, իսկ ոմանք էլ՝ անհատական կամ խմբակային գործավարձի դրական կողմերն ապացուցելու միտումով: Ըստ երևույթին, մենք միմյանց լավ չենք հասկացել, քանի որ տողերիս հեղինակը չի ժխտում ոչ խոշոր բրիգադաների դերը և ոչ էլ փոքր խմբակային գործավարձի նշանակությունը: Ի դեպ, վերջին երկու երևույթներն անհամադրելի են. բրիգադն արտադրական միավոր է, իսկ խմբակային գործավարձը՝ վարձատրության սիստեմ, ավելի ճիշտ՝ աշխատանքի կազմակերպման ձև: Ինչպես խոշոր, այնպես էլ փոքր բրիգադայում վարձատրությունը կարող է լինել անհատական, խմբակային և բրիգադային:

Իր հոդվածում[2] ընկ. Վ. Գևորգյանը արտադրական փոքր բրիգադների ստեղծումը անընդունելի է համարում այն պատճառով, որ նախ՝ բոլոր տնտեսություններում հնարավոր չէ ստեղծել միևնույն մեծությունն ունեցող բրիգադներ և երկրորդ, որ հանրապետության շատ առաջավոր տնտեսություններ ունեն խոշոր բրիգադներ, որոնք իրենց արդարացնում են: Ընկ. Գևորգյանի առաջին դատողությունը միանգամայն ճիշտ է և ընդունելի, որովհետև չի կարելի «բոլոր կոլտնտեսություններին միատեսակ դեղատոմս առաջարկել և նույնիսկ որոշել, թե յուրաքանչյուր բրիգադա քանի հոգուց պետք է բաղկացած լինի» («Լենինյան ուղիով», № 11, էջ 89): Դա յուրաքանչյուր կոլտնտեսություն ինքը պետք է որոշի ելնելով իր արտադրապայմաններից: Ինչ վերաբերում է նրա երկրորդ փաստարկին, ապա պետք է ասել, որ եթե առաջավոր տնտեսությունները ունեն խոշոր բրիգադներ, դա դեռևս չի ապացուցում, որ նրանք առաջավոր են հենց բրիգադների խոշոր լինելու պատճառով, կամ չի նշանակում, թե այդ բրիգադների փոքրացումը կիջեցնի նրանց արտադրության մակարդակը: Համարյա նույն ձևով նա ցույց է տալիս նաև կոմպլեքսային բրիգադների «դրական արդյունքը»: «Եթե Իջևանի շրջանի Աչաջրի, Գորիսի շրջանի Խնձորեսկի և մի շարք այլ գյուղերի կոլտնտեսություններում,— գրում է նա,— 1958—1959 թվականներին ստեղծված կոմպլեքսային մեքենայացված բրիգադներն իրենց չեն արդարացրել և տնտեսությունները հրաժարվել են դրանցից» («Լենինյան ուղիով», № 11, 1965, էջ 91), ապա դա չի նշանակում, թե նման բրիգադները պիտանի չեն: Օրինակ, Հոկտեմբերյանի շրջանի Այգեշատ գյուղի կոլտնտեսության նախագահ Մ. Մկրտչյանը գոհ է իրենց կոլտնտեսության կոմպլեքսային բրիգադներից, չնայած նա ևս նշում է, որ այդ բրիգադները հետագա կատարելագործման կարիք են զգում (նույն տեղում): Ընթերցողը, անկասկած, նկատում է, որ ընկ. Գևորգյանը մեր կարծիքը չի ընդունում այն պատճառով, որ մենք միայն «մի շարք» տնտեսությունների օրինակի հիման վրա ենք ընդհանրացումներ կատարել, մինչդեռ ինքը նույնը կատարում է միայն մեկ օրինակի միջոցով և այդ անում է, ինչպես նշվեց, կոմպլեքսային բրիգադներին կանաչ ճանապարհ բացելու համար այն դեպքում, երբ պրակտիկան այդ կանաչը փոխարինել է կարմիր լապտերով:

Ընկ. Գևորգյանը գտնում է, որ արտադրական բրիգադայի մեծությունը չի կարող բացասաբար անդրադառնալ նրա անդամների նյութական շահագրգռվածության բարձրացման վրա, որովհետև «կոլեկտիվի մեծությունը բնավ չի կարող պատճառ հանդիսանալ հանրային աշխատանքի արդյունքի և դրանց անհատական աշխատանքի վարձատրության միջև տատանումների և անհամապատասխանությունների առաջացման, մանավանդ, երբ գյուղատնտեսական արտելի օրինակելի կանոնադրության համաձայն հավասար աշխատանքի դիմաց տրվում է հավասար վարձատրություն» (նույն տեղում, էջ 92): Այս կապակցությամբ բերված մյուս փաստարկն այն է, որ «յուրաքանչյուր բրիգադայի գյուղատնտեսական տարվա սկզբից տրվում է արտադրա-ֆինանսական պլան և, եթե տվյալ բրիգադն լավ է աշխատել, քիչ ծախսերի միջոցով գերակատարել է պլանը և տվել որակյալ արտադրանք, նա ավելի բարձր վարձատրություն է ստանում, քան այն բրիգադն, որը թերակատարել է արտադրական պլանը և իր ցուցանիշներով ետ է մնում» (նույն տեղում, էջ 92): Իսկ մի՞թե որևէ մեկը կարող է ժխտել գյուղատնտեսական արտելի օրինակելի կանոնադրության գոյություն ունենալու և բրիգադային արտադրական-ֆինանսական պլան տալու փաստը: Սակայն դրանք միանգամայն այլ հարցեր են և խոսքն այդ մասին չէ, այլ այն մասին, թե այդ բոլորի առկայությամբ հանդերձ արտադրական ինչպիսի՞ բրիգադն է առավել պիտանի նրա յուրաքանչյուր անդամի անձնական նյութական շահագրգռվածության համար. խոշորը, թե փոքրը: Սա է հարցի մեխը:

Արդարությունը պահանջում է ասել, որ մեր արտահայտած կարծիքները հերքելու մեջ բոլորից շատ հետևողականություն ու կրքոտություն ցուցաբերեց ընկ. Ա. Խաչատրյանը, որովհետև ըստ նրա, արված և ոչ մի առաջարկության «հետ համաձայնել չի կարելի» և շատ «ցավալի է», որ նման առաջարկություններ արվել են:

Մեր հոդվածում արտադրական բրիգադների մասին կա ընդամենը երկու սեղմ պարբերություն, որոնցից առաջինը ստիպված ենք կրկնելու ամբողջությամբ. «Ներկա պայմաններում գյուղատնտեսական աշխատանքի կազմակերպման այն ձևերն են առավել նպատակահարմար ու արգասավոր, որոնք նպաստում են հանրային արտադրության մեջ արտադրողների անձնական նյութական շահագրգռվածության բարձրացմանը: Մեր կարծիքով զարգացման ներկա էտապում հենց այդպիսին է կոլտնտեսություններում ու սովխոզներում փոքր արտադրական բրիգադների ստեղծումը և դրանցում ըստ արտադրանքի վարձատրության կազմակերպումը» («Լենինյան ուղիով» № 8, 1965, էջ 87):

Թվում է, նման առաջարկությունը չպետք է առարկությունների տեղիք տար, որովհետև նրա հիմքում ընկած է այն պարզ բանի ըմբռնումը, որ աշխատողի անձնական նյութական շահագրգռվածությունը առավել բարձր է այն

[1] Տե՛ս «Լենինյան ուղիով» № 8, 1965:

[2] Տե՛ս «Լենինյան ուղիով» № 11, 1965:

դեպքում, երբ նա վարձատրվում է սեփական աշխատանքի արդյունքին համապատասխան, իսկ դա կոլտնտեսային արտադրության մեջ հնարավոր կլինի այն դեպքում, եթե վարձատրությունը կատարվի դրամով և անկախ տվյալ կոլտնտեսության տնտեսական վիճակից։ Իսկ քանի որ դա հնարավոր չէ, հետևապես կոլտնտեսային արտադրության ներկա պայմաններում, երբ յուրաքանչյուր կոլտնտեսականի աշխատանքի դիմաց տրվելիք վարձատրության չափը սահմանելու համար ելակետ է ծառայում ոչ միայն այդ աշխատանքի որակը և քանակը, այլև տվյալ տնտեսության ընդհանրական արդյունքի քանակը, ապա կոլտնտեսականների անձնական նյութական շահագրգռվածության բարձրացման համար վճռական նշանակություն ունի կոլտնտեսության անդամի վարձատրության և ամբողջ տնտեսության ընդհանրական արդյունքի հարաբերակցությունը։ Որքան մեծ է տվյալ կոլեկտիվը, որի ընդհանրական արդյունքից բաժին է ստանում նրա յուրաքանչյուր անդամը, որպես վարձատրություն իր աշխատանքի դիմաց, այնքան ցածր է վերջինիս շահագրգռվածությունը հանրային արտադրության մեջ։ Վերը արված մեջբերումի ընդգծած բառերը նշանակալից են միայն իրենց միասնության մեջ, այսինքն՝ փոքր բրիգադայի ստեղծումը ոչ մի նշանակություն չի ունենա անձնական շահագրգռվածությունը բարձրացնելու տեսակետից, եթե վարձատրությունը չկատարվի նրա ներսում, այլ կերպ, եթե բրիգադայի ընդհանրական արդյունքը՝ որպես վարձատրությունը որոշելու հիմք, չսահմանազատվի ամբողջ տնտեսության ընդհանրական արդյունքից։ Ուրեմն, կարևորն այստեղ ոչ թե բրիգադայի մեծությունն է, այլ վարձատրության սահմանումը ըստ նրա արտադրանքի։ Թվում է, այս ամենն այնքան պարզ են ու հասկանալի, որ առարկության և ոչ մի հիմք չեն տալիս։

Ընդամենը մի երկու նախադասության մեջ մենք չէինք կարող տալ կոլտնտեսային արտադրական միավորների վերակառուցման, աշխատանքների կազմակերպման հետագա կատարելագործման մի մանրամասն ծրագիր, ուստի և չենք նշել, որ փոքր բրիգադայի առավելություններից են՝ ազատված բրիգադավարների անհրաժեշտության վերացումը, աշխատանքային կարգապահության ու փոխադարձ հսկողության ուժեղացումը, տեխնիկայի առավել արդյունավետ օգտագործումը և այլն։ Սակայն ընկ. Խաչատրյանն իր քննադատական դիտողությունների շրջանակները ավելի է ընդլայնում, քան պահանջում է տվյալ կոնկրետ հարցը։ «Համաձայնել այս մտքի հետ (փոքր բրիգադաներ ստեղծելու —Վ. Բ.),—գրում է նա,— նշանակում է տրոհել այժմ գործող բրիգադաները, դրանց ներսում ստեղծել նոր բրիգադաներ, ուռճացնել կոլտնտեսությունների վարչա-կառավարչական ապարատը, ավելացնել նյութական բարիքներ չարտադրող մարդկանց թիվը։ Այդ նշանակում է էֆեկտիվ չօգտագործել և փոշիացնել կոլտնտեսություններում գտնվող տեխնիկան և արտադրության մյուս հնարավորությունները» («Լենինյան ուղիով» № 1, 1966, էջ 101)։ Եվ այնուհետև՝ «Իր ոչ ճիշտ դրույթը հիմնավորելու համար,— գրում է ընկ. Խաչատրյանը,—նա բերում է այն միտքը, որ կոլտնտեսային արտադրության մեջ յուրաքանչյուր աշխատողի վարձատրության չափը պայմանավորվում է ոչ միայն սեփական աշխատանքի ցուցանիշներով, այլև ամբողջ կոլեկտիվի աշխատանքի արդյունքով և իբր թե դա է խանգարում մարդկանց անձնական շահագրգռվածության բարձրացմանը և դրա համար անհրաժեշտ է կազմակերպել արտադրական փոքր բրիգադաներ։ Բայց մի՞թե փոքր բրիգադաներում այլ կերպ կարող է լինել։ Փոքր բրիգադայում նույնպես աշխատողի վարձատրության չափը պետք է պայմանավորված լինի ամբողջ կոլեկտիվի աշխատանքի արդյունքով և ոչ թե սեփական աշխատանքի ցուցանիշներով» (նույն տեղում)։ Այո՛, ընկ. Խաչատրյան, խոսքը հենց «այլ կերպ» լինելու մասին է, եթե «այլ կերպ» չի լինելու, ապա բրիգադայի մեծ կամ փոքր լինելը ոչ մի նշանակություն չի ունենա։

Որպեսզի վերջնականապես բացատրի մեր տեսակետը և համոզի ընթերցողին, որ արտադրական միավորի փոքրացումը ոչ թե կբարձրացնի նրա անդամների նյութական շահագրգռվածությունը, այլ կթուլացնի այն, ընկ. Խաչատրյանը դիմում է պրակտիկային, վկայակոչում այն փոքր տնտեսությունները, որոնք «տասնյակ տարիներ շարունակ համարվում են ետ մնացող տնտեսություններ» (նույն տեղում, էջ 102)։ Եվ դրանցում «հասկանալի պատճառով չի հաջողվում շոշափելիորեն ավելացնել ոչ ընդհանրական արդյունքը, ոչ էլ անհատական աշխատանքի հասույթը» (նույն. տեղում)։ «Հասկանալի պատճառը» այստեղ մի քիչ հանելուկային ու զավեշտական երանգ ունի։ Եթե ընկ. Խաչատրյանը Գորիսի շրջանի Առաջաձոր, Ղուրդուղուլաղ, Աղբուլաղ, Մալդաշ, Տանձատափ, Արավուս, Ջորաշեն գյուղերի ետ մնալու «հասկանալի պատճառը» համարում է նրանց փոքր լինելը, դա, իհարկե, իր կամքն է, սակայն այդ ամենն ի՞նչ կապ ունի մեր հոդվածում նշված հարցի հետ։ Չէ՛ որ մենք բնավ չենք նշել, որ եթե տնտեսությունը փոքր լինի, նրանում շահագրգռվածությունը բարձր կլինի, ուստի և նա առաջավոր կլինի։ Բացի դրանից, ո՞վ է ասել, որ շահագրգռվածությունը պայմանավորվում է միայն արտադրական միավորի մեծ կամ փոքր լինելով, կամ ո՞վ է այն կարծիքը հայտնել, որ տնտեսությունների առաջավոր կամ ետ մնացող լինելը պայմանավորվում է միայն նյութական շահագրգռվածությամբ։ Օրինակ, Գորիսի շրջանի Տեղ գյուղի կոլտնտեսականները վաղուց ի վեր երազում են իրենց տնամերձ հողամասերում գարի ցանելու փոխարեն տնկել թզենի, խաղողի վազ, թթենի, նռնենի և այլ պտղատու ծառեր։ Բայց երբ վերջիններիս համար չկան անհրաժեշտ պայմաններ, կարո՞ղ ենք նշված գյուղի բնակիչներին մեղադրել տվյալ հարցում շահագրգռվածության պակասի համար։ Այսպիսով, ընկ. Խաչատրյանի բերած օրինակները համոզիչ չեն, որովհետև չեն առնչվում քննարկվող հարցին։

Ընդունված կարգ է, եթե չես ընդունում որևէ մեկի տեսակետը, պետք է հանդես գաս սեփական կարծիքով։ Նույնն է կատարում և ընկ. Խաչատրյանը։ Նա գրում է. «Ինչպես ցույց է տվել պրակտիկան, անձնական նյութական շահագրգռվածության սկզբունքը ենթադրում է ամենից առաջ աշխատանքի ճիշտ կազմակերպում, ինչպես նաև (կարևոր բազմապիսի այլ հանգամանքների հետ միասին) աշխատանքի ճիշտ վարձատրություն, այսինքն՝ աշխատանքի (պետք է լինի՝ ըստ աշխատանքի — Վ. Բ.) քանակական ու որակական ցուցանիշների բաշխման սոցիալիզմի տնտեսական օրենքի հետևողական կիրառում։— Դժվար չէ նկատել, որ սրանք միլիոնավոր անգամ կրկնված ու ծեծված բաներ են։— Բարիքներ արտադրող մարդկանց նյութական շահագրգռվածությունը միշտ բարձր կլինի,— շարունակում է ընկ. Խաչատրյանը,— եթե կոլտնտեսության ստացած ամբողջ եկամուտների 60—70 տոկոսը բաժանվի նրանց աշխատանքի դիմաց։ Ահա թե որն է նյութական անձնական (պետք է լինի՝ անձնական նյութական—Վ. Բ.) շահագրգռվածության բարձրացման իսկական ճանապարհը» («Լենինյան ուղիով» № 1, 1966, էջ 102)։

Կարելի էր նման առաջարկության վերաբերյալ ոչինչ չասել, որովհետև այն այնքան է միակողմանի, այնքան է հեռու գյուղատնտեսության մեջ նյութական շահագրգռվածության բարձրացման, արտադրության ինտենսիվացման ու սննդամթերքների առատություն ստեղծելու ճիշտ ուղիներից, որ ոչ միայն չի դիմանում քննադատության, այլև ամեն մի քննադատություն ավելորդ է դառնում։ Այնուհանդերձ, մենք ստիպված ենք այդ կապակցությամբ մի քանի խոսք ասել ոչ թե ընկ. Խաչատրյանի «իսկական ճանապարհը» ժխտելու նպատակով, այլ հիշեցման կարգով։

Ոմանք այն կարծիքին են, որ իբր մեր կոլտնտեսականները հանրային արտադրության մեջ անհրաժեշտ չափով չեն շահագրգռված, որովհետև չնչին վարձատրություն են ստանում իրենց աշխատանքի դիմաց։ Մեր կարծիքով, ընդհակառակը, կոլտնտեսականները քիչ են ստանում հենց այն պատճառով, որ հանրային արտադրության մեջ իրենց աշխատանքի արդյունքի նկատմամբ անհրաժեշտ շահագրգռվածություն չեն ցուցաբերում։ Իսկ թե ինչո՞ւ է այդպես, դա ընդարձակ ու հանգամանալից պատասխան է պահանջում, որին սույն հոդվածում անդրադառնալու ոչ մի հնարավորություն չկա։

Այժմ միայն հիշեցնենք ընկ. Խաչատրյանին մի տվյալի մասին, որը

կարճ ժամանակում պատկերը փոխվեց. ծխախոտի մեկ հեկտարի միջին բերքատվությունը 12-ից հասավ 21 ցենտների, կաղամբինը՝ 250-ից 710-ի, կաթի արտադրությունը՝ 900—1300 կգ-ի, բրդինը՝ 2,1-ից 3,5-ի: Կթվորուհի Ա. Քասատկցյանը մեկ կովից ստացավ 1670 կգ կաթ, իսկ հովիվ Ա. Սաֆարյանը մեկ ոչխարից՝ 5,6 կգ բուրդ: Միաժամանակ ավելացան ծխախոտի ու կաղամբի ցանքատարածությունները, կովերի ու ոչխարների գլխաքանակը:

Ո՞րն էր բարձր ցուցանիշների հասնելու բուն պատճառը: Միայն և միայն աշխատողների նյութական շահագրգռվածության բարձրացումը, նրանց մասնավոր ու հանրային շահերի ճիշտ զուգակցումը: Այժմ այդ նույն կոլտնտեսության բազայի վրա կազմակերպել ենք սովխոզ, ուր աշխատում են նույն մարդիկ, նույն պայմաններում:

Եթե նյութական շահագրգռվածության նշված ձևերը անտեսենք, ապա աշխատանքի կազմակերպման (մթերքների արտադրության ավելացման) գործում մեծ դժվարությունների կհանդիպենք:

Այս տարի բուսաբուծության գծով մեր սովխոզը պետք է ստանա հացահատիկային կուլտուրաների յուրաքանչյուր հեկտարից 11 ցենտներ, կարտոֆիլից՝ 85, ծխախոտից՝ 17,5, կաղամբից՝ 500, բնական խոտհարքներից՝ 11, ցանովի խոտհարքներից՝ 30 ցենտներ բերք: Նշված թվերը անցած երեք տարիների միջին մակարդակից 10—20 տոկոսով բարձր են: Չնայած դրան, եթե մենք սովխոզի բանվորներին, որպես բնամթերային վարձատրություն, տանք պլանից ավել ստացված բերքի 60—80 տոկոսը, ապա նշված պլանները, անկասկած, կգերակատարվեն, իսկ թե ի՞նչ չափով, այդ արդեն կախված է բանվորների շահագրգռվածության աստիճանից և մյուս այլ պայմաններից: Ատանց վարչարարության, բանվորներն իրենք դառնալով արտադրության տերերը, կգտնեն այն բարձրացնելու ուղիները:

Այսպիսով վարձատրության այս կարգը բանվորների մոտ ստեղծում է բարձր նյութական շահագրգռվածություն, յուրաքանչյուր բանվոր ձգտում է գերակատարել արտադրական պլանը, տարեցտարի ավելացնել այն և հասնել բարձր ցուցանիշների: Այս պայմաններում հնգամյակի առաջադրանքները մեր տնտեսությունը կկատարի նույնիսկ 3 տարում:

Վարձատրության դրամական և բնամթերային ձևի ճիշտ զուգակցումը սովխոզներում մեծ արդյունք կտա: Բանվորները հիմնովին կկապվեն արտադրությանը, հողին, բազմամիլիոն գյուղատնտեսական աշխատողներ ակտիվորեն կլծվեն ստեղծագործ աշխատանքի, արտադրության վերելքի, գյուղատնտեսության ինտենսիվացման և կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործին: Շնորհիվ բնամթերային վարձատրության առաջարկվող կարգի, մենք կկարողանանք 2—3 տարվա ընթացքում խիստ ռացիոնալ օգտագործել տնտեսության մինչև այժմ չօգտագործվող ռեզերվները, արմատապես կփոխենք բանվորների վերաբերմունքը հողի, տեխնիկայի, հանրային այլ ունեցվածքի նկատմամբ: Այս ամենը բանվորը կդիտի որպես իր սեփականը, քանի որ նրա անձնական շահը կապված է հասարակական շահի հետ:

Ըստ ճյուղերի և ըստ կուլտուրաների աշխատանքի կազմակերպման և վարձատրման այս ձևը հնարավորություն կընձեռի առաջիկայում անցնելու ճյուղերի տնտհաշվարկային սիստեմին, որը զգալի չափով կիջեցնի արտադրվող մթերքների ինքնարժեքը: Այս միջոցառման շնորհիվ տնտհաշվարկը մուտք կգործի բոլոր տնտեսությունները. բանվորը կձգտի քիչ ծախսումներով, շատ մթերքներ արտադրել, որովհետև նա պետք է կատարի ո՛չ միայն արտադրանքի, այլև դրա ստացման համար կատարվող ուղղակի ծախսերի և ինքնարժեքի պլանը:

Աշխատանքի կազմակերպման և վարձատրման վերոհիշյալ միջոցները կենսագործելու դեպքում համոզված կարելի է ասել, որ հանրապետության բոլոր սովխոզները 1—2 տարվա ընթացքում կդառնան եկամտաբեր:

Ս. ՂԱՐԻԲՅԱՆ
Կամոյի շրջանի Հացառատի սովխոզի
դիրեկտոր

# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ



## ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆԸ ՆՎԻՐՎԱԾ ՄԵԾ ԿՅԱՆՔ

«Չկա կուսակցական շինարարության, ռուսաստանյան և միջազգային բանվորական շարժման, մարքս-լենինյան թեորիայի մի բնագավառ,— գրում է «Правда»-ն 1963 թվականի հոկտեմբերի 13-ին,— որի շուրջը ելույթ չունենար Շահումյանը:

Նրա հոդվածներն ամենայն խորությամբ ու ընդգրկմամբ արտացոլում են հեղինակի գիտական ու քաղաքական էրուդիցիան, լենինյան կուսակցականությունը և մարքսիզմի բոլոր ու ամեն տեսակ շեղումների դեմ նրա մղած կրքոտ պայքարը»:

«Ստ. Շահումյանի աշխատությունների հավաքումն ու հրապարակումը,— գրում է այնուհետև «Правда»-ն,— անհրաժեշտ է շարունակել: Դրանց ուսումնասիրությունը կնպաստի ո՛չ միայն տեսաբանի, կազմակերպչի, մարտիկի և մարդու՝ Ստեփան Շահումյանի կերպարի լրիվ կերտմանը, այլև կօգնի մարքսիզմ-լենինիզմի պրոպագանդման գործին, Սովետական Միության կոմունիստական կուսակցության պատմության ուսումնասիրմանը»:

Շահումյանի կյանքին ու գործունեությանը, նրա տեսական ժառանգությանը նվիրված շատ աշխատություններ են գրվել: Դրանք այս կամ այն չափով պատկերում են նրա կուսակցական և պետական գործունեությունը, տանում ընթերցողին դարասկզբի հեղափոխական իրադարձությունների բուռն ժամանակաշրջանը. դրանք պատմական ու գրական արժեքավոր մենագրություններ են, գրքեր ու բրոշյուրներ, որոնք ընդգրկում են Վ. Ի. Լենինի մեծ զինակցի ու բարեկամի կյանքի տարբեր շրջանները: Սակայն, Շահումյանի մասին լիարժեք գեղարվեստական երկ, մեր կարծիքով, մինչև այժմ չի գրվել: Եվ ահա Շահումյանի գործունեության և կյանքի պակաս էջերը մեծ չափով լրացրեց գրող և ժուռնալիստ Ի. Մ. Դուբինսկի-Մուխաձեն: Վերջերս Երիտասարդ գվարդիա հրատարակչությունը Նշանավոր մարդկանց կյանքը մատենաշարով լույս ընծայեց նրա գիրքը, որը հենց այդպես էլ կոչվում է՝ Շահումյան [1]:

Գիրքը գրելիս հեղինակն օգտվել է Ստ. Շահումյանի կյանքին ու գործունեությանը նվիրված արխիվային փաստաթղթերից ու նյութերից, Կովկասի բանվորական շարժմանը նվիրված պատմագիտական աշխատություններից: Բաքվում, Թիֆլիսում, Երևանում և Անդրկովկասի այլ քաղաքներում ծավալված քաղաքական իրադարձությունները նշանավոր հեղափոխական-լենինյանի կենսագրության մեջ ցույց են տրված ոչ նեղ պլանով: Գրքում Շահումյանը պատկերվում է ինչպես ռուսաստանյան, այնպես էլ որպես միջազգային բանվորական շարժման պատմական անձնավորություն:

Հեղինակը հատկապես լավ է ներկայացրել հեղափոխության առաջնորդի՝ Լենինի բարեկամությունը Շահումյանի հետ, բարեկամություն, որը հիմնված էր բանվոր դասակարգի ղեկավարների սկզբունքային փոխհարաբերությունների, անբասիրության, բոլշևիկյան աներերության, անզիջողության վրա:

Դուբինսկի-Մուխաձեի ծառայությունը հատկապես այն է, որ նա յուրովի, կարելի է ասել ինքնատիպ, գեղարվեստական բարձր մակարդակով է պատկերում իրադարձությունները, դրանք կենդանի և արտահայտիչ լեզվով մատուցում ընթերցողներին: Այդ երևում է առաջին իսկ էջերից, Ստեփանի պատանեկության նկարագրից, քաղաքական գործունեության սկզբից, նրա փոթորկալից կյանքը արտացոլող հեղափոխական

---

[1] И. М. Дубинский-Мухадзе—Шаумян, М., 1966, 335 էջ:

նախագիծը պետք է լիակատար վերծաներ այն, թե ինչ ենք հասկանում իրավահավասարություն ասելով, այդ թվում և՛ լեզվի հարցը, և՛ դպրոցի խնդիրը, և՛ ընդհանրապես կուլտուրայի հարցը, բայց այդ բոլորը վերցրած իրենց բոլոր կապերով և միջնորդավորումներով» (Ն. Կ. Կրուպսկայա, Հիշողություններ, 1933, Մ., էջ 509)։

Վ. Ի. Լենինի և Ստ. Շահումյանի նամակներում մեծ տեղ են գրավում ազգային հարցի վերաբերյալ մարքս-լենինյան թեորիայի այնպիսի կարևոր հարցերը, ինչպիսիք են՝ լեզուն, ֆեդերացիան, ազգային ավտոնոմիան և այլն։ 1913 թվականի դեկտեմբերի 6-ին Շահումյանին ուղղված նամակում Իլյիչը գրում էր. «Թանկագին բարեկամ։ Շատ ուրախ եղա 15. 1 թվակիր Ձեր նամակի համար։ Դուք պիտի իմանաք, որ իմ վիճակում մարդ անչափ գնահատում է Ռուսաստանի ընկերների, մանավանդ խոհուն և տվյալ հարցով զբաղվող ընկերների կարծիքները։ Ձեր արագ արձագանքները այս պատճառով ինձ համար առանձնապես հաճելի էին։ Զգում ես քեզ ավելի պակաս կտրված, երբ այդպիսի նամակներ ես ստանում» (Լենին, Երկեր, հատ. 19, էջ 623)։ Ազգային հարցի վերաբերյալ Շահումյանի փայլուն աշխատությունները, հրապարակախոսական հոդվածները, ելույթները, ազգային հարցի լենինյան ծրագիրը պաշտպանեցին օպորտունիստական հարձակումներից, հիմնավորեցին բազմազգ երկրի պայմաններում ազգային հարցի մարքսիստական տեսությունը։

Ինչպես միշտ, հետաքրքրական է Լենինի և Շահումյանի նամակագրությունը։ Հեղինակը սիրով բացահայտում է այդ նամակները։ Դրանց մեջ, ինչպես հայտնի է, Լենինը և Շահումյանը մշտապես խորհրդակցում են տեսության, ազգային հարցի, կոմունիստական կուսակցության ծրագրին վերաբերող հրատապ ու շատ կարևոր այլ հարցերի շուրջ։

Զթուլացող հետաքրքրությամբ են կարդացվում այն էջերը, որոնք նվիրված են 1917 թվականի Բաքվի բուռն օրերին։ Մարտին Ստեփան Շահումյանին հեռակա կարգով ընտրում են Բաքվի առաջին բանվորական դեպուտատների սովետի նախագահ։ Մեծ ջերմությամբ է հեղինակը նկարագրում Բաքվի բանվորների տածած խոր սերն իրենց Ստեփանի, պրոլետարիատի իսկական առաջնորդի հանդեպ։

Չի կարելի չհուզվել Բաքվի կոմունայի, նրա ղեկավար Ստեփան Շահումյանի հերոսական գործունեությունը, Բաքվի սքանչելի կոմիսարներին նվիրված էջերը կարդալիս։ Քաղաքական չափազանց բարդ իրադրության պայմաններում Շահումյանն ու իր մարտական զինակիցներն իրենց պահեցին որպես իսկական բոլշևիկ-լենինյաններ։

1918 թվականի ապրիլի 1-ին սովետական իշխանությունը Բաքվում հաղթանակ տարավ։ Սկսվեց Բաքվի կոմունայի հերոսական շրջանը։ Բայց այն երկար չտևեց... Բաքվի կոմունան սովետական իշխանության համար աշխատավորության մղած պայքարի լավագույն էջերից է, մեծ Հոկտեմբերի դրոշակակիրն Անդրկովկասում, ժողովուրդների լենինյան բարեկամության ու եղբայրության սիմվոլը։

Ս. Շահումյանի մեծության առջև խոնարհվում էին ինչպես ընկերները, այնպես էլ թշնամիները։ Հենց այդպես էլ գրքում մեզ ներկայանում է բոլշևիկների լենինյան գվարդիայի այդ ներկայացուցիչը, պրոլետարիատի առաջնորդներից մեկը։

Շահումյան գիրքը գրված է հատկապես երիտասարդների համար և անկասկած կունենա իր դաստիարակչական խոշոր նշանակությունը։ Այն պետք է անպայման թարգմանվի հայերեն։

Հ. ԱՒԼՈՅԱՆ


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ., ԱՆԱՆԻԿՅԱՆ Բ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱԿՈԲՅԱՆ Հ. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.։

Թողարկիչ՝ Ա. ՅԱՎՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Ի. ԲՐՈՒՏՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿԿ Կենտկոմի շենք, հեռ. 2—02—24

Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении, тел. 2-02-24

ՎՖ 06857 Պատվեր 1889 Տիրաժ 9790 Գինը 25 կոպ.։

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ Ստորագրված է տպագրության 25/VII 1966 թ.։

Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր մամուլի կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյան փ. № 51։


# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԺԻՎԵՅՆՈՎ Ն. Ի.—PW գործողություն։ Ամերիկյան իմպերիալիզմի «հոգեբանական պատերազմը»։ Մ., Քաղհրատ, 1966, 296 էջ։

Գիրքը բովանդակում է Սովետական Միության և սոցիալիստական երկրների դեմ ամերիկյան իմպերիալիզմի մղած «հոգեբանական պատերազմի», ժողովուրդների խաղաղության ու բարեկամության գաղափարների դեմ պայքարի, հակակոմունիզմը «հոգեբանական պատերազմի» դրոշը դարձնելու և այլ հարցեր։ Աշխատությունում գերազանցապես օգտագործված է ամերիկյան մամուլը։

ՏՅԱԳՈՒՆԵՆԿՈ Վ. Լ.— Ժամանակակից ազգային-ազատագրական հեղափոխությունների խնդիրները։ Մ., Наука հրատ., 1966, 324 էջ։

Ելնելով մարքս-լենինյան ուսմունքից, հեղինակը պարզաբանում է ազգային-ազատագրական հեղափոխությունների դերը ազատագրված ժողովուրդների տնտեսական-քաղաքական անկախության, ոչ կապիտալիստական զարգացման ուղիով ընթանալու, տվյալ հեղափոխությունը սոցիալիստականի վերաճելու և այլ խնդիրներ լուծելու գործում։

Գյուղական պրոպագանդիստի տնտեսագիտական տեղեկատու։ Մ., Քաղհրատ, 1966, 391 էջ։

Հեղինակային կոլեկտիվը տեղեկություններ է տալիս ՍՍՀՄ տարածության, բնակչության, գյուղատնտեսության սոցիալիստական սիստեմի, հողագործության, անասնապահության, կերի արտադրության, կոլտնտեսությունների ու սովխոզների պլանավորման, մթերումների, մեքենայացման, ոռոգման, պարարտացման աշխատանքի, կապիտալ ներդրումների, եկամուտների և այլ հարցերի մասին։

ՄԵԳՐԵԼԻՁԵ Կ. Ռ.— Մտածողության սոցիոլոգիայի հիմնական խնդիրները, Թբիլիսի, «Սաբչոթա Սաքարթվելո» հրատ., 1966, 486 էջ։

Հիմնվելով հոգեբանության, կենսաբանության, լեզվաբանության, ազգագրության և այլ գիտությունների վրա, հեղինակը (1900—1943) փիլիսոփայական այս աշխատության մեջ լուսաբանում է մտածողության ծագման ու զարգացման հիմնական պրոբլեմները։

ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ Ա. Ռ.—Կոմունիստական գաղափարները ֆրանսիական մեծ հեղափոխության տարիներին։ Մ., Наука հրատ.; 1966, 432 էջ։

Սովետական ու արտասահմանյան համապատասխան գրականության ու արխիվային նյութերի հիման վրա, ելակետ ունենալով մարքսիզմ-լենինիզմը, ակադեմիկոս Ա. Հովհաննիսյանը վերլուծել է ֆրանսիական մեծ հեղափոխության ժամանակաշրջանում (1789—1794) ուտոպիական սոցիալիզմի գաղափարախոսների՝ Բուասելի, Ռետիֆի, Դե լյա Բրեթոնի, Շապիուի գործունեությունն ու աշխատությունները։

ԽՈՒԴԱՎԵՐԴՅԱՆ Կ. Ս.— Կուլտուրական հեղափոխությունը Սովետական Հայաստանում (1920—1940)։ Ե., ԳԱ հրատ., 1966, 304 էջ։ Ռուսերեն։

Գրականության և արխիվային նյութերի հիման վրա հեղինակը լուսաբանում է Հայաստանի լուսավորության, գրականության, արվեստի և գիտության բուռն վերելքը։

ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ Վ. Խ.— Պատճառ և նպատակ։ Ե., ԳԱ հրատ., 1966, 229 էջ։

Փիլիսոփայական այս մենագրությունում հեղինակն ընդհանուր գծերով լուսաբանել է պատճառականության, մարդկային նպատակահարմար գործունեության տեսական հարցերը, պատճառի և նպատակի, հասարակական և անձնական փոխհարաբերությունները և այլն։

ՍԱՐԳՍՅԱՆ Ա. Ա.—Ազգային-ազատագրական շարժումների արդի էտապը։ Ե., «Հայաստան» հրատ., 1966, 208 էջ։

Գրքում հեղինակը բացահայտում է հիշյալ շարժումների ներկա վիճակը Ասիայում, Աֆրիկայում և Լատինական Ամերիկայում, ցույց տալիս սոցիալիստական երկրների և, հատկապես, Սովետական Միության խոշոր ներդրումը նրանց ազատագրության, քաղաքական անկախության և տնտեսական զարգացման գործում։

ԳԻՆԸ 25 Կ.



# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԷԼԲՈՐԸ ԱԼՄԱՍՏԻՑ ԿԱՐԾՐ Է

Լենինգրադում կտրիչների և հղկիչների համամիութենական գիտահետազոտական ինստիտուտում ստացել են նոր և կարծր նյութ՝ բորի խորանարդ նիտրիտ, որը ստացել է էլբորն անվանումը։ Էլբորը գործնականում իր հատկություններով չի զիջում բնական ալմաստին, այն իր կարծրությամբ ու ջերմադիմացկունությամբ հնարավոր է դարձնում օգտագործելու որպես արդյունավետ կտրիչ նյութ։ Նրանից պատրաստած հղկիչներն ու կտրիչները երկար ժամանակ պաշտպանում են իրենց կտրող ու հղկող հատկությունները։

## ԲԵՆԶԻՆԻ ՓՈԽԱՐԵՆ ԱՄԻԱԿ

Ամերիկյան «Ջեներալ մոտորս» ֆիրմայի մի էքսպերիմենտալ լաբորատորիայում նախագծվել է 1,25 ձիաուժ ավտոմոբիլային շարժիչ։ Նրա սնուցման համար բավական է ջուր և օդ։ Օդի ազոտից և ջրի անջատվող ջրածնից պորտատիվ ատոմային ռեակտորը սինթեզում է ամիակ, որը ծառայում է որպես վառելիք։ Մոտորի վրա կոմպրեսոր դնելով կարելի է հասնել նույն հզորության, ինչ բենզինով աշխատելիս։

Եթե այդ գյուտը լայն պրակտիկ կիրառում գտնի, ապա այդ կարելի է համարել «ֆանտազիաներից» մեկի իրականացում։

## ԴԵԼՖԻՆԸ ԽՈՍՈՒՄ Է ՀԵՌԱԽՈՍՈՎ

Ուսումնասիրելով, թե դելֆինները ինչպես են հաղորդակցվում մեկը մյուսի հետ, փորձարարները Ֆլորիդայի դելֆիններին և Հավայան կղզիների դելֆիններին տրամադրել են հեռախոսով խոսելու հնարավորություն։ Դրա համար նախագծվել են ստորջրյա միկրոֆոններ և նույնպիսի բարձրախոս հեռախոսներ։

Դելֆինը իր «կտուցը» մտցնում է միկրոֆոնի հատուկ կերպով համարեցված խողովակի մեջ և խոսում, իսկ նրա ցեղակիցը, գտնվելով 8000 կմ. վրա, լսում և պատասխանում է։

Փորձերը ցույց են տվել, որ Ատլանտիկայի և Խաղաղ օվկիանոսի դելֆինների լեզուն նույնն է։

## ԸՆԴԴԵՄ ԽՈՆԱՎՈՒԹՅԱՆ ԿՈՐՍՏԻ

Որպեսզի նվազեցնեն ծառերի տերևների միջոցով խոնավության կորուստը, ամերիկյան հետազոտողները տերևները ցողում են պոլիէթիլենային անձրևով։ Տերևների վրա առաջանում է բարակ պլաստմասսե թաղանթ։ Պլաստմասսե ծածկոցով պատված բույսերը զարգանում են նորմալ, շնորհիվ այն բանի, որ պոլիէթիլենը զգալիորեն ավելի լավ է բաց թողնում թթվածին և ածխաթթու գազ, քան ջրի գոլորշի։

Գիտնականները հույս ունեն, որ խոնավության կորստի դեմ պայքարի այդ մեթոդը կարող է կիրառվել չորային շրջաններում։

## ԼՈՒՅՍԻ ԿԱՐԳԱՎՈՐԻՉ

Ինչպե՞ս կարգավորել թռչնանոցում լուսային օրվա տևողությունը։ Չէ՞ որ դրանից է կախված, թե քանի ձու պետք է տան ածան հավերը։

Տյումենի մանկավարժական ինստիտուտի ֆիզիկայի ամբիոնի դոցենտ Անատոլի Վարնավսկիխը նախագծել է արևի ինքնատիպ ղողատոր։ Նրա մեջ դրվում է ծրագիր՝ նախատեսված հավերի կյանքի ողջ շրջանի համար։ Համապատասխան այդ ծրագրի, ղողատորը ավտոմատիկ կերպով, առանց մարդու միջամտության, ամեն օր 1-ից 3 րոպե ավելացնում կամ նվազեցնում է էլեկտրական լուսային օրը։

Թռչնանոցներում լուսային կայուն ռեժիմը հնարավորություն կտա տարեկան լրացուցիչ ստանալ երեք միլիոն ձու։